# Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ժողովրդի հարաճուն միասնության, զարգացած սոցիալիստական հասարակության համակողմանի առաջընթացի կարևոր ցուցանիշն է: **(Ծափահարություններ):**

Թույլ տվեք, թանկագին ընկերներ, ձեզ՝ համագումարի պատգամավորներին, և բոլոր նրանց, ովքեր ձեզ ընտրել են այս համագումարի պատգամավոր, ջերմ, սրտագին ողջույն հաղորդել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և սովետական կառավարության կողմից: **(Երկարատև ծափահարություններ):** Բոլոր ներկաներին շնորհավորում եմ արհեստակցական միությունների հերթական XVII համագումարի բացման առթիվ: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Արհմիությունները կարևոր տեղ են գրավում սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմում: Նրանք դեմոկրատիայի զարգացման, կոմունիզմի կառուցման գործում աշխատավորների ներգրավման հզոր միջոց են: Հարցը հենց այդպես էր դրված նաև կուսակցության XXVI համագումարում: Ուզում եմ գոհունակությամբ նշել, որ այն բազմապիսի խնդիրների լուծման գործում, որ առաջ է քաշում մեր մարտական, դինամիկ ժամանակը, սովետական արհմիությունները մեծ, և կարելի է ասել, անփոխարինելի դեր են կատարում: Այդպես էլ պետք է լինի: **(Երկարատև ծափահարություններ):**

Ոչ մի չափով առաջ չանցնելով ոչ ՀԱՄԿԽ-ի հաշվետու զեկուցումից, ոչ մտքերի առաջիկա փոխանակությունից, ես կկամենայի ձեզ հաղորդակից դարձնել որոշ մտքերի, որոնք առնչվում են արհմիութենական աշխատանքի, արհմիությունների խնդիրների հետ:

Ամենքին հայտնի են Վ. Ի. Լենինի խոսքերը արհմիությունների՝ որպես կառավարման դպրոցի, տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի մասին: Շատ ճշգրիտ, տարողունակ, չհնացող խոսքեր են: Դրանցում արտահայտված է սոցիալիզմի պայմաններում արհմիութենական շարժման լենինյան կոնցեպցիայի էությունը: Սովետական իշխանության տարիներին այդ դպրոցով են անցել աշխատավորների մի քանի սերունդներ: Եվ ամեն մի սերնդի հետ արհմիությունների պրակտիկայում հանրային արտադրության աճի նրկատմամբ հոգատարությունը ավելի ու ավելի ամուր է միացվել յուրաքանչյուր բանվորի աշխատանքի ու կենցաղի պայմանների, նրա իրավունքների պաշտպանության, նրա բարեկեցության բարձրացման նկատմամբ հոգատարության հետ:

Արհմիութենական գործունեության այդ առաջատար ուղղություններում հսկայական աշխատանք է կատարվել, կուտակվել է աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացման արժեքավոր փորձ: Ես նկատի ունեմ բանվորական ժողովները և մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, որտեղ պետք է լսելի լինի յուրաքանչյուր աշխատավոր մարդու ձայնը: Ես նկատի ունեմ սոցիալիստական մրցությունը, որը տնտեսական աճի զորեղ լծակն է: Ես նկատի ունեմ հանդիպական պլանները, գյուտարարների և ռացիոնալիզատորների շարժումը, առաջավոր փորձի արմատավորումը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ռացիոնալ օգտագործմանը, ռեսուրսների խնայողությանը, որակի բարելավմանը նպատակամղված ստեղծագործական նախաձեռնությունները ու ձեռնարկումները:

Այն միջոցների զինանոցը, որոնց օգնությամբ արհմիություններր կարող են ներգործել սոցիալական պրոցեսների, էկոնոմիկայի զարգացման, մասսաների դաստիարակության վրա, մեծ է ու բազմազան: Բայց արդյո՞ք այդ զինանոցը բավարար արդյունավետությամբ է օգտագործվում: Ըստ երևույթին, ոչ: Այդ մասին քիչ չի խոսվել արհմիութենական ժողովներում, կոնֆերանսներում, արհմիությունների ճյուղային և հանրապետական համագումարներում:

Լավ, օգտակար կլիներ, որպեսզի այն գործարար, ինքնաքննադատական տրամադրությունը, որը բավական որոշակիությամբ դրսևորվեց հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում, ոչ միայն ամրապնդվեր, այլև նոր ազ-



դակ ստանար ՍՍՀՄ արհեստակցական միությունների համագումարում: **(Ծափահարություններ):**

Խնդիրն այն է, որ ավելի արագ, ավելի եռանդուն կերպով վերակառուցվի արհմիութենական կազմակերպությունների աշխատանքը՝ ելնելով այսօրվա պահանջներից: Արհմիությունները պետք է ավելի համարձակորեն զբաղվեն տնտեսական ու սոցիալական նոր պրոբլեմներով, ավելի լայնորեն հենվեն գիտության տվյալների վրա, անընդհատ բարձրացնեն իրենց ակտիվի որակավորումը: Իրազեկությունը, նորի սուր զգացումը, մասսաների հետ ամենասերտ կապը, մարդկանց նկատմամբ ուշադրությունը, մարդկային հոգու իմացությունը— ահա թե ինչը պետք է բնորոշ լինի մեր ժամանակի արհմիութենական աշխատողին:

Մենք ձեզ հետ միասին բազմիցս համոզվել ենք, որ զարգացման յուրաքանչյուր փուլ առաջ է քաշում իր խնդիրները, դրանք հագեցնում նոր, կոնկրետ բովանդակությամբ, պահանջում է նոր մոտեցումներ դրանց լուծմանը: Վերցրեք էկոնոմիկան: Փոխվել են նրա մասշտաբները: Փոխվել է աշխատանքի բնույթը: Փոխվել են տնտեսական շինարարության հիմնական ուղղությունները: Էկոնոմիկան փոխադրել ինտենսիվ աճի ռելսերի վրա, այն դարձնել իսկապես խնայողական՝ այսպիսին է այժմ թե՛ պետական մարմինների, թե՛ տնտեսական ապարատի, թե՛, իհարկե, արհմիությունների ընդհանուր նպատակը:

Հասնել յուրաքանչյուր աշխատավոր մարդու, նրան մոտիկ ու հասկանալի դարձնել կուսակցության տնտեսական քաղաքականության պահանջները, համոզիչ կերպով ցույց տալ, որ հենց այդ քաղաքականությունն է համապատասխանում նրա կենսական շահերին և, որ հենց դրա համար յուրաքանչյուրի պարտքն է՝ իր նախաձեռնությամբ, ստեղծագործական որոնումով նպաստել այդ քաղաքականության լիակատար հաջողությանը՝ ահա, ընկերներ, ես կասեի, այս է արհմիությունների ամենահրատապ խնդիրը տասնմեկերորդ հնգամյակում: **(Երկարատև ծափահարություններ):**

Ինչպե՞ս ավելի լավ, ավելի արդյունավետ կազմակերպել աշխատանքը յուրաքանչյուր կոնկրետ տեղամասում: Ինչպե՞ս օգտագործել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները՝ և դարձյալ ոչ թե ընդհանրապես, այլ կոնկրետ կերպով, ելնելով տվյալ աշխատատեղից: Ի՞նչ և ի՞նչպես պետք է անել տվյալ արտադրության մեջ, տվյալ ճյուղում աշխատանքի արտադրողականության բարձրացման, նյութական և աշխատանքային ռեսուրսների խստագույն խնայողության համար: Այս հարցերի պատասխանը պետք է տան ոչ միայն ադմինիստրացիան, այլև արհմիությունները: Շատ կարևոր է, որ յուրաքանչյուր արհեստակցական միություն, յուրաքանչյուր արհմիութենական կազմակերպություն, կուսակցական դրույթները մարմնավորելով պրակտիկ գործերի մեջ, աշխատեն առավելագույն կոնկրետությամբ և գործարարությամբ: Մենք տարուբերվելու ժամանակ չունենք: Հարկավոր է աշխատել, հարկավոր է գործ անել: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք արդեն թևակոխել ենք տասնմեկերորդ հնգամյակի երկրորդ տարին: Կուսակցության XXVI համագումարի որոշումները ընդունելով որպես իրենց հարազատ, կենսական գործը, սովետական մարդիկ առաջ են ընթանում հաստատապես իրենց ուժերին վստահ, լուծելիք խնդիրների ինչպես բարդության, այնպես էլ վեհության պարզորոշ ըմբռնումով: Դա է որոշում երկրի աշխատանքային հստակ ռիթմը, ապահովում քաղաքի և գյուղի աշխատավորների բարեխիղճ աշխատանքը:

Այսօր մենք բոլոր հիմքերն ունենք խորին շնորհակալություն հայտնելու այն ձեռնարկությունների և կազմակերպությունների կոլեկտիվներին, որոնք հաջողությամբ կատարում և գերակատարում են իրենց ստանձնած պարտավորությունները, աշխատում են հարվածայնորեն, եռանդով: **(Ծափահարություններ):** Հանդես գալով այս ամբիոնից՝ ես, ընկերներ, կկամենայի երախտագիտության խոսքերով դիմել նաև արհմիություններին: Նրանք ամենա-

ուղղակի, ամենաանմիջական առնչությունն ունեն մեր հաջողությունների և նվաճումների հետ: **(Ծափահարություններ):**

Մենք ունենք հազարավոր առաջավորներ և առաջավոր ձեռնարկություններ: Պատկերավոր ասած, նրանք հետախուզություն են կատարել մարտով, գրավել կարևոր պլացդարմներ: Բայց հետախույզները միայնակ, ինչպես հայտնի է, հաղթանակը չեն ապահովում: Ուրեմն, հիմա մենք պետք է առաջ մղենք ամբողջ ռազմաճակատը, ծավալենք ընդհանուր հարձակում: Եվ արհմիությունների տեղը աշխատանքի հարձակվող բանակի առաջին շարքերումն է: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Արհմիութենական համագումարներում միշտ բարձրացվել են կենսական, հրատապ հարցեր, որոնք շոշափում են բոլոր աշխատավորների, ամբողջ ժողովրդի շահերը: Այսօր այդպիսի հարցերից մեկը պարենային հարցն է: Կուսակցությունն ու կառավարությունը լավ գիտեն գոյություն ունեցող դժվարությունների մասին, ամեն հնարավոր բան անում են դրանց հաղթահարման համար: Նկատի է առնվում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկել պարենային ծրագիրը, որի մեջ կորոշվեն այդ կարևոր պրոբլեմի արմատական լուծման ուղիները: Բայց չէ որ թե՛ գյուղատնտեսության մեջ, թե՛ նրա հետ կապված արդյունաբերության ճյուղերում կան մեծ թվով հրատապ գործեր, որոնք չեն սպասում, որոնց կարելի է և պետք է ձեռնամուխ լինել անհապաղ՝ սննդամթերքների մատակարարումը բարելավելու համար:

Այստեղ արհմիությունների եռանդի գործադրման համար հսկայական ասպարեզ կա: Նրանց ուղղակի գործն է՝ հասարակայնության ուշադրությունը բևեռել արտադրանքի պահպանումը բարելավելու և կորուստների դեմ մղվող պայքարի վրա: Սովխոզների և կոլտնտեսությունների արհմիութենական կազմակերպությունները պետք է սուր կերպով դնեն և լուծեն արտադրանքի վերամշակման տեղական բոլոր հնարավորությունների օգտագործման հարցերը: Արհմիությունների ուշադրությունից դուրս չեն կարող մնալ ոչ ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները, ոչ էլ անձնական օժանդակ տնտեսությունները: Արհմիությունները կոչված են որոնել կոնկրետ ուղիներ, որպեսզի ծավալեն պարենային գործի հետ առնչվող բոլոր կազմակերպությունների և աշխատողների նախաձեռնությունը, ակտիվությունը: Խնդրում եմ ձեզ, ընկերնե՛ր, մտածել այդ մասին:

Մյուս հարցը, որ ես կուզենայի շոշափել, վերաբերում է միանգամայն այլ բնագավառի: Խոսքը աշխատանքի բրիգադային կազմակերպման և խթանման նոր ձևերի մասին է: Բարձրացնելով արտադրության արդյունավետությունը, դրանք լիովին համապատասխանում են արդի փուլում կուսակցության տնտեսական ստրատեգիային: Ընթացիկ հնգամյակում այս ձևերը, ինչպես հայտնի է, պետք է ամենալայն տարածումը գտնեն:

Միասնական կարգագրով աշխատող կոմպլեքսային բրիգադներում ձեռք է բերվում ժամանակի, աշխատանքային և նյութական ռեսուրսների զգալի խնայողություն: Այստեղ ավելի ամուր է կարգապահությունը, ավելի բարձր են վաստակները, երիտասարդ բանվորները ավելի արագ են վարպետություն սովորում: Այստեղ, բնականաբար, ավելի բարձր է նաև աշխատանքի արտադրողականությունը: Բերեմ միայն մի փաստ: Տասներորդ հնգամյակի վերջում կապալային բրիգադներում շինարարների աշխատանքի արտադրողականությունը մեկ երրորդով ավելի բարձր էր, քան ճյուղում միջին հաշվով: Ինչպես տեսնում եք, տարբերությունը տպավորիչ է:

Լավ կազմակերպված, արդյունավետ, ես կասեի, խելացիորեն աշխատող բրիգադը բանվորների կառավարչական հմտությունների զարգացման իսկական դպրոց է, ամեն մի ստեղծագործական նախաձեռնության փորձնական լաբորատորիա: Այդպիսի բրիգադի անդամները գործի մեջ, ամենօրյա համատեղ աշխատանքում տիրապետում են մեր ժամանակներում այնքան անհրաժեշտ տնտեսական, ինչպես նաև քաղաքական գիտելիքների: Այդպիսի բրիգադում հիրավի կոփվում է իր գործարանի տիրոջ, իր երկրի տիրոջ զգացումը: **(Ծափահարություններ):**

Թվում է, թե նման բրիգադների առավելությունները հարկ չկա ոչ ոքի



ապացուցել: Բայց և այնպես, բրիգադային կապալը դանդաղ և ոչ միշտ հետևողականորեն է ներդրվում: Կան բրիգադների կազմալուծման դեպքեր: Բանն ինչո՞ւմն է:

Ստեղծելով բրիգադը, առաջավոր բանվորները ցանկություն և պատրաստակամություն են հայտնում իրենց վրա վերցնելու աշխատանքային առաջադրանքը ամբողջ ծավալով, կոմպլեքսայնորեն, ժամանակին և որակով կատարելու պատասխանատվությունը: Բայց, ցավոք, ոչ բոլոր տնտեսական ղեկավարներն են ձգտում հանդես բերում բրիգադի համար ապահովելու աշխատանքի անհրաժեշտ պայմաններ, ստանձնելու, այսպես ասած, պատասխանատվության իրենց բաժինը: Բացասաբար են անդրադառնում թե՛ արտադրության կազմակերպման թերությունները, թե՛ պահպանողական մտածողությունը: Այս ամենը խարխլում է բրիգադային մեթոդի բուն էությունը՝ նրա տնտհաշվարկային հիմքը:

Հետևաբար, տնտհաշվարկային բրիգադին «կանաչ ճանապարհ» տալու համար անհրաժեշտ է շարունակել տնտեսական մեխանիզմի վերակառուցումը, բարելավել նյութատեխնիկական մատակարարումը, պայքարել աշխատանքի պլանավորման և հաշվառման գործում ձևամոլության դեմ: Վստահ եմ, որ արհմիությունները— յուրաքանչյուրն իր ճյուղում, իր տեղամասում— ակտիվորեն, հաստատակամորեն կներգրավվեն աշխատանքի կազմակերպման այդ պրոգրեսիվ ձևի կազմավորման և ամրապնդման գործում: **(Ծափահարություններ):**

Տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը արհմիությունների մասնակցության հարցը, բնականաբար, դուրս է գալիս բրիգադների հարցի շրջանակներից: Ինչպե՞ս ավելի լավ զուգակցել բանվորի անձնական շահերը ամբողջությամբ վերցրած ձեռնարկության և հասարակության շահերի հետ: Ինչպե՞ս նվազագույնի հասցնել ձեռքի աշխատանքը, ազատել այն «ավելորդ» մարդկանց, որոնք մեզանում ամենևին էլ ավելորդ չեն և խիստ անհրաժեշտ են այլ տեղամասերում: Ինչպե՞ս առավել ուղղակի, տեսանելի դարձնել աշխատանքի և նրա վարձատրության միջև եղած կապը: Այս և համանման հարցերի պատասխանը կոչված են տալու ոչ միայն գիտական կենտրոնները, գիտնականները: Այդ գործի մեջ կարող են և պետք է մեծ ավանդ մուծեն արտադրական կոլեկտիվները, բանվորական ժողովները:

Հարկավոր է լսել կյանքի փորձով իմաստնացած, գործնական հմտություններով օժտված մարդկանց, ընդհանրացնել նրանց կարծիքները: Եվ այս գործում օգնություն պետք է ցույց տան հենց արհմիությունները: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Էկոնոմիկայի զարգացման նկատմամբ հոգատարության հետ անխզելիորեն կապված է աշխատավորների կյանքի բարելավման նկատմամբ հոգատարությունը: Անհնար է ապահովել բարեկեցության աճը, առանց արտադրության պատշաճ զարգացման: Միևնույն ժամանակ արտադրության բուն զարգացումը այնքան ավելի հաջող կընթանա, որքան ավելի լավ լինեն աշխատանքի ու կենցաղի պայմանները: Սա սոցիալիստական ապրելակերպի աքսիոման է: Եվ որքան ավելի հասունանում է մեր հասարակությունը, այնքան մենք ավելի մեծ ուշադրություն կարող ենք ու պետք է նվիրենք աշխատավորների ամենօրյա կարիքներին՝ բնակարանին, սննդին, սպասարկման ոլորտին, առողջապահությանն ու կրթությանը, այն ամենին, ինչը որոշում է մարդու ինչպես բարօրությունը, այնպես էլ տրամադրությունը:

Կարող է հարց ծագել՝ արդյոք իրեն չի՞ սպառել արհմիությունների կողմից աշխատավորների շահերի և իրավունքների պաշտպանության խնդիրը աշխատավորների պետության մեջ, որն արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու կամքը: Ո՛չ, չի սպառել: Իհարկե, մեր արհմիությունները աշխատավորին պաշտպանում են ոչ թե պետությունից, ոչ թե տիրոջից, ինչպես դա տեղի է ունենում կապիտալի երկրներում, նրանք նրան պաշտպանում են որոշ անձանց ու մարմինների կողմից սովետական օրենքների խախտումներից:

Արհմիությունները պետք է անհաշտ լինեն իրավական կանոններից, աշխատանքային օրենսդրությունից կատարվող ամեն տեսակ շեղումների

նկատմամբ։ Բայց դա քիչ է։ Արհմիությունների գործունեությունը կոչված է ստեղծելու այնպիսի իրադրություն, երբ բացառվի աշխատավոր մարդու իրավունքների խախտման բուն իսկ հնարավորությունը, անհնարին դառնան գոռոզամտության և անտարբերության ամեն տեսակ դրսևորումներ, որպիսիք դեռևս նկատվում են առանձին ղեկավարների մեջ։

Արհմիությունների շեշտակի կրակի տակ պետք է մշտապես գտնվի նաև բյուրոկրատիզմը։ Հուսով եմ, դուք ինձանից չեք նեղանա, ընկերներ, եթե ես անեմ այն ենթադրությունը, որ այդ հիվանդությունից ապահովագրված չեն նույնիսկ որոշ արհմիութենական աշխատողներ։

Իհարկե, արհմիությունները՝ այն կազմակերպությունը, որը կոչված է լուծել բարդ ու բազմապիսի խնդիրներ, չեն կարող կառավարվել առանց համապատասխան ապարատի։ Դրա հետ մեկտեղ պարզ է, որ այդ ապարատի արդյունավետությունը պայմանավորված է ոչ այնքան թվակազմով, որքան նրա մտածված, կուռ կառուցվածքով, նրա աշխատանքի կազմակերպման հստակությամբ։ Կարելի՞ է, արդյոք, ասել, թե այստեղ ամեն ինչ արդեն կարգին է։ Ըստ երևույթին, ոչ։

Իսկ գլխավորն այն է, որ արհմիութենական ապարատի աշխատողները ավելի շատ լինեն մարդկանց հետ և ավելի քիչ՝ թղթերի։ Որպեսզի նրանք ավելի ամուր հենվեն արհմիութենական ակտիվի, արհմիության նախաձեռնող, եռանդուն շարքային անդամների վրա։ **(Ծափահարություններ)։** Այլ խոսքով, այստեղ ևս՝ բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարում լավագույն դեղամիջոցը սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացումն է։ **(Երկարատև ծափահարություններ)։**

Արհմիությունները պետք է իրենց տեսադաշտում պահեն ինչպես ամբողջությամբ վերցրած աշխատավորական կոլեկտիվներին, այնպես էլ յուրաքանչյուր մարդուն՝ իր անհատական գծերով և ընդունակություններով հանդերձ։ Նրանք պետք է մշտական հոգատարություն ցուցաբերեն արտադրության մեջ այնպիսի մթնոլորտ, այնպիսի սոցիալ-հոգեբանական, բարոյական կլիմա ստեղծելու նկատմամբ, որի դեպքում առավել լիակատարությամբ բացահայտվեն սովետական բնավորության լավագույն գծերը, սովետական մարդու լավագույն հատկությունները։ Այս մասին, ըստ երևույթին, միանգամայն տեղին է այսօր ասել համագումարում։

Ըստ ամենայնի պաշտպանելով ողջ առաջավորը, դաստիարակելով հարգանք բոլոր նրանց նկատմամբ, ովքեր ազնվորեն աշխատում են, արհմիությունները, ինչպես որ մեր ամբողջ հասարակայնությունը, պետք է միևնույն ժամանակ անհաշտ լինեն հարբեցողների, խալտուրա անողների, խոտանարարների, ժողովրդական բարիքը հափշտակողների նկատմամբ։ Այդպիսի մարդիկ, թեև դրանք քիչ են, խայտառակում են աշխատավոր մարդու բարի անունը։ Եվ հարկավոր է նրանց պատժել ինչպես բարոյապես, այնպես էլ նյութապես։ Ըստ երևույթին, արժե այդ մասին մտածել մեր աշխատանքային օրենսդրության լրացուցիչ մշակման և կատարելագործման ժամանակ։ **(Ծափահարություններ)։**

Կկամենայի համագումարի պատգամավորներին հաղորդակից դարձնել ևս մի նկատառման։ ՍՄԿԿ Կենտկոմում և, ինչպես ինձ հայտնի է, ՀԱՄԿԽ-ում ստացվում են ոչ քիչ թվով նամակներ բնակարանների բաշխման, առևտրի ու հասարակական սննդի կազմակերպման, առողջապահության բնագավառում առկա թերությունների մասին։ Ակնհայտորեն հասունացել է այն հարցը, որ աշխատանքի այս բնագավառները առնվեն ավելի խիստ վերահսկողության տակ։

Իհարկե, կարող են ասել՝ մենք ունենք ժողովրդական վերահսկողություն, կան հասարակական վերահսկողության հանձնաժողովներ և խմբեր։ Այո, դա այդպես է։ Բայց եկեք մեզ հարց տանք՝ արդյոք մեր վերահսկիչները մի՞շտ են լավ, արդյունավետ վերահսկում։ Ըստ երևույթին, ոչ միշտ։ Այլապես չէին լինի այն նամակները, որոնց մասին ես հիշատակեցի։

Ուրեմն, հարկավոր է ավելի ներգործուն, ոչ-ձևական, անկողմնակալ դարձնել վերահսկողությունը, առանձնապես մարդկանց ամենօրյա կարիք-



ների հետ անմիջականորեն կապված ոլորտներում։ Արհմիությունների համար դա քաղաքական հսկայական կարևորություն և դեմոկրատական խոր բովանդակություն ունեցող խնդիր է։

Մարդու կենսական շահերը շոշափող բոլոր հարցերում արհմիութենական կոմիտեները պետք է ավելի ակտիվորեն համագործակցեն սովետական իշխանության մարմինների հետ։ Իրենց հերթին ժողովրդական դեպուտատների սովետները, նրանց գործկոմները ևս չեն կարող արդյունավետ աշխատել, չհամագործակցելով արհմիությունների հետ։ Նրանց համագործակցությունը հարկավոր է ամրապնդել բոլոր մակարդակներով, այդ թվում նաև բարձր մակարդակով։ **(Ծափահարություններ)։**

Ընկերնե՛ր։ Արհմիությունների իրավունքների և պատասխանատվության հետագա ընդլայնումը, նրանց հեղինակության բարձրացումը, մասսաների հետ նրանց կապերի ամրապնդումը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման կարևոր ուղղություններից մեկն է։

Կուսակցությունը միշտ հանդես է եկել և հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ յուրաքանչյուր հասարակական կազմակերպություն և, իհարկե, արհմիությունները, որքան կարելի է լավ կատարի իր ֆունկցիաները, որքան կարելի է լրիվ արտացոլի, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, թե ինչով է ապրում մասսան և թե նրա ինչն է ցավում։ Չէ որ դրանով իսկ կուսակցությունն ու պետությունը հնարավորություններ են ստանում իրենց քաղաքականության մեջ ավելի լրիվ արտահայտելու ժողովրդի, մեր հասարակության բոլոր խավերի կամքն ու շահերը։

Կուսակցությունը լիակատար վստահությամբ է վերաբերվում արհմիություններին, բարձր է գնահատում նրանց կողմից վարվող գործունեությունը, հարգում է նրանց կազմակերպական ինքնուրույնությունը։ Իր հեղինակությամբ կուսակցությունը՝ սովետական հասարակության ղեկավար ուժը, նպաստում է արհմիությունների ազդեցության աճին։ Կուսակցական մարմինների և արհմիությունների լավ, գործնական համագործակցությունը օգնում է հաջողությամբ լուծելու առավել բարդ պրոբլեմները՝ խոսքը վերաբերի էկոնոմիկային ու սոցիալական հարցերին, թե կուլտուրական շինարարությանը և սովետական մարդկանց հոգևոր զարգացմանը։

Սոցիալիզմի թշնամիները՝ բուրժուազիայի գաղափարախոսները, ռեֆորմիստները, ռևիզիոնիստները, վաղուց նպատակ են դարձրել արհեստակցական միությունները անջատել մարքս-լենինյան կուսակցություններից, ուժգին կերպով պարտադրում են արհմիությունների «չեզոքության» տեսությունը։ Սակայն այդ ամենի ետևում իրականում թաքնվում են արհմիությունները բուրժուական քաղաքականության ուղին, բանվոր դասակարգի շահերի դավաճանության ուղին փոխադրելու փորձերը։

Մեր երկրում կուսակցությունը, պետությունը, արհմիությունները, կատարելով յուրաքանչյուրն իր դերը, աշխատում են համերաշխ, համաձայնեցված։ Այդ համաձայնեցվածության, այդ միասնության մեջ է կոմունիզմի գործի հաջողությունների երաշխիքը։ Եվ այդ միասնությունը ոչ ոք չի կարող սասանել։ **(Երկարատև ծափահարություններ)։**

Ընկերնե՛ր։ Մեր կուսակցությունը, մեր ժողովուրդը բարձր են գնահատում սովետական արհմիությունների միջազգային գործունեությունը։ Հանուն աշխատավորների շահերի, հանուն խաղաղության ամրապնդման վարվող այդ գործունեությունը գտնում է արտասահմանի մեր դասակարգային եղբայրների արժանի ճանաչումը։ Դրա վկայություններից մեկը արտասահմանյան մեծաթիվ հյուրերի ներկայությունն է մեր համագումարում։ Թույլ տվեք ի սրտե ողջունել նրանց և հաջողություններ մաղթել նրանց՝ մեծ և բազմամիլիոն աշխատավոր մարդկանց համար այնքան կարևոր աշխատանքում։ **(Երկարատև ծափահարություններ)։**

Մեր ժամանակներում, ինչպես երբեք, հարկավոր է բոլոր երկրների աշխատավորների, նրանց արհեստակցական միությունների միասնությունը։ Ընդհանուր շահերը շատ են, շատ-շատ։ Եվ ամենից առաջ՝ շահագրգռվածությունը

պատերազմի սպառնալիքի վերացման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, լարվածության թուլացման պրոցեսի պահպանման և ամրապնդման գործում: Դա պարզորոշ ցույց տվեց արհմիությունների համաշխարհային տասներորդ կոնգրեսը: Նա ցուցադրեց դասակարգային, հակաիմպերիալիստական հիմքի վրա միասնության, համերաշխության հարաճուն ձգտումը, պատերազմական վտանգի դեմ, խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարում ջանքերի միավորման ձգտումը:

Այժմ ամբողջությամբ վերցրած միջազգային դրության մասին: Ասել, որ այն բարդ է և սուր, դա, թերևս, դեռ բավական չէ: Այդ դրությունը տագնապ է հարուցում միջազգային հարաբերությունների հետագա ամբողջ զարգացման համար:

Տեսեք, օրինակ, թե ինչ տեղի ունեցավ Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության մասնակից պետությունների Մադրիդի հանդիպման ժամանակ:

**Անվտանգության և համագործակցության**՝ այսպիսին է այն մանդատը, որ տվել են ժողովուրդները այդ կոնֆերանսին: Բայց դրա փոխարեն ԱՄՆ-ի և (բացահայտորեն Վաշինգտոնի ճնշման ներքո) ՆԱՏՕ-ի մի քանի այլ երկրների կառավարությունների բարձրաստիճան ներկայացուցիչները Մադրիդ էին ժամանել բոլորովին այլ մտադրությամբ՝ առավելագույն չափով թունավորել միջազգային մթնոլորտը: Պատրվակ դարձվեցին Լեհաստանի ներքին իրադարձությունները: ՆԱՏՕ-ի բլոկի ներկայացուցիչները սկսեցին ցուցումներ տալ, թե ԼԺՀ-ի սեյմը և կառավարությունը և ԼՄԲԿ-ի ղեկավարությունը ինչպես պետք է լուծեն իրենց երկրի ներքին պրոբլեմները: Բանը չվերջացավ նաև առանց Սովետական Միության և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների հասցեին ուղղված զրպարտության: Այժմ աշխարհում գոյություն ունեցող ամենաարյունալի և տմարդի վարչակարգերը ամեն կերպ հովանավորող, իրենց տանը արհմիությունների և մյուս դեմոկրատական կազմակերպությունների գործիչների նկատմամբ հաշվեհարդար տեսնող կառավարությունների ներկայացուցիչները, առանց կարմրելու, ճառեր էին արտասանում «մարդու իրավունքների պաշտպանության» մասին:

Կրկնում եմ՝ լեհական գործերը միայն պատրվակ էին: Լեհաստանում սոցիալիզմը ոչ ոքի չի հաջողվի կործանել: **(Երկարատև ծափահարություններ):** Դա, ըստ երևույթին, հասկանում են նաև լեհական հակահեղափոխականների օտարերկրյա ոգեշնչողները: Մադրիդում իրական նպատակն էր՝ է՛լ ավելի շիկացնել ընդհանուր մթնոլորտը և դրանով հեշտացնել Արևմտյան Եվրոպայի վերոբերմամբ ԱՄՆ-ի չարագուշակ պլանների իրականացումը: Այն ուզում են դարձնել ամերիկյան նոր հրթիռների արձակման հրապարակ, դարձնել մի շանթարգել, որն իր վրա ընդուներ պատասխան հարվածը կոնֆլիկտի դեպքում: Միաժամանակ ուզում են է՛լ ավելի խանգարել սոցիալիստական երկրների հետ Արևմտյան Եվրոպայի տնտեսական նորմալ կապերի զարգացմանը: Չէ որ այդ կապերը բացահայտորեն ձեռնտու չեն Վաշինգտոնին, որի համար Արևմտյան Եվրոպան գլխավոր տնտեսական մրցակիցներից մեկն է:

Նման գործողությունները ստիպում են լրջորեն խորհել Եվրոպայում, և ոչ միայն Եվրոպայում, լարվածության թուլացման պրոցեսի և խաղաղ համագործակցության ճակատագրի մասին:

Մադրիդը վերջին ժամանակվա օրինակներից միայն մեկն է: Թերևս, կարելի է ասել, որ միջազգային հարաբերությունները ամբողջությամբ վերցրած այժմ մոտեցել են պարզորոշ նշված ճամփաբաժանի:

Մի կողմից՝ խաղաղության ամրապնդման և բոլոր պետությունների միջև խաղաղ համագործակցության զարգացման ուղին: Համագործակցության՝ հիմնված նրանցից յուրաքանչյուրի անկախությունը, իրավունքներն ու շահերը խստորեն հարգելու, ներքին գործերին չմիջամտելու և ընդհանուր անվտանգությունն ու փոխադարձ վստահությունն ամրապնդելու համատեղ ջանքերի վրա: Այդ ուղին հստակորեն նշված է թե՛ Հելսինկիի խորհրդակցության որոշումներում, թե՛ անցած տասնամյակի միջպետական բազմաթիվ այլ փաստա-



թղթերում: Այն հաստատված է նաև ժողովուրդների, հատկապես Եվրոպայի ժողովուրդների այդ տասնամյակի պրակտիկ փորձով:

Մյուս կողմից՝ այն ուղին, դեպի որը մարդկությանը ուժգնորեն հրում են «սառը պատերազմի» և իսկական պատերազմի եզրին վտանգավոր հավասարակշռության պահպանման նորահայտ ջատագովները:

Նրանք կկամենային մի կողմ նետել պետությունների հարաբերությունների՝ դարերի ընթացքում ստեղծված իրավական և բարոյական նորմերը, ի չիք դարձնել նրանց անկախությունն ու սուվերենությունը: Նրանք փորձում են վերաձևել աշխարհի քաղաքական քարտեզը, բոլոր մայրցամաքներում մոլորակի ընդարձակ ռեգիոններ հայտարարելով իրենց «կենսական շահերի» գոտիներ: Նրանք իրենց «իրավունք» են վերապահում ոմանց հրամաններ տալու, ուրիշներին դատելու և «պատժելու»: Բացեիբաց, առանց ամաչելու, հռչակում և փորձում են կենսագործել իրենց համար ոչ հաճելի կառավարությունների և պետությունների տնտեսական ու քաղաքական «ապակայունացման» պլաններ: Աննախադեպ ցինիզմով ուրախանում են այս կամ այն ժողովրդի ապրած դժվարություններով: Նորմալ հաղորդակցումը և միջազգային առևտուրը փորձում են փոխարինել «սանկցիաներով» և շրջափակմամբ, կոնտակտներն ու բանակցությունները՝ զինված ուժ գործադրելու մշտական սպառնալիքներով, ընդհուպ մինչև միջուկային զենք գործադրելու սպառնալիքը:

Պարզապես զարմանում ես, երբ տեսնում ես այդ ամենը: Եվ ակամա հարց է ծագում՝ նման քաղաքականության մեջ ի՞նչն է ավելի շատ՝ թեթևամտությո՞ւնը, միջազգային գործերում փորձի պակա՞սը, թե՞ մարդկության բախտը շոշափող լրջագույն պրոբլեմների նկատմամբ անպատասխանատու, ուղղակի ասենք՝ արկածախնդրական մոտեցումը: Ոչ թե մեզ մոտ, այլ ԱՄՆ-ի բուրժուական լուրջ մամուլի էջերում նման քաղաքականությունն անվանվեց «քաղաքական աղետի կուրս»: Դժվար է վիճարկել այս բնորոշման հիմնավորվածությունը:

Ի դեպ, շրջափակումների և «սանկցիաների» մասին: Սովետական Միությունը մեծ երկիր է՝ հզոր էկոնոմիկայով և հարուստ ռեսուրսներով: Իսկ սոցիալիստական ընկերակցությունը ամբողջությամբ վերցրած դրանից էլ ավելի: Այնպես որ մենք առանց դրա էլ կապրեինք, թող դրանում ոչ ոք կասկած չունենա: **(Երկարատև ծափահարություններ):** Բայց ահա այն երկրների մեջ, որոնց Վաշինգտոնն անվանում է իր դաշնակիցներ, շատերն իրենց ողջ զարգացմամբ շատ ավելի մեծ չափով են կախված արտաքին առևտրից: Այնպես որ հայտնի չէ, թե ավելի շատ ում շահերին է խփում միջազգային առևտրի և տնտեսական նորմալ կապերի վրա կատարվող կովբոյական հարձակումների քաղաքականությունը:

Օբյեկտիվորեն ասած, միջազգային մթնոլորտի հետագա շիկացման, սպառազինությունների մրցավազքի ուժեղացման, պետությունների միջև նորմալ կապերի խարխլման կուրսը ոչ մի լավ բան չի խոստանում ոչ մի ժողովրդի: Այդ թվում, իհարկե, նաև ամերիկյան ժողովրդին: Իսկ աղետներ կարող է շատ բերել ամբողջ մարդկությանը: Ուստի մենք հաստատ համոզված ենք՝ այդպիսի կուրսը չի կարող արժանանալ ժողովուրդների պաշտպանությանը և ապագա չունի: Եվ որքան շուտ դա հասկանան նրա նախաձեռնողները, այնքան լավ կլինի ամենքի համար: **(Ծափահարություններ):**

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք հաստատ ու անշեղորեն վարում ենք կայուն խաղաղության և բոլոր պետությունների միջև փոխշահավետ խաղաղ համագործակցության կուրս, անկախ նրանց հասարակական կարգից և քաղաքական սիստեմից: Եվ, իհարկե, մենք կողմնակից ենք, որպեսզի Մադրիդի հանդիպման մասնակիցները, երբ այդ հանդիպումը վերսկսի իր աշխատանքը, վերջապես անցնեն այն հարցերին, հանուն որոնց հանդիպումը կազմակերպվել է, այսինքն՝ Եվրոպայի անվտանգության և համագործակցության հարցերին: Եվ որպեսզի ուղի բացվի Եվրոպայում ռազմական լարվածության թուլացմանն ու զինաթափմանը նվիրված կոնֆերանսի

ծելու հարցը, որտեղով անցնում են առավել բանուկ ծովային ուղիները: Մի խոսքով, մենք կողմնակից ենք այն բանին, որպեսզի համաշխարհային օվկիանոսի որքան կարելի է մեծ մասը արդեն ամենամոտ ժամանակներս դառնա խաղաղության գոտի: **(Ծափահարություններ):**

Այսպիսիք են սպառազինությունների մրցավազքը սանձահարելու և նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը կանխելու հարցերի վերաբերյալ մեր նոր առաջարկությունները: Ինչպես տեսնում եք, ընկերներ, մեր կուսակցությունը և սովետական կառավարությունը բարեխղճորեն կատարում են ժողովրդից ստացած պատվիրանը, ամեն ինչ անում են արդարացնելու կայուն խաղաղության, Երկիր խաղաղ մոլորակի վրա մաքուր երկնքի՝ մեր երկրի աշխատավորների, ինչպես նաև համայն մարդկության հույսերը: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Իմ ելույթի ժամանակը մոտենում է ավարտին:

Վերջում մի քանի խոսք: Այս տարի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի տարին է:

Դա մեր թանկագին հայրենիքի մեծ տոնն է, ժողովուրդների բարեկամության տոնը:

Դա լենինյան ազգային քաղաքականության հաղթահանդեսն է: Եվ դրա հետ մեկտեղ դա արդյունքների ամփոփման, ապագայի խնդիրների որոշման ու ճշգրտման լավ առիթ է: Պատրաստվելով դիմավորել պանծալի հոբելյանը, մենք նորից ու նորից մեր գործողությունները ստուգում ենք նոր հասարակության կառուցման լենինյան ծրագրով:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն կոմունիստներին և անկուսակցականներին, բոլոր սերունդների մարդկանց, բոլոր աշխատավորներին կոչ է անում Սովետական Միության 60-ամյակը դիմավորել ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների իրականացման ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով: **(Երկարատև ծափահարություններ):**

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ արհմիություններն ավելի ու ավելի մեծ դեր կխաղան մեր մեծ բազմազգ պետության հետագա զարգացման գործում, կոմունիզմի կառուցման գործում: **(Երկարատև ծափահարություններ):**

Ձեզ բոլորիդ, թանկագին բարեկամներ, և ձեզանից յուրաքանչյուրին ցանկանում եմ հաջողություններ աշխատանքում և հասարակական գործունեության մեջ, երջանկություն և ուրախություն կյանքում: **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Համագումարի պատգամավորները վանկարկում են՝ «Փա՛ռք ՍՄԿԿ-ին», «Կեցցե՛ լենինյան Կենտկոմը», «Ուռա՛»):**

---

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## Ուզբեկական ՍՍՀ-ին Լենինի շքանշան հանձնելուն նվիրված հանդիսավոր նիստում 1982 թվականի մարտի 24-ին

Թանկագին ընկերնե՛ր:

Այսօր ձեր օրացույցում կարմիր տարեթիվ է: Տասներորդ հնգամյակի արդյունքներով Սովետական Ուզբեկստանը, ինչպես հայտնի է, արժանացել է Լենինի շքանշանի: Եվ այսօր դուք ստանում եք այդ շքանշանը: Դա աշխատանքային մեծ ջանքերի, ոչ դյուրին աշխատանքով նվաճված հաղթանակների արգասիքն է: Ընդունեցեք, ուրեմն, ընկերներ, ամենասրտագին շնորհավորանքներ հայրենիքի բարձր պարգևի առթիվ: **(Երկարատև ծափահարություններ):**

Այնպիսի իրադարձություններ, ինչպիսին է ձեր այսօրվա տոնը, ուրախացնում են, բայց չեն թուլացնում: Դրանք աշխատողներին ստեղծագործական նոր ուժեր են տալիս: Եվ դա լավ է: Մոտակա տարիներս հանրապետությունը, ինչպես որ ամբողջ երկիրը, պետք է առավել բարձր բնագծեր նվաճի տնտեսական ու սոցիալական զարգացման մի շարք վճռական ուղղություններում: Կուսակցության XXVI համագումարի հավանությանն արժանացած հինգամյակի պլանների կատարումը մեծապես կախված է այն բանից, թե մենք որքան հաջողությամբ կհաղթահարենք ճանապարհի սկզբնական, ինչ-որ չափով դժվարին հատվածը: Եվ ես ուրախ եմ, շատ ուրախ եմ նշելու, ընկերներ, որ ձեր հանրապետությունը լավ մեկնարկ է վերցրել: **(Ծափահարություններ):**

Աշխատավորական կոլեկտիվների մեծամասնությունը վատ չի կատարել 1981 թվականին ստանձնած պարտավորությունները: Ձեռք է բերվել արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության պլանավորված աճ, իրացվել են կապիտալ ներդրումներ: Որքան ինձ հայտնի է, ձեզ մոտ համեմատաբար բարեհաջող է զարգանում նաև սպասարկման ոլորտը: Անշեղորեն աճում է բնակչության կրթական ու կուլտուրական մակարդակը:

Հատկապես կկամենայի ասել այն հաջողությունների մասին, որ Ուզբեկստանը ձեռք է բերել բամբակագործության ասպարեզում՝ հանրապետության գյուղատնտեսության առաջատար ճյուղում: Իսկ ասելու շատ բան կա: Վերջին երկու տարում Ուզբեկական ՍՍՀ-ի կոլտնտեսություններն ու սովխոզները հավաքում են վեցական միլիոն տոննա և ավելի արժեքավորագույն հումք: Հատկապես արժեքավոր նրբաթել հումքի վաճառքը պետությանը հինգ տարում աճել է մեկուկես անգամ: Մեծ գործ եք անում դուք, կարևոր գործ երկրի համար, յուրաքանչյուր սովետական մարդու համար: **(Ծափահարություններ):**

Ուզբեկստանի գյուղատնտեսության աշխատավորների հաջողությունները բարձր են գնահատվել և արժանի կերպով նշվել: Չէ՛ որ պատահական չէ, որ ութ առաջավորներ վերջերս դարձան սոցիալիստական աշխատանքի հերոսներ, շատերն էլ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով: Ուզում

ժողովուրդների բարեկամության զարգացման գործում: ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատում, օրինակ, ձեր ակտիվ մասնակցությունը ոչ սևահողային գոտու զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացման գործին: **(Ծափահարություններ):**

Դա, ընկերներ, ինտերնացիոնալիզմի գործնական դրսևորման լավ օրինակ է: Չէ՛ որ մեր բազմազգ երկրի պայմաններում ինտերնացիոնալիզմն այսօր նախ և առաջ երկրի բոլոր ժողովուրդների ազնիվ, բարեխիղճ, բոլորանվեր աշխատանքն է ընդհանուր բարօրության համար: **(Ծափահարություններ):** Դա համապետական շահերը գերատեսչական, տեղական շահերից վեր դասելու, երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի հստակ աշխատանքն ապահովելու կարողությունն է: **(Ծափահարություններ):** Դա բոլոր միջհանրապետական մատակարարումների ժամանակին և որակով կատարումն է, սեփական ռեսուրսների առավելագույն օգտագործումը, ակտիվ մասնակցությունն այնպիսի պրոբլեմների լուծմանը, որոնցից կախված է էկոնոմիկայի վերելքի և ամբողջ ժողովրդի բարեկեցությունը:

Եվ ինտերնացիոնալիզմի ևս մի կարևոր կողմի մասին: Ուզբեկստանը, ինչպես որ մեր բոլոր հանրապետությունները, բնակչության բազմազգ կազմ ունի: Ուղևորությունից առաջ աչքի անցկացնելով մի քանի վիճակագրական տվյալներ, ես ուշադրություն հատկացրի այն բանին, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը միավորում է ութսունչորս ազգությունների կոմունիստների: **(Ծափահարություններ):**

Հանրապետությունների բնակչության բազմազգ կազմը որոշակի չափով արտացոլվում է նաև կադրային քաղաքականության մեջ: Ուզբեկստանում կուսակցության մարզային, շրջանային և քաղաքային կոմիտեների քարտուղարների մեջ կան քսան ազգությունների ներկայացուցիչներ: **(Ծափահարություններ):**

Առհասարակ մենք պետք է ձգտենք, որ յուրաքանչյուր հանրապետության ազգերն ու ազգությունները պատշաճ ներկայացուցչություն ունենան նրա կուսակցական և պետական մարմիններում: **(Ծափահարություններ):** Իհարկե, խստիվ հաշվի առնելով յուրաքանչյուր մարդու գործնական և գաղափարաքաղաքական հատկանիշները: Այդպիսի գիծը համապատասխանում է ՍՄԿԿ XXVI համագումարի ցուցումներին, Լենինի պատգամներին, որը նախազգուշացնում էր երկրում ապրող բոլոր ազգերի և ազգությունների նկատմամբ ամենափոքր անարդարությունից, նրանց իրավունքների և յուրահատուկ պահանջմունքների ամենաաննշան սահմանափակումից: Ընթանալով Լենինի նշած ուղիով, մենք չենք սխալվի: **(Երկարատև ծափահարություններ):**

Միութենական հանրապետությունների մայրաքաղաքների համաստեղության մեջ որպես ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրության ու բարեկամության ձեռակերտ խորհրդանիշ վառվում է Արևելքի աստղը՝ փլատակներից վերածնված Տաշքենդը՝ բարձր զարգացած արդյունաբերության և մեծ գիտության քաղաքը, նշանակալի կուլտուրական կենտրոններից մեկը, գրողների և կինեմատոգրաֆիստների համաշխարհային խոշորագույն համաժողովների անցկացման վայրը: Փառավոր շատ էջեր կան ուզբեկ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ: Բայց նրա զարգացման ոսկե ժամանակը ոչ թե անցյալում է, ընկերներ, այլ ներկայում և ապագայում: **(Ծափահարություններ):**

Դուք իրավացիորեն պահպանում և հարգում եք հին մշակույթի մեծ ավանդույթները, որոնք առնչված են Իբն Սինայի, Նավոյիի, Ուլուգբեկի անունների հետ կամ մարմնավորված են Սամարղանդի, Բուխարայի, Խիվայի ճարտարապետական հուշարձանների մեջ: **(Ծափահարություններ):** **Բայց** դա քիչ կլիներ, եթե դուք չկարողանայիք ձեր մշակույթը հարստացնել ժամանակակից քաղաքակրթության հասույթներով, սոցիալիզմի հոգևոր արժույթներով, մյուս եղբայր ժողովուրդների փորձով: Սովետական իշխանության տարիներին աճած ուզբեկական մտավորականությունը իր հանրապետությունը և իր ժողովրդին փառավորել է նշանավոր գիտական հայտնագործություններով և ինժեներատեխնիկական նվաճումներով, գեղարվեստական հոյակապ կերտվածքներով: Փա՜ռք նրանց՝ Սովետական Ուզբեկստանի գիտության և կուլտուրայի գործիչներին: **(Երկարատև ծափահարություններ):**



Կյանքը ակներև վկայում է, որ հակառակ մեր թշնամիների զրպարտանքին, սոցիալիզմը ոչ միայն չի հարուցում ժողովուրդների անկրկնելի դիմագծի, կուլտուրայի առանձնահատկությունների, ավանդույթների կորուստ, այլև այդ ինքնատիպությունը հանգեցնում է նոր բարձրության, այն դարձնելով բազմաթիվ այլ ժողովուրդների սեփականությունը:

Եվ այդ նոր ծաղկման բանալին բնավ ազգային սահմանափակությունը չէ, ոչ ինքնապարփակվածությունը, ոչ էլ անցյալի զանազան նախապաշարմունքներ: Ընդհակառակը, հենց դրանց հաղթահարման շնորհիվ ուզբեկական կուլտուրայի բնագավառում ի հայտ եկան և իսկական ծաղկման հասան գեղանկարչությունը, թատրոնը, կինոն: Առանց այդ ամենի այժմ աներևակայելի է ձեր հանրապետության, ինչպես որ, իմիջիայլոց, նաև մեր մյուս հանրապետությունների հոգևոր կյանքը: **(Ծափահարություններ):**

Միայն հաղթահարելով ֆեոդալական-բայական սովորույթները, սոցիալիստական հասարակության ազատ և իրավահավասար անդամը դարձավ ուզբեկ կինը: Այսօր մեծ ու անվիճելի է նրա դերը արտադրության, գիտության, արվեստի մեջ: Եվ դա չի կարող չուրախացնել մեզ՝ կոմունիստներիս: Բայց և այնպես, արդյոք այստեղ ամե՞ն ինչ է այնպես, ինչպես հարկն է: Կարծում եմ, որ դեռ ոչ: Դուք, իհարկե, հիշում եք, ընկերներ, կուսակցության XXVI համագումարի դրույթն այն մասին, որ անհրաժեշտ է կանանց ավելի ակտիվորեն առաջ քաշել կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատանքի: Բայց, ցավոք, երկրում ամբողջությամբ վերցրած, այդ թվում նաև Ուզբեկստանում, դեռ բավարար աշխատանք չի կատարվել այդ դրույթի իրագործման համար: Բայց վաղուց ժամանակն է: Եթե մենք ղեկավար կադրերը համալրենք սովետական կանանց բազմամիլիոնանոց ջոկատի լավագույն, ամենատաղանդավոր ու հեղինակավոր ներկայացուցիչներով, դրանից մեր ընդհանուր գործը միայն կշահի: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: 1920 թվականին, ըստ Լենինի ստորագրած դեկրետի, բացվեց թուրքեստանյան (այժմ Տաշքենդի) համալսարանը: Այն կադրերի դարբնոց դարձավ ամբողջ Միջին Ասիայի համար, որտեղ մինչ այդ չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն: Իսկ այժմ Ուզբեկստանում արդեն կան 43 բարձրագույն ուսումնական հաստատություններ: **(Ծափահարություններ):** Բնակչության թվի համեմատ դուք ուսանողների ավելի բարձր տոկոս ունեք, քան այնպիսի երկրներ, ինչպիսիք են Ֆրանսիան, ԳՖՀ-ն և Ճապոնիան, հանրային արտադրության մեջ զբաղվածների թվում բարձրագույն կրթությամբ մասնագետների ավելի մեծ տոկոս, քան երկրում միջին հաշվով:

Անտարակույս, քիչ բանի չենք հասել: Բայց այդ ցուցանիշները մեզ չըպետք է հանգստացնեն: Հարկավոր է առավել տնտեսաբար տնօրինել ձեռք բերված մտավոր պոտենցիալը: Ցավոք, ձեզ մոտ մասնագետները ամենուրեք այնպես չեն օգտագործվում, ինչպես պետք է: Օրինակ, բարձրագույն և միջնակարգ գյուղատնտեսական կրթություն ստացած մասնագետների միայն կեսից փոքր-ինչ ավելին է անմիջականորեն զբաղված հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում: Միևնույն ժամանակ սովխոզներում բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն չունի յուրաքանչյուր տասներորդ գյուղատնտեսը, ինժեներների, տեխնիկների և մեխանիկների ավելի քան մեկ երրորդը: Մոտավորապես նույնպիսի պատկեր կա նաև կոլտնտեսություններում: Մի՞թե սա կարգ է, ընկերներ: Պարզ է, որ կադրերի օգտագործման հարցում շատ բան պետք է բարելավվի:

Այս բնագավառում եղած թերությունների (իսկ նման թերություններ կան ոչ միայն Ուզբեկստանում) պատճառները տարբեր են: Դրանցից է թե բարձրագույն դպրոցի իներցիան, որը մի շարք պրոֆիլների գծով շատ ավելի մեծ թվով մասնագետներ է պատրաստում, քան հարկավոր է ժողովրդական տնտեսությանը և պակաս է տալիս այլ բնույթի մասնագետներ: Դրանցից է թե տեղայնության դրսևորումը, մասնագետներին անպայման իրենց հանրապետությունում, թեկուզ նույնիսկ ոչ ըստ մասնագիտության, աշխատանքի տեղա-

վորելու ձգտումը, թեև այլ շրջաններում այդ պրոֆիլի աշխատողների մեծ պակաս կա: Դրանցից են նաև պարզապես կադրային քաղաքականության մեջ եղած վրիպումները, երիտասարդ մասնագետների ոչ ճիշտ օգտագործումը: Կարծում եմ, հանրապետության կուսակցական և սովետական մարմինները պետք է լրջորեն զբաղվեն այս հարցով:

Ընկերնե՛ր: Ուզբեկստանի սոցիալական կարևորագույն նվաճումներից մեկը բանվոր դասակարգի թվական կազմի զգալի աճն է: Այժմ այն կազմում է հանրապետության բնակչության մեծամասնությունը: Բանվոր դասակարգի աճի տեմպերը ձեզանում 70-ական թվականներին գրեթե եռապատիկ ավելի բարձր էին, քան երկրում ամբողջությամբ վերցրած: Դա, իհարկե, ձեզ հատկապես պատասխանատու է դարձնում բանվորական միջավայր ներհոսող երիտասարդության պրոֆեսիոնալ ուսուցման, նրա գաղափարաքաղաքական կոփման համար: Դուք, որքան ես հասկանում եմ, այդ պրոբլեմը պահում եք տեսադաշտում: Տասնմեկերորդ հնգամյակում հանրապետությունում նախատեսված է կազմակերպել մոտավորապես 200 պրոֆտեխնիկական ուսումնարան և պատրաստել 700 հազար որակյալ բանվոր: Ուզում եմ ձեզ հաջողություն մաղթել բանվոր դասակարգի նոր սերնդի, կոմունիստական ապագայի արժանավոր կառուցողների պատրաստման բացառիկ կարևոր գործում: **(Ծափահարություններ):**

Մի խոսքով, դուք, թանկագին բարեկամներ, հասումներ շատ ունեք, բայց չլուծված պրոբլեմներ էլ բավականաչափ կան: Սակայն դրանց մեծ մասը, եթե կարելի է այսպես ասել, աճի պրոբլեմներ են, խնդիրներ, որոնք մեր սոցիալիստական հասարակության ակտիվ, առաջընթաց զարգացման ծնունդն են: Եվ լենինյան ոճին հավատարիմ լինելու դեպքում, չգոռոզանալու, ինքնաքննադատաբար մոտենալու, վերից վար բոլոր կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը չլուծված պրոբլեմների վրա կենտրոնացնելու, աշխատավորների ամենալայն մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը բարձրացնելու պարագայում այդ պրոբլեմները ևս, անտարակույս, կլուծվեն: Եվ մենք վստահ ենք, որ ուզբեկ կոմունիստները՝ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցության պանծալի ջոկատը, պատվով կկատարեն այդ: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Սովետական մարդկանց աշխատանքային հաջողությունները, խաղաղ շինարարության մեջ մեր բոլոր նվաճումները առանձնահատուկ նշանակություն են ստանում այժմյան խիստ սրված միջազգային դրության ֆոնի վրա: Ձգտելով արգելակել համաշխարհային պատմության ընթացքը, խանգարել սոցիալիզմի զարգացումը, խեղդել ժողովուրդների ազատագրական շարժումը, իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը շիկացրել են աշխարհում տիրող իրադրությունը: Նրանք լկտիաբար միջամտում են ուրիշ երկրների ու ժողովուրդների գործերին, փորձում են նրանց թելադրել իրենց կամքը: Նրանք բացեիբաց հռչակում են միջուկային պատերազմ սանձազերծելու պլաններ:

Այս պայմաններում Սովետական Միության և նրա սոցիալիստական դաշնակիցների տնտեսական ու պաշտպանական հզորությունը, նրանց զսպվածությունն ու ինքնատիրապետումը, նրանց հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը առանձնահատուկ հստակությամբ են ծառանում բոլոր ժողովուրդների առջև՝ որպես գլխավոր խոչընդոտ պատերազմի հրձիգների ճանապարհին, որպես աշխարհի խաղաղության գլխավոր հենարանը: **(Ծափահարություններ):**

Վերջին ժամանակներս ես արդեն բազմիցս առիթ եմ ունեցել, և բավական մանրամասնորեն, ասելու այն պայքարի մասին, որը մեր երկիրը, ողջ մոլորակի խաղաղասեր ուժերի հետ դաշնակցած, անդուլ կերպով մղում է համաշխարհային միջուկային պատերազմի սպառնալիքը կանխելու, սպառազինությունների, այդ թվում Եվրոպայում հրթիռամիջուկային սպառազինությունների մրցավազքը սանձահարելու համար: Այդ պայքարը մենք չենք կարող թուլացնել ոչ մի օր և այն կմղենք այնքան ժամանակ, քանի դեռ վտանգը ետ չի մղվել, քանի դեռ կայուն խաղաղություն չի ապահովվել: **(Երկարատև ծափահարություններ):**



Հենց դրան են ուղղված մեզ մոտ վերջերս ընդունած որոշումները՝ միակողմանիորեն դադարեցնելու ՍՍՀՄ եվրոպական մասում միջին հեռավորության միջուկային սպառազինությունների ծավալումը և նույնիսկ կատարելու այդ կարգի արդեն եղած հրթիռների որոշակի կրճատում, ինչպես նաև ՍՍՀՄ-ի նոր առաջարկությունները պետությունների ռազմական ակտիվությունը սահմանափակելու վերաբերյալ, որի մասին օրերս հաղորդվեց Սովետական Միության արհմիությունների համագումարում իմ ունեցած ելույթում:

Մենք ասել ենք մեր խոսքը՝ բանականության ու խաղաղասիրության խոսքը, որը հավանությամբ ընդունվեց ամբողջ աշխարհում: **(Ծափահարություններ):** Հիմա խոսքը պատկանում է Արևմուտքին:

Այժմ՝ Ասիայում մեր վարած քաղաքականության մասին: Մոնղոլիայի, Վիետնամի և այդ մայրցամաքի մյուս եղբայրական սոցիալիստական երկրների հետ, ինչպես նաև ժողովրդական Աֆղանստանի հետ մեր երկրի համագործակցության հաջող զարգացման մասին ձեզ քաջ հայտնի է: Հենց այս օրերին Վիետնամի կոմունիստական կուսակցությունը ընթանում է իր հինգերորդ համագումարին ընդառաջ: Եվ մենք բոլորս խաղաղ սոցիալիստական շինարարության, հեղափոխության նվաճումների պաշտպանության գործում հաջողությունների անկեղծ ցանկություններ ենք հղում Վիետնամի հերոսական կոմունիստներին, վիետնամական խիզախ ժողովրդին: **(Երկարատև ծափահարություններ):**

Իսկ հիմա ես կկամենայի անդրադառնալ ասիական երեք խոշորագույն տերությունների՝ Հնդկաստանի, Ճապոնիայի և Չինաստանի հետ ՍՍՀՄ-ի հարաբերություններին:

Ավելի քան քառորդ դար Սովետական Միությունը և **Հնդկաստանը** ակտիվորեն ու անդուլ կերպով աշխատում են իրենց բարեկամական համագործակցությունը զարգացնելու և խորացնելու վրա: Այդ բնագավառում շատ բան է ձեռք բերվել: Այսօր մեր ժողովուրդները խոր, ամուր կապերով են կապված էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի ոլորտում: Այդ տարիներին մեր ժողովուրդները ոչ թե պարզապես ավելի լավ ճանաչեցին միմյանց, այլև սովորեցին անկեղծորեն հարգել և գնահատել իրար: **(Ծափահարություններ):**

Այս ամենը տեղի է ունենում՝ չնայած սոցիալ-քաղաքական կարգերի տարբերություններին, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը խստիվ պահպանելու, թե՛ մեկ և թե մյուս երկրի արտաքին քաղաքականության առանձնահատկությունները փոխադարձաբար լիովին հարգելու պայմաններում:

Այդ հիման վրա ամրապնդվում է մեր պետությունների, նրանց ղեկավարների միջև փոխադարձ վստահության զգացումը: Իսկ դա մեր օրերում հսկայական, անգնահատելի կապիտալ է: **(Ծափահարություններ):** Դա երկու կողմերի մեջ էլ զգալի չափով ամրապնդում է անվտանգության զգացումը: Դա խաղաղության մեծ գոտի և կայունություն է ստեղծում ասիական մայրցամաքում: Դա Սովետական Միությանը և Հնդկաստանին հնարավորություն է ընձեռում միջազգային ասպարեզում հաջողությամբ փոխգործել խաղաղության պահպանման և ամրապնդման, ժողովուրդների խաղաղ համագործակցության զարգացման ասպարեզում:

Բարիդրացիության, փոխշահավետ համագործակցության և փոխադարձ վստահության հուսալի հարաբերություններ կուզենայինք մենք ունենալ նաև **Ճապոնիայի** հետ: Մենք, իհարկե, հիմա էլ ունենք փոխշահավետ տնտեսական համագործակցություն, բայց դա բնավ էլ այնպիսի լայն բնույթ չունի, որպիսին կարող էր լինել: Իսկ փոխադարձ վստահությունը, ցավոք, դրանից էլ պակաս է: Դրա ճանապարհին քիչ չեն արտաքին ուժերի կողմից հարուցվող խոչընդոտները, ուժեր, որոնց քիչ են մտահոգում մեր երկու երկրների շահերը: Դրանք այն ուժերն են, որոնք հետպատերազմյան արդեն առաջին տարիներից ձգտում էին թույլ չտալ նորմալացում Ճապոնիայի և ՍՍՀՄ-ի միջև, ձգտում էին խանգարել Ճապոնիային դուրս գալու համաշխարհային ասպարեզ՝ որպես անկախ, սուվերեն պետություն:

Այսօր էլ ուզում են խանգարել Ճապոնիայի և ՍՍՀՄ-ի միջև բարի հարա-

բերությունների հաստատմանը, փորձում են ճապոնացիներին ներքաշել հակասովետական քաղաքականության ջրապտույտի մեջ: Սակայն ճապոնական ժողովուրդը ոչ հեռու անցյալում քիչ է տառապել միլիտարիզմի, ագրեսիայի, իր հարևանների հետ ունեցած թշնամանքի քաղաքականությունից:

Ճապոնացիների գիտակցությունից կուզենային ջնջել նաև վերջին տասնամյակների բարի փորձը՝ Սովետական Միության հետ հարաճուն բեղմնավոր համագործակցության փորձը: Նրանց պնդերեսորեն հրամցնում են «սովետական սպառնալիքի» մասին արտասահմանում պատրաստված մաշված առասպելը: Ցավոք, այդ միամիտ հորինվածքը, ըստ երևույթին, կողմնակիցներ է գտնում Ճապոնիայի որոշ կառավարող շրջաններում:

Թեև, ազնվորեն ասած, դժվար է հասկանալ, թե Տոկիոյի որոշ գործիչներ ինչ բարոյական իրավունք ունեն իրենց ժողովրդին և աշխարհին ասել այն «երկյուղների» մասին, որոնք նրանց իբր ներշնչում են ՍՍՀՄ-ի այս կամ այն գործողությունները, եթե նրանք լսել անգամ չեն ցանկանում փոխադարձ երկյուղներն ու տագնապները քննարկելու և վստահության ամրապնդման՝ երկու կողմերի համար ընդունելի միջոցների շուրջը պայմանավորվելու մեր առաջարկության մասին (որը արվել է դեռ մեկ տարի առաջ): Չէ՞ որ Հեռավոր Արևելքում վստահության միջոցների մասին մեր առաջարկությունը բնավ պարտադրաբար չի ենթադրում իսկույն կազմակերպել այդ շրջանի բոլոր երկրների կոլեկտիվ հավաքույթ: Այդ ուղիով առաջընթացը միանգամայն հնարավոր է սկսել նաև երկկողմ հիմքի վրա, օրինակ, ՍՍՀՄ-ի և Ճապոնիայի միջև: Այստեղ ի՞նչ վատ բան կա: Ոչ մի:

Մենք մեր ճապոնացի հարևաններին կոչ ենք անում մեկ անգամ ևս կշռադատել այս առաջարկությունը:

Կրկնում եմ՝ մենք առաջվա պես մնում ենք Ճապոնիայի հետ բարիդրացիական հարաբերություններ և ամենալայն երկուստեք շահավետ համագործակցություն զարգացնելու կողմնակիցներ: ՍՍՀՄ-ը պատրաստ է գործել այդ ուղղությամբ, իհարկե, փոխադարձության հիմունքներով:

Հիմա՝ **Չինաստանի** հետ մեր հարաբերությունների մասին: Սա հասարակ հարց չէ:

Սովետա-չինական հարաբերությունների հարցում մեր կուսակցության և սովետական պետության սկզբունքային դիրքը պարզ կերպով շարադրված է ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների որոշումներում: Այստեղ ես կուզենայի լրացուցիչ կերպով հիշեցնել հետևյալ մոմենտների մասին:

**Առաջին:** Չնայած այն բանին, որ մենք բացեիբաց քննադատել և քննադատում ենք չինական ղեկավարության քաղաքականության (հատկապես արտաքին քաղաքականության) շատ կողմեր՝ որպես սոցիալիստական սկզբունքներին ու նորմերին չհամապատասխանող, մենք երբեք չենք փորձել միջամտել Չինական Ժողովրդական Հանրապետության ներքին կյանքին:

Մենք չենք ժխտել և չենք ժխտում Չինաստանում սոցիալիստական հասարակարգի առկայությունը: Թեև համաշխարհային ասպարեզում իմպերիալիստների քաղաքականության հետ Պեկինի միակցվելը, իհարկե, հակասում է սոցիալիզմի շահերին:

**Երկրորդ:** Մենք երբեք չենք պաշտպանել և ոչ մի կերպ չենք պաշտպանում այսպես կոչված «երկու Չինաստանների կոնցեպցիան», լիովին ճանաչել ենք և ճանաչում ենք ՉԺՀ-ի սուվերենությունը Տայվան կղզու նկատմամբ:

**Երրորդ:** Սովետական Միության կողմից չի եղել և չկա ոչ մի սպառնալիք Չինական Ժողովրդական Հանրապետության նկատմամբ: Մենք չենք ունեցել և չունենք տերիտորիալ որևէ պահանջ ՉԺՀ-ի նկատմամբ և պատրաստ ենք ուզած ժամանակ շարունակել բանակցությունները եղած սահմանային հարցերի շուրջը՝ փոխադարձաբար ընդունելի լուծումների հասնելու նպատակով: Մենք պատրաստ ենք նաև քննարկելու սովետա-չինական սահմանի շրջանում փոխադարձ վստահությունն ամրապնդելու հնարավոր միջոցների հարցը:

**Չորրորդ:** Մենք լավ ենք հիշում այն ժամանակները, երբ Սովետական Միությունն ու Ժողովրդական Չինաստանը միավորված էին բարեկամության և ընկերական համագործակցության կապերով: Մենք երբեք նորմալ երևույթ



չենք համարել մեր երկրների միջև թշնամանքի և օտարացման վիճակը: Մենք պատրաստ ենք առանց որևէ նախապայմանի պայմանավորվելու սովետա-չինական հարաբերությունների բարելավման՝ երկու կողմերի համար ընդունելի միջոցների շուրջը՝ միմյանց շահերը փոխադարձաբար հարգելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու և երկուստեք օգտավետության հիման վրա և, անշուշտ, ոչ ի վնաս երրորդ երկրների: Դա վերաբերում է ինչպես տնտեսական, գիտական, կուլտուրական, այնպես էլ քաղաքական հարաբերություններին՝ որքանով որ երկու կողմերը պատրաստ կլինեն այս կամ այն կոնկրետ քայլն անելու այդ ոլորտներից յուրաքանչյուրում:

Ահա թե ինչ կուզենայի այսօր ձեզ ասել Ասիայի մի քանի պետությունների հետ մեր ունեցած հարաբերությունների մասին: Իսկ ամբողջությամբ վերցրած այդ մայրցամաքում, ինչպես որ մյուս բոլոր մայրցամաքներում, մեր քաղաքականությունը խաղաղության ամրապնդման և խաղաղության թշնամիներին հաստատուն հակահարված տալու քաղաքականություն է, բոլոր նրանց հետ խաղաղ համագործակցության քաղաքականություն, ովքեր դա ցանկանում են, սոցիալիզմի երկրների հետ եղբայրական բարեկամության քաղաքականություն, սոցիալական առաջադիմական բոլոր ուժերի հետ համերաշխության քաղաքականություն, ժողովուրդների սուվերեն իրավունքների պաշտպանության քաղաքականություն: Մեր արտաքին քաղաքականության լենինյան այս անխախտ հիմքից մենք երբեք չենք շեղվի: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

**(Ընկեր Լ. Ի. Բրեժնևը հրապարակեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Ուզբեկական ՍՍՀ-ին Լենինի շքանշանով պարգևատրելու մասին և երկար ժամանակ չընդհատվող օվացիայի ներքո հանրապետության դրոշին ամրացրեց հայրենիքի բարձրագույն պարգևը):**

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի անունից ձեզ և Սովետական Ուզբեկստանի բոլոր աշխատավորներին ջերմորեն շնորհավորում եմ արժանի պարգևի առթիվ: **(Երկարատև ծափահարություններ):**

Երջանկություն ձեզ և նոր, մեծ հաջողություններ, ընկերներ: **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Հնչում են բացականչություններ՝ «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Փա՜ռք լենինյան Կենտկոմին», «Ուռա՜»):**




## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

Հրատապ հարցազրույց

# ՀՄՏՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՁԵՌՔԵՐԻ...

### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՆԴԱՄ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ **Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ** ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ Է «ԼԻՏԵՐԱՏՈՒՐՆԱՅԱ ԳԱԶԵՏԱՅԻ» ՍԵՓԱԿԱՆ ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԵՐԻՆ

**— Կարեն Սերոբովիչ, «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ խորապես ու համակողմանիորեն բացահայտվում է բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին բազմազգ պետության ծննդյան պատմական նշանակությունը, վառ կերպով ցույց են տրված նոր հասարակության կառուցման ասպարեզում ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի կատարած մեծագործությունները: Երբ մենք խոսում ենք հայ ժողովրդի իսկական վերածննդի մասին, ապա առաջին հերթին գիտակցում ենք, որ դա կարող էր տեղի ունենալ միասնական Միության մեջ: Իր բազմադարյան պատմության մեջ Հայաստանը երբեք էկոնոմիկայի և կուլտուրայի այնպիսի ծաղկում չի ապրել, ինչպես այժմ: Հատկապես նկատելի են հանրապետության նվաճումները վերջին տարիներին: ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981 թվականի պետական պլանը հաջողությամբ կատարելու համար Հայկական ՍՍՀ-ն վերջերս պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Հատկանշական է, որ հանրապետությունն այդ բարձր պարգևին է արժանացել վեցերորդ անգամ անընդմեջ...**

— Հայրենիքի բարձր պարգևում մենք տեսնում ենք մեր ժողովրդի ոգեշունչ աշխատանքը, որը լենինյան կուսակցության ղեկավարությամբ հիրավի կերպարանափոխում է երկրամասը: Միայն վերջին տարիներս գործարկվեցին ավելի քան յոթանասուն նոր արտադրական օբյեկտներ, այդ թվում Հայկական ատոմային էլեկտրակայանը, Շամբի հիդրոէլեկտրակայանը: Կառուցվել են մի շարք ջրամբարներ, այդ թվում նաև հանրապետությունում ամենախոշորը՝ Ախուրյանի ջրամբարը: Շահագործման են հանձնվել այնպիսի եզակի կառույցներ, ինչպիսիք են Արփա—Սևան քառասունութկիլոմետրանոց թունելը, Երևանի մետրոյի առաջին գիծը, «Զվարթնոց» օդանավակայանի կոմպլեքսը: Յուրացվել են հազարավոր հեկտար երբեմնի մեռյալ քարքարոտներ և աղուտներ: Տնկվել են պտղատու և խաղողի նոր այգիներ: Իրականացվել է սոցիալական զարգացման մեծ ծրագիր:

Այդ հաջողությունները, իհարկե, հնարավոր դարձան միասնական ընտանիքում: Որոշման մեջ լավ է ասված՝ պատմությունը չգիտի այնպիսի պետություն, որը շատ կարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը: Սովետների երկրի ժողովուրդները սեփական փորձով համոզվեցին՝ միասնական միության մեջ համախմբվելը բազմապատկում է իրենց ուժերը, արագացնում սոցիալ-տնտեսական զարգացումը: Նոր, արդարացի աշխարհի համար համատեղ պայքարում առաջացան աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, միասնական ընտանիքի զգացումը, ստեղծվեց ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը...

Մեր ժողովուրդը խորին հարգանքի և սիրո վսեմ ու հիասքանչ զգացմունքներ է տածում մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների նկատմամբ, ռուս մեծ ժողովրդի նկատմամբ, որը բացառիկ դեր է խաղացել նրա պատմական դժվարին ճակատագրում: Այդ մասին մենք երբեք չենք մոռանում, ինչպես և չենք մոռանում, որ այսօրվա բուռն ծաղկումը, այսօրվա նվաճումները ոչ միայն մեր աշխատանքի, այլև Սովետական Միության բոլոր ժողովուրդների համատեղ աշխատանքի արգասիքն են, Միություն, որի վաթսունն արդեն լրանում է: Ի դեպ, հենց 60 թվանիշը մեր Միության ամրության և հարատևության ծանրակշիռ փաստարկն է:

**— ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ Հայաստանի կուսակցական կազմակերպությունը կարողացել է աշխատավորական կոլեկտիվներին, կառավարման ու պլանավորման բոլոր օղակներում նպատակամղել բարձրացնելու արդյունաբերական արտադրանքի որակը: Իսկ ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումում բարձրորակ արտադրանք թողարկող առաջավոր ձեռնարկությունների թվում հիշատակվեց Երևանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր «Մասիս» կոշիկի արտադրամիավորումը: Պարզ է, որ ամեն մի արտադրանքի որակը պայմանավորված է նախ և առաջ աշխատանքի ու կառավարման որակով...**

— Հմուտ վարպետները, մասնագետները միշտ էլ գնահատվել են: Դեռ անտիկ ժամանակներից հայտնի մի ասացվածք կա՝ «Մի հմուտ բժիշկը հարյուր մարդ արժե...: Ոչ թե պարզապես բժիշկը, այլ հմուտ բժիշկը: Այնպես որ մարդը կամա թե ակամա աշխատանքի ու կյանքի պրոցեսի մեջ ներառնում էր որակի կատեգորիան: Եվ եթե սկզբնական շրջանում օգուտը սահմանափակ էր, ապա ապրանքային արտադրության պայմաններում որակը անչափ ավելի մեծ նշանակություն էր ստանում: Այստեղ մարդը արդեն ավելի գիտակցված, պատասխանատու մոտեցում էր ցուցաբերում որակի հարցին, քանի որ արտադրանքը ոչ միայն ծառայում էր նրա պահանջմունքների բավարարմանը, այլև փոխանակման նպատակին:

Սոցիալիստական արտադրության մեջ որակը նաև բարոյական բնույթ է ստանում: Մենք ձգտում ենք լավ արտադրանք թողարկել, որպեսզի ավելի լրիվ բավարարենք բնակչության պահանջմունքները, և միևնույն ժամանակ գիտակցում ենք, որ լավ ապրանքները շահավետ են ոչ միայն մեզանից յուրաքանչյուրի, այլև ամբողջությամբ վերցված պետության համար, քանի որ, վերջին հաշվով, բարձր որակը թե՛ քանակ է, թե՛ խնայողություն, թե՛ պրոգրես: Այսինքն որակի միջոցով հոգատարությունը դառնում է հոգատարություն մարդու և պետության նկատմամբ: Ահա թե ինչու մեզանում այնքան կարևոր նշանակություն է տրվում որակի բարելավման պրոբլեմներին...

**— Ինչո՞վ բացատրել, որ հենց վերջին ժամանակներս մենք ձեռնամուխ եղանք այդ պրոբլեմների լուծմանը:**

— Դա այնքան էլ ճիշտ չէ: Որակի պրոբլեմները մենք միշտ էլ լուծել

կություններ և առաքինություններ պետք է լինեն ինչ-որ ինքնըստինքյան հասկանալի բան: Ուստի և մենք պետք է քննության առնենք շատ ավելի մասնագիտական հարցեր: Ասենք, կառավարչի համար քիչ է իրազեկությունն իր նեղ մասնագիտության ասպարեզում: Այստեղ արդեն իրազեկությունը ներառնում է նաև ընդհանուր քաղաքական, տնտեսական ու սոցիալական խնդիրների ըմբռնումը: Վլադիմիր Իլյիչ Լենինը սովորեցրել է. «...ով մասնավոր հարցերի լուծմանը ձեռնամուխ է լինում առանց ընդհանուր հարցերի նախնական լուծման, նա ամեն քայլափոխի անխուսափելիորեն, իր համար անգիտակցորեն «դեմ կառնի» այդ ընդհանուր հարցերին: Իսկ յուրաքանչյուր մասնավոր դեպքում կուրորեն դեմ առնել դրանց՝ նշանակում է իր քաղաքականությունը դատապարտել վատթարագույն երերումների և անսկզբունքայնության»:

Ժամանակակից ղեկավարը չի կարող աշխատել առանց խորապես յուրացնելու կառավարման սոցիալիստական սիստեմի, կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականության, մարքս-լենինյան ուսմունքի սկզբունքները: Առանց այդ ամենի անհնարին է ապահովել կառավարչական խնդիրների ճիշտ, օպտիմալ լուծումը:

Եթե ղեկավարը կոնկրետ նպատակները սահմանում է հաշվի առնելով ընդհանուր և մասնավոր խնդիրները, ապա դա ինքնին արդեն հիմք է դնում կառավարչական հաջող գործունեության համար: Մյուս կողմից, հայտնի է, որ նպատակը ուժերի ու միջոցների նվազագույն ծախսումներով և շատ կարճ ժամանակում է իրագործվում, երբ այն հասկանալի է և իմաստավորված ամենքի կողմից: Ճիշտ է նկատված, որ իսկական բանվորը քլունգի յուրաքանչյուր հարվածի մեջ ուզում է իմաստ տեսնել: Այդպես ավելի հեշտ է գնում գործը: Երբ մարդիկ մշտապես հասնում են գիտակցված նպատակին, ապա նրանց մեջ աճում է հարգանքի ու վստահության զգացումն այդ նպատակը նախանշողների նկատմամբ:

Վերցնենք, օրինակ, կառավարման այնպիսի սկզբնական սիստեմ, ինչպիսին արտադրական տեղամասն է: Տեղամասի ղեկավարը որոշում է ընդունում, կոնկրետ նպատակ դնում կատարողների առջև: Աշխատանքն այնքան արագ ու որակով է կատարվում, որքան բանվորը խորն է յուրացրել նրա էությունը, որքան նա ավելի շատ է հավատում վարպետի գիտելիքին, փորձին և իմաստությանը, վստահում նրան ամեն տեսակետից, երբ նա պրակտիկայից գիտի, որ վարպետը հուսախաբ չի անի, որ աշխատանքը օգուտ կբերի բոլորին, որ նա անկեղծորեն մտահոգված է իրենց շահերով: Ես շատ օրինակներ գիտեմ, երբ ստեղծված գործարար և բարի հարաբերություններից հետո տեղամասում այս կամ այն պատճառով վարպետը փոխվել է: Սկզբնական շրջանում մի ուրիշ նոր վարպետի օրոք շարունակել է գործել «բանվոր-վարպետ» իներցիոն կապը: Իսկ երբ սկսվել են ձախողումները, պարզվել է, որ նոր վարպետը անիրազեկ, աննրբազգաց մարդ է: Նա խորամուխ չի լինում արտադրության տեխնոլոգիային և կազմակերպմանը, չի ուսումնասիրում գործնական սխալները, հաշվի չի առնում բանվորների կարծիքը, չի հետաքրքրվում նրանց տրամադրությամբ, կենցաղի պրոբլեմներով, այլ միայն հույսը դնում է վարչական իշխանության, իր կամային հատկությունների վրա:

**— Բայց չէ՛ որ կա նաև այնպիսի կարծիք, որ կառավարում են ո՛չ թե մտքերը, այլ բնավորությունները, կամքը...**

— Բնավորություն, կամք ասածի մեջ այնքան շատ սուբյեկտիվ բան կա, որ չի կարելի կառավարման գործում հույս դնել միայն դրանց վրա: Այն ղեկավարը, որն ապավինում է միայն այդ հատկություններին, երբ բացակայում են մյուս կարևորագույն հատկությունները, լավագույն դեպքում, այն էլ որոշ ժամանակ, կարող է արտադրության մեջ պահպանել այսպես կոչված ստատուս-քվո, իսկ դրանց գերաճի և պատշաճ քաղաքական հասունության բացակայության դեպքում նրան սպառնում է քմահաճության վտանգը: Այստեղ տեղին է վերհիշել Վ. Ի. Լենինի այն խորհուրդները, որ պետի առաջին պարտքն է «զգուշանալ հրամաններ տալու գայթակղությունից», «Ավելի քիչ՝ Տիտ Տիտիչի մեթոդներ («կարող եմ հաստատել, կարող եմ չհաստատել»)...»:

Պետք է կառավարեն առաջին հերթին խելքը, գիտելիքները, փորձը, կազմակերպչական տաղանդը, իհարկե, նաև բնավորությունը և կամքը: Ընդ որում ես «բնավորությանը» կավելացնեի նաև «եռանդը»: Դա շատ կարևոր բաղադրիչ է՝ եռանդը, որը գործողություն է ծնում: Մի խոսքով, ինչպես ճիշտ ասված է, ղեկավարության որակը որոշվում է ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, եռանդի ուժով, ավելի մեծ փորձառությամբ, ավելի մեծ բազմակողմանիությամբ, ավելի մեծ տաղանդավորությամբ: Ինչ վերաբերում է կառավարչի մյուս գծերին, ապա ես կընդգծեի աշխատողներին ճիշտ ընտրելու և տեղաբաշխելու կարողությունը, իսկ որպես կազմակերպչի կգնահատեի նաև ըստ նրա կողմից ղեկավարվող ապարատի աշխատանքի ոճի և որակի:

**— Ինչպես հայտնի է, մեծ նշանակություն ունի բուն կառավարչի ճիշտ ընտրությունը: Ես նույնիսկ կասեի՝ ընտրության որակը: Բերեմ մի օրինակ: Մի լավ և բարձրորակ վիրաբույժի դարձրին գլխավոր բժիշկ, այսինքն դարձրին կառավարիչ: Պարզ բան է՝ բարձրորակ վիրաբույժ նա արդեն չի կարող լինել. փոխվել են հոգսերը, փոխվել են խնդիրները: Այսինքն, նրա մեջ կործանեցին լավ մասնագետին: Թե արդյոք նրա մեջ կծնվի առողջապահության կազմակերպիչ, անհայտ է: Իսկ եթե դա չպատահի, ապա հետևանքը արդեն դժվար չէ պատկերացնել: Վերջ ի վերջո տուժում է աշխատանքը: Տվյալ դեպքում տուժում են հիվանդները: Դե ուրեմն ավելի լավ չէ՞ լավ վիրաբույժին թողնել վիրաբույժի պաշտոնում:**

— Նման հարցադրմանը համաձայնել չի կարելի: Ժամանակակից պայմաններում պարզապես անհրաժեշտ է դառնում, որ ղեկավարը օժտված լինի թե՛ կազմակերպչական ընդունակություններով, թե՛ անհրաժեշտ պրոֆեսիոնալ գիտելիքներով, լինի մասնագետ: Մենք գիտենք, թե ինչպիսիք են լինում այդպիսի զուգորդության արդյունքները: Եվ գիտենք, թե ինչ բարձունքների են հասնում մարդիկ, երբ նրանց մեջ օրգանապես զուգակցվում են մասնագետի տաղանդը և կազմակերպչի «աստվածային կայծը»: Դասական օրինակ է Սերգեյ Պավլովիչ Կորոլյովը: Բայց մեր ամենօրյա կյանքում, բնականաբար, մենք չենք կարող հույսը դնել ֆենոմենների վրա: Ղեկավար կադրերը պետք է պատրաստել: Եվ մեզանում գոյություն ունի նրանց պատրաստման ու դաստիարակության, աշխատողների բոլոր կատեգորիաների թվից կադրերի ակտիվ ռեզերվ ստեղծելու մի ամբողջ սիստեմ: Ոչ ոք հանկարծակի, պատահականորեն առաջ չի քաշվում: Ամեն մի պատասխանատու ղեկավար աշխատող, որպես կանոն, ունենում է գործնական աշխատանքի մեծ փորձ: Բնականաբար, ոչ ամեն մի որակյալ մասնագետ կարող է ղեկավար լինել: Քանի որ կառավարման ամեն մի աշխատանք պահանջում է, ինչպես արդեն ասվեց, որոշակի հատկություններ: Կադրերի ընտրության և տեղաբաշխման լենինյան սկզբունքը խարսխվում է գործնական, քաղաքական և բարոյական հատկությունների հաշվառման վրա: Եթե մասնագետը ունի բոլոր պահանջվող հատկությունները, ապա նրան կարելի է համարձակորեն առաջ քաշել: Իհարկե, չի բացառվում ռիսկի որոշակի չափը: Պարզ է, որ, այլ հավասար պայմանների դեպքում, արտադրության լավագույն կազմակերպիչ դառնում է, այնուամենայնիվ, բարձրորակ մասնագետը, իր գործի իսկական գիտակը: Ի դեպ, առողջապահության լավ կազմակերպիչները, որքան ես գիտեմ, դուրս են եկել լավ բժիշկների շարքից:

**— Բայց չէ՛ որ մենք, այնուամենայնիվ, նրանց մեջ կործանել ենք բարձրորակ մասնագետներին...**

— Եկեք չափից ավելի դրամատիկ չդարձնենք այդ պրոբլեմը: Նախ, քչերին են առաջ քաշում իրենց կամքին հակառակ, երկրորդ, իսկական մասնագետը երբեք հրաժեշտ չի տա իր սիրած գործին: Եվ հետո՝ չէ՛ որ բարձրորակ վիրաբույժը կամ ինժեները, մանկավարժը, դառնալով ղեկավար, չի դադարի ինքնազարգացումից: Մասնագետին առաջ քաշելիս, իհարկե, անհրաժեշտ է հաշվի առնել թե՛ կորուստները, թե՛ օգուտները, ընդ որում միշտ հարկավոր է ղեկավարվել ընդհանուր գործի շահով, եթե կարելի է այսպես արտահայտվել, առավելագույն բարիքի սկզբունքով:

Ամենից հաճախ վրիպում են հենց ո՛չ բարձրորակ մասնագետին առաջ քաշելիս: Դպրոցի այն դիրեկտորը, որը գլխավորապես հոգ է տանում, որ յու-

սամուտների վարագույրները կախված լինեն հավասար, որ դասարաններում աղմուկ չլինի և որ ոչ ոք չմոտենա ծաղկաթմբերին, իր ժամանակին որպես ուսուցիչ էլ եղել է անհրազեկ, միջակ անձնավորություն:

Մենք էլ հաճախ հանդիպում ենք այնպիսի դեպքերի, երբ գործ, անիրազեկ, ինչ որ ինքնավստահ ունիվերսալների՝ ամենագետ բիվայովների պատճառով ձախողվում է աշխատանքը, տուժում արտադրությունը: Այստեղ որակի մասին խոսք էլ չի կարող լինել: Նրանք իրենց ապարատը կոմպլեկտավորում են իրենց նման աշխատողներով, սեփական չափանիշների հիման վրա, ավելի հաճախ այս սկզբունքով՝ թող աշխատողը անիրազեկ, բայց «իրենց մարդը» լինի: Ինչ մեղքներս թաքցնենք, լինում է, որ դրանցից ոմանք ոչ միայն վատ են աշխատում, այլև կանգնում են օրենքը խախտելու, պետությանն ուղղակի խաբելու ուղու վրա:

Եվ, պետք է խոստովանել, ողբերգությունը նման ղեկավարին պատժելով, նրան փոխելով չի ավարտվում: Աշխատանքի՝ տարիներով ստեղծված արատավոր ոճը, բարքերը, սովորույթները՝ դրանք մի ակնթարթում չեն ցրնդում այդպիսի «շեֆի» հեռանալու հետ: Մեծ ջանքեր է պահանջում իներցիայի հաղթահարումը: Սա հրատապ պրոբլեմ է: Վերջին տարիներս շատ բան է արված դրա լուծման համար...

**— Ի՞նչը հասցրեց այն բանին, որ մեր հանրապետությունում վերջին տարիներս նվազել է նրանց թիվը, ովքեր, այսպես ասած, հեծնում էին ո՛չ իրենց ձին:**

— Նա, ով, ինչպես դուք եք ասում, իր ձին չի հեծել, միևնույն է երկար չի դիմանա: Նման «հեծյալը», ինչպես էլ խուսանավի, անխուսափելիորեն վայր է ընկնում: Այսպիսին է անվիճելի վերջաբանը: Բայց դժբախտությունն այն էր, որ աշխատանքի բացահայտ ձախողման համար ոչ քիչ թվով ղեկավար աշխատողների արժանի պատիժ տալու փոխարեն երբեմն տեղափոխում էին այլ, «կարգին» աշխատանքի: Մի ժամանակ նույնիսկ գոյացել էր մարդկանց՝ այսպես կոչված «մշտական նոմենկլատուրայինների» կատեգորիա: Դրանք, որպես կանոն, այն վայ-ղեկավարներն էին, որոնց մեջ արմատացած հոգեբանությունն էր՝ անզուսպ կերպով ձգտել մշտապես գտնվել պատասխանատու աշխատանքում: Լինում էր, որ ոմանց նենգությունը և հայցամոլությունը հաղթում էր:

Մարտնչող «պատժապարտներին» նման ձևով աշխատանքի տեղավորելու արատավոր պրակտիկայից մենք հրաժարվել ենք: Մեզանում այժմ կան շատ օրինակներ, երբ իրենց չարդարացրած ղեկավարները աշխատում են շարքային պոստում, գտնվում են ստորին աշխատանքում: Եվ այդպիսիների կյանքի դասը օրինակ է նրանց համար, ովքեր պետք, ղեկավար աշխատողի պաշտոնի մեջ տեսնում են միմիայն արտոնություններ: Անհրաժեշտ է, ինչպես սովորեցնում է կուսակցությունը, կադրերի նկատմամբ վստահությունը, հոգատար վերաբերմունքը զուգակցել խստապահանջության, պահանջկոտության հետ: Թույլ տված խախտումների և սխալների համար ամեն ոք պետք է պատասխանատվության ենթարկվի:

**— Բայց չէ՛ որ խախտում էլ կա, խախտում էլ: Հատկապես, եթե հաշվի առնենք, որ չի սխալվում միայն նա, ով ոչինչ չի անում...**

— Խոսքը, անշուշտ, մանր թերությունների, սխալների մասին չէ, որոնք, ցավոք, անխուսափելի են ամեն մի աշխատող, կրկնում եմ՝ աշխատող մարդու մոտ: Այստեղ կարելի է բանը վերջացնել քննադատությամբ, դաստիարակչական ներգործությամբ: Խոսքը լուրջ սկզբունքային սխալների մասին է, կուսակցական, պետական կարգապահության, մեր բարոյականության նորմերի կոպիտ խախտումների մասին:

Այստեղ պետք է ասել նաև գործի մյուս կողմի մասին: Նրանց մասին, ովքեր ոչ միայն արժանի կերպով են հեծել իրենց ձին, այլև հմտորեն սանձել են նրան: Վստահ են զգում իրենց տեղում: Եվ այդ վստահությունը բխում է այն հատկություններից, որոնցով օժտված է իսկական սովետական ղեկավարը: Խոսքը վերաբերում է արտադրության մեր հրամանատարներին, ղեկավար աշխատողների հսկայական բանակին: Կուսակցությունն ու ժողովուրդը բարձր



են գնահատում նրանց աշխատանքը: Նրանց մասին գրում են թերթերում: Բայց մեր ժուռնալիստները արդյո՞ք միշտ են կարողանում վառ ու համոզիչ կերպով, ինչպես ասում են, մատուցել դրական փաստը, դրական նյութը: Բացահայտել մեր ժամանակակից ղեկավարի կերպարը: Պարզ է՝ բացասականի մասին գրելը շատ ավելի հեշտ է: Այնտեղ կարելի է հաջողության հասնել թեմայով, սյուժեով, սրությամբ: Բայց չէ որ դրականն էլ կարելի է և պետք է մատուցել սուր, գրավիչ կերպով:

Միանգամայն արդարացված է, որ մեզանում շատ և լավ են գրում ստեղծագործող մարդկանց մասին: Տաղանդները հազվադեպ են պատահում և նրանց հարկավոր է առանձնահատուկ կերպով գնահատել: Կառավարումը նույնպես ստեղծագործություն է: Պատահական չէ, որ խոսում են կառավարման արվեստի մասին, կամ կառավարման գիտության մասին: Եվ այսօր չի կարելի ուզած կոլեկտիվի ղեկավարման գործում հաջողության հասնել, չտիրապետելով կառավարման գիտությանը, արվեստին:

Կառավարումը բարդ պրոցես է, այն ենթադրում է կոմպլեքսային, համակարգված մոտեցում, կատարողական կարգապահության ռստ ամենայնի ամրապնդում: Կարելի է վստահությամբ ասել՝ այնտեղ, որտեղ կառավարումը իր բարձրության վրա է, գործնական վերահսկողություն կա այն բանի նկատմամբ, որ խոսքը վերածվի գործի, այնտեղ միշտ բարձր արդյունքների են հասնում աշխատանքում, իրագործում են նախատեսված նպատակները:

Մի քանի տարի առաջ մի արտադրատեխնիկական միավորումում կադրերի բարձր հոսունություն կար: Ես արդեն չեմ ասում այն բոլոր բացասական հետևանքների մասին, որ կապված են դրա հետ: Միավորման ղեկավարությունը, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները ձեռնամուխ եղան այդ վիճակի պատճառների ուսումնասիրմանը: Հետազոտությունները ի հայտ բերեցին, որ դրանցից գլխավորները առնչված են սոցիալական բնույթի մի շարք հարցերի թերի լուծման հետ՝ աշխատանքի, կենցաղի, հանգստի պայմանները և նման այլ հարցեր... Այսօր միավորումում լիովին բացառվել է կանանց աշխատանքը գիշերային հերթափոխում: Կազմակերպված է որակյալ բժշկական կոնսուլտացիա: Գործում են պանսիոնատ և «առողջության արտադրամաս» Ջերմուկ առողջարանի բազայի վրա: Կազմակերպված է օժանդակ տնտեսություն: Բանվորներին մատակարարում են թարմ բանջարեղեն, միրգ և այլ մթերքներ: Լուծել են նաև տրանսպորտի պրոբլեմը: Եվ ահա արդյունքը՝ կադրերի հոսունությունը նվազել է կրկնակի չափով: Մեծապես բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Ավելացել է որակի բարձր կատեգորիայի առարկաների թողարկումը: Կարելի է կառավարչական խնդիրների լուծման նկատմամբ ստեղծագործական մոտեցման շատ օրինակներ բերել աշխատավորական այլ կոլեկտիվների պրակտիկայից: Այնպիսի կոլեկտիվներ, ինչպիսիք են «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, Լենինականի տեքստիլ կոմբինատը, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանը, Հրազդանի ՊՇԷԿ-ը, Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսությունը, «Երարդշին» շինարարական տրեստը և այլն: Շատ մինիստրություններում, գերատեսչություններում, ձեռնարկություններում ակտիվորեն ներդրվում են կառավարման ավտոմատ սիստեմներ: Հատկանշական է կուսակցության Հրազդանի շրջկոմի փորձը կառավարման ավտոմատ սիստեմի ներդրման ասպարեզում:

**— Բայց և այնպես, Կարեն Սերոբովիչ, ես կուզենայի վերադառնալ կառավարչի անձնավորության վերաբերյալ խոսակցությանը: Պաշտոնական պարտքի բերումով լինելով տարբեր կոլեկտիվներում, առիթ է լինում լսել այնպիսի ղեկավարի մասին, որի համար իբր պատնեշներ չկան: Նա նպատակին է հասնում բոլոր թույլատրելի և անթույլատրելի միջոցներով: Նա ոչ մի բանի առջև կանգ չի առնում: Այդպիսիների մասին ասում են, «բռունցքով մարդ», «ուժեղ ձեռք»:**

— Ես նույնիսկ դեմ եմ այդպիսի բնորոշումներին: Չեմ կարծում, որ ուժեղ, կամքի տեր ղեկավարը նա է, ով նպատակին է հասնում բոլոր միջոց-

ներով: Ընդսմին կարծելով, որ «հաղթողին չեն դատում» կամ «նպատակն արդարացնում է միջոցները» բանաձևերը իրենց հիմքում անթերի են, անբասիր: «...Այն նպատակը, որի համար անիրավ միջոցներ են պահանջվում,— նախազգուշացրել է Մարքսը,— իրավացի նպատակ չէ...»: Իսկական, ուժեղ, կամքի տեր ղեկավարը, որոշում կայացնելով, ձգտելով նպատակին, չի կարող ոչ մի չափով խախտել սահմանված նորմերը, օրենքները: Բայց դա քիչ է: Նա պետք է ենթականերին էլ դաստիարակի օրենքների, նորմատիվ պահանջների անշեղ կատարման ոգով...

**— Բայց մյուս կողմից, հենց այդ նորմատիվ պահանջները հաճախ հնանում են մեր աչքի առաջ: Դրանք, ուղղակի ասենք, չեն հասնում կյանքի ետևից, որը տեղում կանգնած չէ, բուռն կերպով առաջ է շարժվում: Եվ ինչ որ փուլում նորմատիվը, հրահանգը պարզապես արգելակ է դառնում:**

— Իհարկե, միշտ պետք է հաշվի առնել, որ ամեն մի նորմատիվ ակտ, հրահանգ ժամանակի ընթացքում պահանջում է համապատասխան ճշգրտում: Ահա կառավարիչի ուժը, իմաստությունն էլ հենց այն է, որ ժամանակին նկատի կենդանի իրականության հետ նորմատիվ ակտի նշմարվող անհամապատասխանությունը: Եվ ոչ միայն նկատի, այլև հասնի ճշգրտման: Ես արդեն ասացի, որ կառավարման գործում հիմնական մոմենտներից մեկը պետք է համարել օրենքի խստիվ կիրառումը, նրա նկատմամբ հարգանքի բարձրացումը, նրա պահանջների անշեղ կատարման զգացում ու հոգեբանություն դաստիարակելը: Չէ՛ որ, վերջին հաշվով, ամեն մի նորմատիվ ակտ կանոնավորիչն է այն փոխհարաբերությունների, որոնց մեջ նա հստակություն, որոշակիություն է մտցնում: Առանց դրա չի կարելի կառավարել: Ինչպես որ չի կարելի կառավարել, հաշվի չառնելով ընդունված կառավարչական որոշման իրականացման բոլոր հետևանքները : Ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական, սոցիալական, բարոյական, էկոլոգիական բնույթի հետևանքները: Կառավարման որակն էլ հենց դա է: Քիչ է որոշում ընդունել, որը ամենականոն և օրինական ճանապարհով հանգեցնի նպատակի իրականացմանը: Կանխատեսել հետևանքները՝ ահա մյուս պարտադիր պայմանը: Կանխատեսել թե՛ հետագա զարգացումը, թե՛ բացասական հետևանքները: Եվ բացառել ապագայում դրանց առաջացման հնարավորությունը: Մի խոսքով՝ մտածել վաղվա օրվա մասին: Հոգ տանել նրա մասին: Կառավարումը պետք է նպատակամղվի ապագային:

Հայկական առասպելներից մեկը պատմում է մի քարտաշի մասին, որը գյուղում աղբյուր է կառուցել: Զառիթափ ժայռի վրա նա անցք էր բացել, որից հոսում էր կենարար ջրի բարակ շիթը, լցվելով քարի մեջ փորված խորգուռը: Սա արդեն կենդանիներին ջրելու համար էր: Վարպետը չէր թողել իր անունը: Բայց ժայռի հարթ, հղկված մասում փորագրել էր իր խոսքը այն մասին, որ այդ ժայռը սուրբ է և որ այն անցքը, որտեղից ջուրը դուրս է գալիս, չի կարելի լայնացնել: Դա արդեն թաբու էր: Օրենք, որը խախտելով, հանցանք կգործես: Եվ, այնուամենայնիվ, տարիներ անց էլի գտնվեց մի «հերոս», որն սկսեց լայնացնել ժայռի անցքը: Ջուրն սկսեց ավելի ուժեղ, ավելի աղմկոտ ցայտել: Պատվիրանը խախտած մարդը որոշ ժամանակ իսկապես հերոսի համբավ էր վայելում: Բայց միայն որոշ ժամանակ: Շուտով աղբյուրը ցամաքեց, իսկ նրա հետ նաև գյուղը:

**— Առասպելը ուսանելի է: Դա իմ մեջ հարուցեց այն միտքը, որ անցյալում մեր հանրապետությունում մենք բազմիցս կանգնել ենք այնպիսի փաստի առաջ, երբ, բավարարվելով այսօրվա հաջողություններով, շոշափելի, երբեմն էլ պարզապես անուղղելի վնաս ենք հասցրել շրջակա միջավայրին: Վերցնենք թեկուզ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի օրինակը...**

— Այդ օրինակը հենց վկայում է, որ իր ժամանակին չեն մտածել հետևանքների մասին: Որոշումն ընդունելիս հաշվի չէին առնվել մի շարք կարևոր հանգամանքներ, այդ թվում նաև բնության պահպանության պահանջները: Միայն նրա համար, որպեսզի ապագայում շրջակա միջավայրը փրկեին վնասակար թափոնների ազդեցությունից, հարկ կլինեին հսկայական միջոցներ ծախսել: Վերադաս մարմինների հատուկ որոշմամբ վերապրոֆիլավորվեց



արդեն կառուցվող կոմբինատը, դրանով իսկ կանխելով մեծ կորուստներ: Տվյալ կոնկրետ դեպքում ծախսերը նվազագույն էին: Բայց որքա՛ն ավելի կտուժեինք, եթե չկատարեինք այդ ծախսերը:

Իզուր չէ, որ առանձին որոշումներ բնութագրում են «իմաստուն» էպիտետով: Ըստ իս, իսկական իմաստության մեջ պետք է արտահայտվի նաև անհանգստությունը ապագայի համար:

**— Կարեն Սերոբովիչ, Ձեր կարծիքով, ինչպիսի՞ն է քննադատության դերը կառավարչական գործունեության որակի բարձրացման գործում:**

— Իսկն ասած, քննադատությունը վերլուծություն է՝ գնահատական տալու, թերությունները հայտնաբերելու նպատակով: Կարծիքների հաշվառումը, քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացումը կառավարման որակի բարելավման կարևոր տարրն է: Չէ՛ որ կառավարման սիստեմը հիմնվում է նաև հակադարձ կապի սկզբունքի վրա: Եթե այդ կապը խախտվում է, ապա չի լինի ո՛չ արդյունավետություն, ո՛չ որակ: Իսկ կապը ամենից ավելի խախտվում է կամ խզվում, երբ կառավարիչը չի արձագանքում ամբողջական օրգանիզմի որևէ օղակում տեղի ունեցած վիժեցման ու խափանման վերաբերյալ քննադատական դիտողությանը: Պարզ բան է, եթե ժամանակին չարձագանքեն քննադատությանը, չշտկեն թերությունները մասնավորում, ապա, վերջին հաշվով, կտուժի ընդհանուրը:

Քննադատության և ինքնաքննադատության սկզբունքը թերությունների դեմ մղվող պայքարի հիանալի միջոցն է:

Իր ժամանակին խստիվ քննադատվեց բանջարանոցային տնտեսության մեջ տիրող իրավիճակը: Ոչ արտադրությունը, ոչ էլ առևտուրը չէին բավարարում բնակչության պահանջարկը: Քննադատությունն օգնեց: Վերջին հինգամյակում հանրապետությունում, կարելի է ասել, հիմնականում կարգավորված է բանջարեղենի կոնվեյերը: Պահանջարկը ավելի ու ավելի լրիվ է բավարարվում: Իսկ բերքահավաքի եռուն շրջանում բնակչությանը վաճառվում է որքան կարելի է շատ արտադրանք: Իհարկե, ինչպես ասում են, մի փորից ավելի չես ուտի: Բայց մենք հաշվի ենք առնում ազգային առանձնահատկությունները: Ես ի նկատի ունեմ այն, որ մեզանում ձմռան պաշար են տեսնում բանջարեղենից և մրգից պատրաստված զանազան թթուներ և պահածոներ: Հնարավորություններ են ստեղծվել տարեցտարի ինչպես թարմ, այնպես էլ պահածոյացված վիճակում ավելի ու ավելի մեծ չափով բանջարեղեն ու միրգ մատակարարելու երկրի հեռավոր շրջաններին, հատկապես Սիբիրին և Հեռավոր արևելքին: Ես ճանաչում էի Նոյեմբերյանի շրջանից մի հիանալի այգեպանի, որն ուրախանում էր տարվա հարուստ բերքով: Եվ, ինչպես ինքն էր ասում, ուրախանում էր իր եղբայր ուրալցիների ու սիբիրցիների համար: Չէ՛ որ կարելի կլինի նրանց ավելի շատ մատակարարել արևաշող երկրի բարիքներից:

**— Ուրեմն, կառավարման որակը կախված է նաև այն բանից, թե որքան զգայուն կերպով է նա արձագանքում կյանքի առաջ քաշած նորանոր հարցերին...**

— Այլ կերպ էլ չի կարող լինել: Կառավարումը պետք է ճկուն, դինամիկ լինի, համապատասխանի ժամանակի խնդիրներին: Արհմիությունների XVII համագումարում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը նշեց, որ զարգացման յուրաքանչյուր փուլ առաջ է քաշում իր խնդիրները, դրանք լցնում նոր կոնկրետ բովանդակությամբ, պահանջում նոր մոտեցումներ դրանց լուծմանը: Փոխվել են էկոնոմիկայի մասշտաբները, փոխվել է աշխատանքի բնույթը, փոխվել են տնտեսական շինարարության հիմնական ուղղությունները: Էկոնոմիկան փոխադրել ինտենսիվ աճի ռելսերի վրա, այն դարձնել իսկապես խնայողական՝ այսպիսին է այժմ թե՛ պետական մարմինների, թե՛ տնտեսական ապարատի ընդհանուր նպատակը:

Այս ամենը թելադրում է պլանավորման ու տնտեսավարման մակարդակի բարձրացման, կառավարման հետագա բարելավման, նրա կազմակերպական կառուցվածքների կատարելագործման անհրաժեշտությունը: Անհրաժեշտ է նաև աշխատանքի որակապես նոր ոճ: «Խոսքը վերաբերում է աշխատանքի այնպիսի ոճի մշակմանը,— ասվեց կուսակցության XXVI համագումարում,—

որի մեջ կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես զուգորդվեն համարձակ նախաձեռնության և ձեռներեցության հետ, գործիմացությունն ու գործարարությունը՝ մեծ նպատակների ձգտման հետ, թերությունների նկատմամբ քննադատական վերաբերմունքը՝ մեր ընտրած ուղու պատմական առավելությունների նկատմամբ անխախտ վստահության հետ»:

Աշխատանքի այդպիսի ոճը բարերար կերպով է անդրադառնում նախ և առաջ աշխատանքի որակի վրա: Իսկ աշխատանքի որակի ետևում մենք տեսնում ենք բուն աշխատավոր մարդուն, լինի նա բանվոր, հետազոտող, կազմակերպիչ, որի մասին ժողովրդի մեջ ասում են ոսկի ձեռքեր ունեցող մարդ, գործիմաց մարդ:

— **Կամ ինչպես Հայաստանում դարեր ի վեր իր գործը լավ իմացող մարդուն անվանում են վարպետ:**

— Ցավոք, վերջին ժամանակներս, այդ բառը չափից ավելի են չարչրկել: Բայց ես նկատի ունեմ հենց այն վարպետին, որն իր մեջ խտացնում է դաստիարակի իմաստությունը, մյուսներին է փոխանցում բարեխիղճ աշխատանքի էստաֆետը, իր ժողովրդի բազում սերունդների կողմից կատարելության հասցված վարպետության էստաֆետը: Խոսքը վերաբերում է այն մարդուն, որն արարում է ամենքի համար: Այն մարդուն, որն այսօր, ինչպես երբեք, սթափ գիտակցում է՝ բնության պարգևած հարստություններն անսահման չեն: Բնության միայն մի բարիքն է հավերժական և անսպառ՝ մարդկային բանականությունը, հմտությունը մարդկային ձեռքերի:

— **Հմտություն: Պատահական չէ, որ մեր բանաստեղծ Պարույր Սևակը, որը գովերգել է մարդու վեհությունը, հատկապես գնահատում էր այդ բառը: «Լավ է լինել հմուտ դարբին, քան ոսկերիչ»: Ինչպես տեսնում ենք, բանաստեղծը, գերադասությունը տալիս է դարբնին:**

— Այն մարդուն, որը կերտում է ամենքի համար: Ժողովրդի համար: Աշխատանքի մարդուն, որի վրա է խարսխված աշխարհը:

Զրույցը վարեց ԶՈՐԻ ԲԱԼԱՅԱՆԸ
(«Լիտերատուրնայա գազետա», 24 մարտի 1982 թ.)

---

# ՆՈՐՆ ՈՒ ԱՌԱՋԱՎՈՐԸ՝ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՅԻՆ

**Ս. Գ. ՇԱՀԻՆՅԱՆ**
ՀՍՍՀ պետշինի շինարարության և ճարտարապետության ԳՀԻ դիրեկտոր

*ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ժողովրդական տնտեսության կարևոր օղակներից է, որին ամեն տարի հատկացվում է պետական բյուջեի զգալի մասը: Շինարարությունում ծախսվում է մետաղի գլանվածքի 25, անտառանյութի՝ 20, ցեմենտի՝ 80 տոկոսը: Ուստի կարևորագույն խնդիր է շինարարության տեմպերի արագացումը և որակի բարձրացումը, նյութական, ֆինանսական և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողությունը:*

*Այս խնդրի իրականացման գործում կարևոր դեր ունեն մեր գիտնականները, որոնք նախագծողների հետ համատեղ, կոչված են նպաստելու կապիտալ շինարարության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը:*

*Շինարարության արդյունավետության բարձրացման մասին ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի համապատասխան որոշումների հիման վրա շինարարության և ճարտարապետության գիտահետազոտական ինստիտուտում մշակվեց միջոցառումների կոմպլեքս, որն ընդգրկում է հետազոտական աշխատանքների արդյունավետության և որակի բարձրացման, մշակումներն արտադրության մեջ ներդնելու, հումքի և վառելանյութի հետագա խնայողության պրոբլեմները:*

*Գիտահետազոտական և փորձարարական աշխատանքների կոմպլեքսային-նպատակային նոր ծրագրերը, նախկինի համեմատությամբ, ավելի ընդլայնված են, ընդգրկում են կառավարման սիստեմը, անկախ գերատեսչական ենթակայությունից, իսկ խնդիրների իրացման ժամկետներով կարող են դուրս գալ հնգամյա պլանների սահմաններից, միաժամանակ հանդիսանալով միջանկյալ օղակ նախորդ հնգամյա պլանների համար:*

*Ելնելով վերոհիշյալից, վերանայված են նաև ինստիտուտի հիմնական գիտական ուղղությունները, հատուկ ուշադրություն նվիրելով ժողովրդական տնտեսության համար առավել կարևոր պրոբլեմներին: Դրանք են՝ շենքերի և կառուցվածքների սեյսմակայունությունը, որը, բացի տնտեսականից, ունի նաև սոցիալական նշանակություն: Սեյսմակայունության ապահովման գիտահետազոտական աշխատանքները մեր ինստիտուտում տարվում են ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կոորդինացիոն պլանների համաձայն՝ մի շարք միութենական ինստիտուտների հետ համատեղ:*

*Շենքերի և կառուցվածքների սեյսմիկ ամրությունն ու հուսալիությունը բարձրացնելու նպատակով ինստիտուտի համապատասխան լաբորատորիաներում կատարվում են տեսական և փորձարարական գիտահետազոտական լուրջ աշխատանքներ: Աշխատանքների արդյունքները հանգեցրել են առկա հաշվարկումների հետագա կատարելագործմանը, որոնք հատուկ տեղ են գտել համամիութենական համապատասխան նորմատիվային փաստաթղթերում:*

Ինչպես հայտնի է, մինչև այժմ շենքերի սեյսմակայունության հաշվարկները կատարվում են համաձայն գործող նորմաների, որոշակի վերապահումներով, այս իսկ պատճառով մեր ինստիտուտի գիտնականները, երիտասարդ գիտնական, տեխնիկական գիտությունների դոկտոր Է. Խաչիյանի ղեկավարությամբ, Միության կենտրոնական ինստիտուտների հետ համատեղ, մշակել են բարձրահարկ շենքերի հաշվարկման արդյունավետ մեթոդ՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումով: Այդ մեթոդը հիմնվում է ուժեղ երկրաշարժերի ազդեցություններից շենքերի և դրանց հիմնատակերի տատանման արագացումների գրանցումների վրա: Այդ նպատակով Երևանի զանազան շրջաններում, տարբեր գրունտային պայմաններում ինստիտուտը կազմակերպել է ինժեներասեյսմոլոգիական կայաններ, որոնք անընդհատ կատարում են գետնի տատանումների համապատասխան գրանցումներ: Արդեն ստացվել են 4—6 բալ ուժգնության երկրաշարժերի մի քանի գրանցումներ: Ստացված նյութերը նախագծողներին հնարավորություն են ընձեռում կատարելու շենքերի դինամիկական հաշվարկումներ, ելնելով դրանց իրական վարքագծից կամ վիճակից, հաշվառելով տվյալ գրունտների ինժեներաերկրաբանական պայմանները:

Շենքերի նախագծման ժամանակ, ինչպես նաև վերոհիշյալ հաշվումների կատարելագործման և ճշտման համար խիստ կարևոր է դրանց դինամիկական հատկությունների ուսումնասիրությունները: Այդ նպատակով ինստիտուտի մասնագետները վերջին տարիներին կատարեցին տարբեր կոնստրուկտիվ սխեմաներ ունեցող 9—14 հարկանի բնակելի տների նման ուսումնասիրություններ՝ այդ նպատակի համար մշակված, մեծ հզորությամբ, թրթռացող մեքենաների օգնությամբ:

Բացի տեսական հետազոտություններից՝ իրականացվում են նաև փորձնական ուսումնասիրություններ տարբեր շենքերի, դրանց կառուցվածքների, առանձին հանգույցների, մասերի և մոդելների վրա երկրաշարժերի ազդեցության վերաբերյալ: Դրանք կատարվում են ինստիտուտում մշակված հատուկ ուժային ստենդի վրա, որը, իր բազմապիսի հնարավորություններով, առայժմ միակն է Միությունում:

Նշված ուսումնասիրությունները հնարավորություն ընձեռեցին մեր հանրապետությունում կառուցել հավաքովի երկաթբետոնե 9—16 հարկանի բարձրահարկ շենքեր: Նման շենքերի կառուցումը նպաստում է շինարարության ինդուստրիայի զարգացմանը, կրճատվում են կառուցման ժամկետները, առավել ռացիոնալ և խնայողաբար են օգտագործվում հողամասերն ու շինանյութերը:

Հաջորդ պրոբլեմը միաձույլ տնաշինությունն է, որը ինչպես կոնստրուկտիվ, այնպես էլ տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներով բավական արդյունավետ է և լայն հեռանկարներ է խոստանում հանրապետության բնակելի, հատկապես զանգվածային շինարարության հետագա զարգացման ասպարեզում: Այս մեթոդի հիմնական առավելությունը, համեմատած հավաքովի կոնստրուկցիաներով տնաշինության հետ, այն է, որ այստեղ բացակայում են առանձին հանգույցներ և միացումներ, որի շնորհիվ շենքերի կառուցվածքները վերածվում են տարածական միաձույլ կմախքի՝ ապահովելով բարձր ամրություն և կայունություն: Այս դեպքում ստացվում է շինանյութերի, հատկապես ցեմենտի և երկաթի մոտ 10—15 տոկոսի խնայողություն, շենքի զանգվածի զգալի (20—25 տոկոսի) նվազեցում, որոնք խիստ կարևոր նշանակություն ունեն սեյսմոակտիվ շրջաններում իրականացվող կառույցների համար: Միաձույլ երկաթբետոնե կոնստրուկցիայով շենքերը ո՛չ միայն տնտեսական և շահագործական տեսակետից ունեն առավելություններ, այլև օժանդակում են լուծելու քաղաքաշինական մի շարք պրոբլեմներ, քանի որ տների աշտարակային կոմպոզիցիաները բնակելի թաղամասերի և միկրոշրջանների կառուցապատման ժամանակ ստեղծում են ճարտարապետական արտահայտչականություն և բազմազանություն:

Վերջերս Արփա—Սևան շինարարական կազմակերպությունը Երևանում իրականացրեց ինստիտուտի մասնագետների կազմած և ՍՍՀՄ պետշինի հաստատած 9 հարկանի միաձույլ երկաթբետոնե կոնստրուկցիաներով շարժական-տեղափոխվող կաղապարներով տան նախագիծը: Ներկայումս մշակվում



է և շուտով կավարտվի ինստիտուտի աշխատողների համար նախատեսված 9 հարկանի բնակելի տան փորձարարական նախագիծը: Կառույցի շինարարությունը նախատեսվում է սկսել այս տարի:

Նկատի ունենալով միաձույլ տնաշինության խիստ անհրաժեշտությունը մեր հանրապետության շինարարության համար, անցյալ տարի ինստիտուտում կազմակերպվեց նոր լաբորատորիա, որի հիմնական խնդիրն է տեղական շինանյութերի բազայի վրա տեսական և գործնական հետազոտություններ կատարել կոնստրուկցիաների հետագա զարգացման և կատարելագործման նպատակով:

Լավագույն ֆիզիկամեխանիկական հատկությունների շնորհիվ մեզ մոտ լայն կիրառում են ստացել տեղական ծակոտկեն այնպիսի շինանյութեր, ինչպիսիք են տուֆերը, պեմզան և հրաբխային խարամները, որոնց պաշարները բավականին մեծ են:

Նշված շինանյութերի հարուստ պաշարները հնարավորություն ընձեռեցին դրանց բազայի հիման վրա գիտահետազոտական լայն աշխատանքներ իրականացնելու թեթև բետոնների ստեղծման և կատարելագործման, ինչպես նաև դրանցից շենքերի կոնստրուկցիաներ և տարրեր պատրաստելու համար: Ապացուցված է, որ տեղական, ծակոտկեն լցիչներից կարելի է ստանալ տարբեր նշանակության թեթև բետոններ ինչպես հավաքովի, այնպես էլ միաձույլ երկաթբետոնե կոնստրուկցիաների համար: Մեր մասնագետների կատարած գիտահետազոտական աշխատանքների շնորհիվ այժմ տեղական ծակոտկեն լցիչներից պատրաստված թեթև բետոնները բացի բնակելի և արդյունաբերական շինարարությունից լայն կիրառում են ստացել հանրապետության հիդրոտեխնիկական կառույցներում, իսկ 1980 թվականից, միութենական պրակտիկայում առաջին անգամ, նաև տրանսպորտային շինարարությունում: Երևանի մետրոպոլիտենի, Հրազդան—Իջևան երկաթուղու ստորգետնյա շինություններում թեթև բետոնների կիրառմամբ ստացվել է միջոցների զգալի խնայողություն:

Այժմ թեթև բետոններից իրականացվող հավաքովի, ներառյալ նաև նախապես լարված կոնստրուկցիաների տեսակարար կշիռը մեր հանրապետության կառույցներում կազմում է շուրջ 70 տոկոս, որը Միության մեջ բարձր ցուցանիշ է:

Ինստիտուտում բետոնների լաբորատորիայի վարիչ, ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Մ. Սիմոնովի ղեկավարությամբ մեծ աշխատանքներ են կատարվում թեթև բետոնների տեխնոլոգիայի կատարելագործման, տարբեր մեթոդներով գերամուր բետոնների ստացման նպատակով: Զանազան քիմիական հավելումների, մասնավորապես պոլիմերային նյութերի կիրառումով մշակվել են բետոններ, որոնք հաջողությամբ կարող են կիրառվել քիմիական ագրեսիվ միջավայրերում գտնվող երկաթբետոնե կոնստրուկցիաներում: Նման փորձնական աշխատանքներ են ներդրվելու այս տարի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման արտադրամասերում: Մշակվում են հանրապետության տարբեր կլիմայական պայմաններում շահագործվող բետոնե և երկաթբետոնե կոնստրուկցիաների կոռոզիայի դեմ պայքարի գիտական, մասնավորապես ֆիզիկաքիմիական (լուսային, էլեկտրոնային դիտակի, ռենտգենյան և այլն) մեթոդների կիրառում:

Ուսումնասիրություններ են կատարվում բետոններում պեռլիտների կիրառման նպատակով, որի դեպքում զգալիորեն թեթևանում են շենքերը, բարելավվում են արտաքին պատերի ջերմատեխնիկական հատկությունները, խնայվում են նյութերն ու վառելիքը: Ինստիտուտի մասնագետների առաջարկած և փորձարարական ձևով ներդրած հարկի բարձրությամբ պեռլիտբետոնային հավաքովի միջնորմները տարբերվում են իրենց թեթև քաշով, բարձր հրադիմացկունությամբ, լավագույն ջերմաձայնամեկուսիչ հատկություններով և, որ ամենակարևորն է, այլևս «թաց» ծեփապատում չի կատարվում:

Պեռլիտբետոնե ներդիրներով արտաքին եռաշերտ պատերի պանելների կոնստրուկցիաները զգալի առավելություններ ունեն միաշերտ բետոնե պանելների նկատմամբ (սեփական զանգվածների կրճատում, վառելիքի խնայո-

ղության և այլն)։ Այս տարի նախատեսվում է ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության Երևանի «Շինանյութ» գործարանում ստեղծել պենոլիտաբետոնային ներդիրների պատրաստման տեխնոլոգիական նոր գիծ։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ ինստիտուտը ձեռնամուխ է եղել հանրապետության քաղաքներում կուտակված տուֆերի մնացորդները բետոններում օգտագործելու հարցերով։ Արդյունքները գոհացուցիչ են. այստեղ ո՛չ միայն մնացորդների օգտագործման հարցն է, այլև հազարավոր հեկտար տարածությունները գյուղատնտեսական նպատակներով օգտագործելու հնարավորությունը (հողերի, այսպես կոչված, ռեկուլտիվացիա)։ Որոշակի արդյունքների են հասել նաև արտադրության, հատկապես գունավոր մետալուրգիայի արդյունաբերության թափոններից համապատասխան սիլիկատային և փրփրաբետոններ պատրաստելու մարզում։ Այս դեպքում ոչ միայն օգտագործվում են մնացորդները, այլև առանց ցեմենտի (որը դեֆիցիտային է) ստացվում է բետոն։

Հարցը մեր հանրապետության համար հատկապես խիստ կարևոր է, եթե հաշվի առնենք թափոնների զգալի քանակությունը, որը պահանջում է միջոցներ թեկուզ միայն պահեստավորման համար։ Մեր ինստիտուտի և ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության մասնագետները նշված թափոններից մշակել և պատրաստել են պատերի բլոկներ, միջնորմների սալեր, ծածկի կարճաթռիչք կոնստրուկցիաներ։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է այս աշխատանքների հետագա զարգացում և շինարարության մեջ անմիջականորեն ներդրում։

Հաջորդ պրոբլեմը, որ ինստիտուտի գիտնականների ուշադրության կենտրոնում է, հատուկ ուսումնասիրությունների հիման վրա թեթև բետոններից արտադրական, բնակելի և քաղաքացիական շենքերի կոնստրուկցիաների նախագծումը, պատրաստումը և ներդրումն է։ Այս նպատակով, իհարկե, հատկապես վերջին տարիներս, զգալի աշխատանքներ են կատարվել։ Մշակվել և ներդրվել են թեթև բետոնե միջհարկային ծածկերի երկարաթռիչք (7,5 մ) կոնստրուկցիաներ, ֆերմաներ (18 մ), բազմաղան տեսակների ծածկասալեր, տանիքներ, պարզունակներ, շենքերի կմախքներ։ Միջհարկային ծածկերի խոշորացումը, թռիչքների հետագա մեծացումը (մինչև 9 մ) նախագծողներին հնարավորություն կընձեռեն մշակելու ավելի «ճկուն» ճարտարապետական-հատակագծային լուծումներ, հատկապես քաղաքացիական շինարարության համար։ Վերոհիշյալ աշխատանքները կատարվում են տեխնիկական գիտությունների դոկտոր Լ. Սեդրակյանի ղեկավարությամբ։

Ժամանակակից քիմիայի զարգացումը հնարավորություն է ընձեռում գիտնականներին հետազոտությունների արդյունքները կիրառելու նաև շինարարական պրակտիկայում։ Այս դեպքում ոչ միայն զգալիորեն թեթևացվում են շինարարական կոնստրուկցիաների և տարրերի զանգվածները, այլև դրանք դառնում ավելի ամուր և հարատև, խնայվում են զգալի միջոցներ։ Ինստիտուտում բազալտի և ապակու թելիկների կիրառման շնորհիվ մշակված թերթավոր կոնստրուկցիաները հաջողությամբ կարող են փոխարինել դեֆիցիտ ասբեստին։ Իսկ նույն բազալտի մանրաթելի և հատուկ սոսինձների խառնուրդից պատրաստված շաղախները հաջողությամբ օգտագործվեցին Երևանի ժուռնալիստի տան և Երիտասարդության պալատի քարե ծածկերի ջրամեկուսացման նպատակով։ Աշխատանքներ են կատարվում մետաղական ամրանները ապակու թելիկներից ստացվող ամրաններով փոխարինելու համար։

Ինստիտուտի գիտնականների առջև ծառացած են որոշակի պրոբլեմների իրականացում շինարարական աշխատանքների մեքենայացման բնագավառում։ Ինչպես հայտնի է բնական ծակոտկեն լցիչներից թեթև բետոնների զանգվածային ներդրումը շինարարության մեջ, հաշվի առնելով դրանց խառնման և պատրաստման առանձնահատկությունները, պահանջում է բարձրարդյունավետ բետոնախառնիչների մշակում և ներդրում։ Նշված խնդրի իրականացման համար անցյալ տարի ավարտվեցին 2.000 լիտր տարողությամբ նոր կոնստրուկցիայի բետոնախառնիչի գծագրերը։ Բետոնախառնիչի պատրաստումը նախատեսվում է մոտ ժամանակներս։ Նոր բետոնախառնիչի առավելու-



թյունն այն է, որ այստեղ շաղախի պատրաստումը, խառնումը կատարվում են փակ, հերմետիկ վիճակում։ Նոր բետոնախառնիչը ապահովում է թեթև լցիչներից բարձրորակ բետոնի և շաղախի պատրաստումը։ Դրա արդյունավետությունը շուրջ 2 անգամ բարձր է գոյություն ունեցողների նկատմամբ, ապահովում է 10—15 տոկոս ցեմենտի խնայողություն։

Հայտնի է, որ նախապես լարված երկաթբետոնե կոնստրուկցիաներում ամենակարևոր աշխատանքներից է ամրանների ձգումը։ Մեզ մոտ մշակված մինչև 100 տոննա հզորության կիսաավտոմատ հիդրոդոմկրատը ապահովում է ցանկացած երկարությամբ ամրանների առանց կորստի լարումը։ Բետոնախառնիչի և հիդրոդոմկրատի ստեղծողներն արժանացել են հեղինակային վկայականների. դրանց փորձնական նմուշները ցուցադրվել են Լայպցիգի միջազգային տոնավաճառում։ Հիդրոդոմկրատը հաջողությամբ կիրառվում է ո՛չ միայն մեր հանրապետության, այլև Վրացական ՍՍՀ-ի և Ռուսաստանի Ֆեդերացիայի բազմաթիվ շինարարական կազմակերպություններում։

Թույլ գրունտների ամրացման և խտացման հարցերը բավական կարևոր են ինչպես կառույցների հիմնատակերի, այնպես էլ ճանապարհների, օդանավակայանների, երթուղիների, հիդրոտեխնիկական, ջրային տնտեսության և այլ շինարարությունների համար։ Այդ նպատակով ինստիտուտում մշակված 18 և 3 տոննա զանգվածով ինքնագնաց, խտացնող մեքենաների արդյունավետությունը զգալիորեն բարձր է գործող համանման մեքենաներից, իսկ մեքենաների գլխամասային նմուշների կոնստրուկցիաներին վերջերս շնորհվեց դրանց ստեղծողի, մեր ինստիտուտի ավագ գիտաշխատող Ալեքսանդր Ակոպովի անունը։ Բացի վերը նկարագրված գրունտների մեխանիկական ամրացումից, ինստիտուտի մասնագետները մշակեցին և անցյալ տարի Երևանի Շահումյանի շրջանի բնակելի թաղամասում ներդրեցին թույլ, գիպսային զգալի խառնուրդներ պարունակող, խոնավ գրունտների քիմիական եղանակով ամրացման մեթոդ։ Մեթոդի առավելությունն այն է, որ քիմիական էժան նյութերից պատրաստված լուծույթների ներարկմամբ կանխվում է շենքերի գոյություն ունեցող դեֆորմացումը։ Այս մեթոդը ևս արժանացել է հեղինակային վկայականի։

Ինստիտուտը, լինելով բազմապրոֆիլային, զգալի անելիքներ ունի ճարտարապետության ասպարեզում։ Ինստիտուտում են նախագծվել և ուսումնասիրվել Երևանում իրականացված 16 հարկանի հավաքովի-միաձույլ կոնստրուկցիաներով բնակելի տները։ Դրանք քաղաքի կառուցապատմանը տալիս են բազմազանություն և ուրվագծային նոր կոմպոզիցիա։ Շնորհիվ վերջին տարիներս կատարված գիտահետազոտական և փորձարարական ուսումնասիրությունների՝ մշակված են շենքերի նոր, այսպես կոչված, շրջանակային-կապային կոնստրուկտիվ սխեմա, որի արդյունավետությունն ու հուսալիությունը, անկասկած, ակնառու է։ Ավան—Առինջ փորձարարական, օրինակելի թաղամասը, որի շինարարությունը կավարտվի շուտով, հիմնականում իրականացվում է վերոհիշյալ տների տեղակայումով։

Ինստիտուտի ճարտարապետները կարևոր առաջարկություններ են արել թեք լանջերի ռացիոնալ կառուցապատման նպատակով։ Պարզվում է, որ գյուղատնտեսության համար ոչ օգտագործելի թեքություններ վրա կարելի է բազմաշինական տեսակետից արդյունավետ (2—5 հարկանի) կառուցապատման այնպիսի սխեմաներ մշակել, որոնցում խտությունը մոտավորապես համազոր է հարթ հողատարածություններում նույն հարկայնության կառուցապատմանը։

Գյուղական ցածրահարկ տների մշակման և կառուցապատման հարցերը ևս գտնվում են ինստիտուտի ճարտարապետների ուշադրության կենտրոնում։ Դրանց նախագծումը իրականացվում է՝ ելնելով բնակլիմայական և բնակչության ազգային ու կենցաղային առանձնահատկություններից։ Այս նպատակով տեղերում կատարվել են մանրամասն ուսումնասիրություններ։

Հանրապետության բնակելի շինարարության համար ինստիտուտի ճարտարապետների և տնտեսագետների մշակած ստրուկտուրան հաստատվել է Մինիստրների խորհրդի կողմից և առաջարկվել պլանավորող կազմակերպու-

թյուններին՝ բնակելի շինարարության հեռանկարային պլանավորումն իրականացնել դրա հիման վրա։

Քաղաքաշինարարների գիտահետազոտական աշխատանքները նվիրված են բնակավայրերի զարգացման սոցիալ-տնտեսական առանձնահատկությունների, շրջակա միջավայրի պահպանության և նորմալացման, բնակելի շրջանների կառուցապատման պրոբլեմներին։ Ի դեպ, քաղաքաշինության բաժնի կոլեկտիվի մշակած՝ Պարույր Սևակի բնակելի թաղամասի փորձարարական նախագիծը վերջերս արժանացավ ՀՍՍՀ պետշինի և ճարտարապետների միության առաջին կարգի մրցանակի, իսկ հանրապետության բնակչության տարաբաշխման սխեմայի գործող մակետը 1981 թ. հաջողությամբ ցուցադրվեց Մոնրեալի «Մարդը և իր աշխարհը» միջազգային ցուցահանդեսում։

ՍՍՀՄ պետշինի և շինարարության ու շինանյութերի աշխատողների արհմիության համամիութենական կոմիտեի կոլեգիայի որոշումներով նշվել է ինստիտուտի 1980 և 1981 թվականների դրական աշխատանքը։ Ինստիտուտի լավագույն գիտաշխատողները անցյալ տարի պարգևատրվեցին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մեդալներով և դիպլոմներով։ Ինստիտուտի փորձարարական նախագծման բաժնի՝ Էջմիածին քաղաքում կառուցած բնակելի տների նախագծերը անցյալ տարի արժանացան ՀՍՍՀ պետական մրցանակի։

Ինստիտուտի կոլեկտիվը համատեղ գիտական աշխատանքներ է կատարում միութենական մի շարք խոշոր, այդ թվում շինարարական կոնստրուկցիաների կենտրոնական, երկաթբետոնի, շինարարական էկոնոմիկայի, հիմքերի և հիմնատակերի, բնակարանների նախագծման, ճարտարապետության, քաղաքաշինության և այլ գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտների հետ։ Մեր շատ աշխատողներ միութենական և հանրապետական գիտահետազոտական ինստիտուտների, բարձրագույն ուսումնական հաստատությունների գիտական խորհուրդների անդամներ են։

ՍՍՀՄ պետշինը մեր ինստիտուտին է վերապահել բնական, ծակոտկեն լցիչներից պատրաստվող թեթև բետոնների ուսումնասիրության բնագավառում Միության մեջ առաջատարի պարտականությունը։

1979 թ. դեկտեմբերին ինստիտուտի կոլեկտիվը նշեց իր կեսդարյա հոբելյանը, անցյալ տարի մեզ մոտ կազմակերպվեցին Անդրկովկասյան հանրապետությունների շինարարական գիտահետազոտական ինստիտուտների ավանդական գիտական նստաշրջանը, ինչպես նաև տարածական և երկարաթռիչք կոնստրուկցիաների պրոբլեմներին նվիրված սիմպոզիումը։ Ինստիտուտը պարգևատրվեց ՀՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով։

Այդուհանդերձ, մեր աշխատանքներում կան նաև բազմաթիվ չլուծված հարցեր։ Այսպես, օրինակ, մեր մշակումները դեռևս բավարար չափով չեն ներդրվում շինարարության մեջ։ Շենքերի զանգվածների կրճատման, էներգիայի խնայման նպատակով մշակված տների արտաքին պատերի եռաշերտ՝ պեռլիտբետոնային ներդիրներով պանելները մինչև օրս շինարարների կողմից չեն պատրաստվում։ Կառուցվող շենքերի ճակատների երեսպատման համար անբավարար են օգտագործվում մասնագետների առաջարկած տարբեր տեսակի դեկորատիվ տարրերը (գունավոր բետոններ, տուֆաքարերի խճանկարներով պանելներ, պատշգամբների ճաղեր և այլն)։ Դանդաղ են իրացվում մեր կոնստրուկտորների մշակած 7 մետրից ավելի թռիչք ունեցող ծածկի հեծանները, որոնց կիրառումը հնարավորություն կընձեռի զգալիորեն բարելավելու շենքերի հատակագծային լուծումները։ Շինարարության մեջ դեռևս անբավարար են թեթև բետոնե լցիչների հղկման, ճնշման եղանակով բետոնների պատրաստման սարքավորումների օգտագործումը, որոնց շնորհիվ կարելի է ստանալ շինանյութերի, հատկապես ցեմենտի, որոշակի խնայողություն։

Ինստիտուտը կարևոր աշխատանքներ է կատարում հանրապետությունում վթարային շենքերի ամրացման և վերականգնման գործում, սակայն դեռևս



խիստ հսկողություն չի սահմանվում կառուցվող, հատկապես բարձրահարկ, շենքերի որակի նկատմամբ։ Իսկ որակի համար արված կոնկրետ առաջարկությունները որոշ դեպքերում մնում են անհետևանք։ Զպետք է անտեսել որակի հարցերը, հատկապես սեյսմիկ շրջաններում կատարվող շինարարությունների համար։ Ինչպես ցույց են տվել մեր ուսումնասիրությունները (օրինակ, 1968 թ. Զանգեզուրի երկրաշարժի ժամանակ) միևնույն գրունտային պայմաններում կառուցված 5 հարկանի որակյալ բնակելի տները ուժեղ երկրաշարժից համարյա չէին տուժել, իսկ ցածրորակները տուժել էին զգալի կերպով։ Այդ տեսակետից ավելի լուրջ պետք է վերաբերվել 9—16 հարկանի շենքերի որակի ապահովման հարցերին։

Շենքերի որակի բարձրացմանը, շինարարության հետագա ինդուստրացմանը, հավաքովի-երկաթբետոնե տարրերի քանակների և չափերի ունիֆիկացմանը, ինչպես նաև խնայողության ռեժիմի կիրառմանը և շենքերի հատակագծային լուծումների բարելավմանը զգալիորեն կնպաստի մեր ինստիտուտի կոնստրուկտորների մշակած «Ինդուստրիալ հավաքովի երկաթբետոնե տարրերի կատալոգը», որի կիրառումը Մոսկվայում տվեց դրական արդյունքներ։

Ինստիտուտի գիտաշխատողների կոլեկտիվը շինարարության և ճարտարապետության գործի հետագա բարելավման վերաբերյալ կուսակցության որոշումների հիման վրա մշակում է նոր միջոցառումներ և գործադրում բոլոր ջանքերը գիտահետազոտական աշխատանքներում տեղ գտած թերությունները վերացնելու, մշակումների որակը և արդյունավետությունը բարձրացնելու, արտադրության մեջ դրանց ներդրումն ապահովելու նպատակով։

---

# ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Է. Կ. ՆԵՐՍԻՍՅԱՆ**
ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական
գիտությունների ակադեմիայի ասպիրանտ

*ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ բազայի ստեղծումն իրականացվում է գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, որի նվաճումների արդյունավետ օգտագործումը ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմների լուծման գլխավոր նախապայմաններից է:*

*Դրանց թվին է պատկանում նաև հասարակության արտադրաուժերի կարևորագույն մասի՝ բնական ռեսուրսների օգտագործման բարելավումը: Բնական ռեսուրսների օգտագործումն անմիջականորեն ազդում է հասարակական արտադրության արդյունավետության մակարդակի, տնտեսական առաջընթացի արագացման կամ դանդաղեցման վրա:*

*Բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության խնդիրը արդիականության առավել հրատապ պրոբլեմներից է, որի ճիշտ լուծումով մեծապես պայմանավորված է ներկա և ապագա սերունդների բարեկեցությունը:*

*Արտադրամիջոցների մասնավոր սեփականության պայմաններում հասարակության և բնության ներդաշնակ փոխգործողության պրոբլեմն անլուծելի է: Ֆ. Էնգելսը նշել է, որ «...միայն այն հասարակարգը կարող է վերացնել օդի, ջրի և հողի ներկայիս թունավորումը, որն ունակ է միասնական պլանով հաստատել արտադրաուժերի ներդաշնակ զուգակցում»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 307—308):

*Սոցիալիստական հասարակարգում, որտեղ չկա արտադրամիջոցների մասնավոր սեփականություն և արտադրությունը վարվում է ժողովրդատնտեսական միասնական պլանով, առկա են օբյեկտիվ բոլոր հնարավորությունները տնտեսական զարգացման բարձր տեմպերը բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության հետ օրգանապես զուգակցելու համար: Վ. Ի. Լենինը նկատել է, որ «...նշանակություն ունեն հումքի ո՛չ միայն արդեն հայտնաբերված աղբյուրները... այլև հնարավոր աղբյուրները, քանի որ մեր օրերում տեխնիկան զարգանում է անհավատալի արագությամբ, և այն հողերը, որոնք այսօր պիտանի չեն, վաղը կարող են պիտանի դառնալ... Նույնը վերաբերում է հանքային հարստությունների հետախուզումներին, այս կամ այն հում նյութի և այլնի մշակման ու օգտագործման նոր եղանակներին...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 27, էջ 464—465):*

*Հասուն սոցիալիզմի պայմաններում բնական ռեսուրսների վերարտադրության, պահպանության ու օգտագործման պրոցեսների կառավարումն առավել հրատապ է դառնում: Սովետական Միությունն ունի աշխարհի խոշորագույն բնական ռեսուրսների պոտենցիալը և դրանք ժողովրդատնտեսական շրջանա-*



*ռության մեջ դնելու մասշտաբներով առաջ է անցել մյուս բոլոր երկրներից: Թեև ՍՍՀՄ-ն աշխարհում միակ պետությունն է, որն օգտակար հանածոների իր սեփական պահանջմունքները լրիվին բավարարում է հեռանկարային առումով, այնուամենայնիվ, մեզ մոտ էլ ընդերքի հարստությունների խնամքով օգտագործումը խիստ կենսական է դառնում:*

*Այն հանգամանքը, որ Սովետական Միությունը հողային, անտառային, ջրային վիթխարի ռեսուրսների և օգտակար հանածոների շատ տեսակների հետախուզված պաշարներով առաջնակարգ տեղ է գրավում աշխարհում, չի կարող հիմք հանդիսանալ դրանց վատնողական օգտագործման համար և ծնել մեր հարստությունների անսպառելիության պատրանքներ: Այդ կարող է հանգեցնել դրանց խնայողական օգտագործման թերագնահատման և ժողովրդատնտեսական խոշոր կորուստների: Բավական է նշել, որ այսօրվա դրությամբ հանքավայրերում մնացել են քարածխի մինչև 30—40 տոկոսը, գազի՝ 50, նավթի՝ 70, երկաթահանքի՝ 20 տոկոսը: Ամեն տարի ջահերում այրվում է 15—16* մլրդ *խորանարդ մետր ուղեկցող գազ: Ամբողջությամբ վերցրած, արդյունահանող արդյունաբերության մեջ, օգտակար հանածոների 6,5* մլրդ *տոննա միագումարային հանույթի դիմաց, ընդհանուր կորուստները հասնում են 2,5* մլրդ *տոննայի:*

*Երկրի սոցիալական և տնտեսական զարգացման լայն ծրագրի իրականացման համար անհրաժեշտ է արտադրության մեջ ներգրավել հումքային, ջերմաէներգետիկ և նյութական այլ վիթխարի ռեսուրսներ: Սակայն հումքի և վառելանյութի հանույթն ավելի ու ավելի թանկ է նստում, իսկ դրանց պաշարները անվերականգնելի են: Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Ըստ երևույթին նոր ձևով պետք է մոտենալ նաև ամբողջությամբ վերցրած արդյունահանման ճյուղերին: Արդեն այսօր դրանց ընկնում է կապիտալ ներդրումների առյուծի բաժինը, իսկ չէ որ հումքի և էներգատու նյութի պահանջարկը կաճի: Հետևաբար, ամբողջ ժողովրդական տնտեսության հաջողությունները մեծապես պայմանավորված կլինեն հանույթի արդյունաբերության արդյունավետության բարձրացումով: Դրա ուղին գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է, օգտակար հանածոների կոմպլեքսային, խոր վերամշակումը, երկրորդային ռեսուրսների ավելի լայն կիրառումը» (*ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 66):*

*Այժմ արդյունաբերական շրջանառության մեօ օգտակար հանածոների ներգրավումն աճում է արագ տեմպերով: Բնական ռեսուրսների համակարգում դրանց բաժինը հասնում է 70 տոկոսի: Ծանր արդյունաբերության արտադրանքի 90 և սպառման առարկաների 17 տոկոսը պատրաստվում են հանքանյութերից:*

*Հանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը նախ և առաջ պայմանավորված է շրջակա միջավայրի վրա մարդու ներգործության ինտենսիվության աճով, որը վիթխարի չափերի է հասնում: Ըստ վիճակագրական տվյալների, հանքանյութերի սպառման տեմպերն արդեն գերազանցում են աշխարհի բնակչության աճին: Վերջին 30 տարում աշխարհում արդյունաբերական արտադրությունն աճել է 6 անգամ, իսկ բնակչությունն այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է միայն 1,5 անգամ: ՍՍՀՄ-ում, 1955—1979 թթ. բնակչության 44 տոկոս աճի դեպքում, արդյունաբերական արտադրանքն ավելացել է 11,5 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունն աճել է 13 անգամ, նավթի հանույթը՝ 15, գազինը՝ 70, երկաթահանքինը՝ 3 անգամ և այլն: Հանքանյութերի արդյունահանման ծավալը երկրում կրկնապատկվում է 10—12 տարին մեկ:*

*Հանքային ռեսուրսների նկատմամբ պահանջարկի անընդհատ աճը, հանքահումքային բազայի որակի և լեռնաերկրաբանական պայմանների վատացումը հանգեցնում են օգտակար հանածոների արդյունահանման և վերամշակման ծախսերի ավելացմանը, կապիտալ ներդրումների աճին, որը, իր հերթին, թանկացնում է հանքանյութերից արտադրվող իրերի ինքնարժեքը:*

*Կարևոր նշանակություն ունի այն հանգամանքը, որ այլ ռեսուրսների հետ համեմատած, հանքային ռեսուրսներն անվերականգնելի են և հումքի այսօրվա չարդարացված կորուստներն ապագայում կհանգեցնեն ծախսերի առավել նշանակալի աճի՝ ի հաշիվ անբարենպաստ բնական պայմաններ ունեցող հանքավայրերի վաղաժամ գործարկման:*

Լեռնահանքային արդյունաբերության ճյուղերը բնութագրվում են բարձր կապիտալատարությամբ, ֆոնդատարությամբ, աշխատատարությամբ և համախառն արտադրանքի ցածր տեսակարար կշռով։ Լեռնային արդյունաբերությանը հատկացվում է բոլոր կապիտալ ներդրումների 40 տոկոսը, այստեղ զբաղված է արդյունաբերության աշխատանքային ռեսուրսների 18 տոկոսը։ Լեռնահանքային արդյունաբերության արտադրանքի ծավալը 1979 թ. կազմել է 31,4 մլրդ ռուբլի, արդյունաբերության համախառն արտադրանքի ընդամենը 5,3 և համախառն հասարակական արդյունքի 3,1 տոկոսը։ Լեռնահանքային արդյունաբերության ֆոնդատարության կայուն աճի հետևանքով վերոհիշյալ ցուցանիշների տարբերությունը հեռանկարում կմեծանա։ Ուստի հանքահումքային ռեսուրսների օգտագործման ինտենսիվացումը և ռացիոնալացումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվ է։ Մինչդեռ լեռնահանքային արդյունաբերության շատ ձեռնարկություններում օգտակար հանածոների արդյունահանման և վերամշակման պրոցեսում տեղի են ունենում զգալի կորուստներ և հանքանյութի աղքատացում։ Կորուստներն առանձնապես մեծ են ստորերկրյա արդյունահանման դեպքում։

Օգտակար հանածոների արդյունահանման պրոցեսում կորուստների զգալի մասը լեռնային աշխատանքների վարման տեխնոլոգիայի մի շարք թերությունների արդյունք են։ Դրանցից կարելի է նշել արդյունահանման ընդունված սիստեմի և դրա կոնստրուկտիվ տարրերի անհամապատասխանությունը լեռնաերկրաբանական պայմաններին, հանույթի անբավարար ինտենսիվությունը, բլոկներից հանքանյութի արդյունահանման ու թողարկման պլանավորված կարգի խախտումը, ցածրորակ հանքահատումն ու թողարկումը։

Մի շարք դեպքերում ընդերքում օգտակար հանածոների կորուստները պայմանավորվում են ինքնարժեքն իջեցնելու, գերպլանային շահույթն ավելացնելու և տնտեսական խթանման ֆոնդերը մեծացնելու միտումով։ Հանքահորերում, երբեմն, նախ և առաջ վերամշակում են առավել շատ օգտակար բաղադրամասեր պարունակող տեղամասերը, ապա մաքրման աշխատանքները փոխադրվում են ներքին հորիզոնականները, վերին հարկերում թողնելով օգտակար բաղադրամասերի առավել ցածր պարունակությամբ զգալի քանակությամբ պաշարներ։ Դա հանգեցնում է լեռնային աշխատանքների մակարդակի վաղաժամ իջեցման և օգտակար հանածոների կորուստների ավելացման։

Կորուստները պայմանավորված են նաև օգտակար հանածոների ոչ բավարար տնտեսական գնահատմամբ. կրած կորուստների համար ձեռնարկությունները նյութական վնաս չեն կրում, մինչդեռ ժողովրդական տնտեսության մասշտաբով այդ կորուստները զգալի են։ Այս հարցում անբավարար են մշակված և ներդրված տնտեսական խթանման սկզբունքները։

Համաշխարհային պրակտիկայում մետաղի մեծ կորուստների տեղիք է տրվում հանքահարստացման պրոցեսում, այդ թվում՝ պղնձի 10—17 տոկոսը, արճճի՝ 12—13, ցինկի՝ 15—20, մոլիբդենի՝ 10—16, կապարի՝ 25—35, վոլֆրամի՝ 15—20 տոկոսը։

Հանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացումը կարելի է իրականացնել փոխկապակցված մի շարք խնդիրների լուծմամբ։ Դրանցից են. հանքանյութի, ինչպես նաև հարակից օգտակար հանածոների և բաղադրամասերի օգտագործման կոմպլեքսայնության բարձրացումը, հանքանյութի կոնդիցիայի ու վերամշակման լեռնատեխնիկական պայմանների և օգտակար հանածոների արդյունահանման տնտեսապես նպատակահարմար լուծումների գիտական հիմունքների մշակումը, որի նպատակն է հումքի և օգտակար բաղադրամասերի կորզման օպտիմալ չափերի սահմանումը։

Ընդերքի փոխհատուցումը մեծացնելու ընդհանուր պրոբլեմի լուծման հարցում էական նշանակություն ունի հանքահումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործումը։ Որպես հասարակական արտադրության պրոցեսում իրացվող բնական հարստությունների հիմնական մաս, դրանց ռացիոնալ կիրառմամբ է մեծապես պայմանավորված ժողովրդատնտեսական տարբեր խնդիրների լուծման մակարդակը։ Բնական հարստությունների այսպիսի օգտագործումը բացատրվում է բազմազան ռեսուրսների նկատմամբ ժողովրդատնտե-



սական պահանջմունքների հարաճուն մեծացմամբ և հումքի արդյունահանման ու վերամշակման պայմանների բարդացմամբ, որի հետևանքով ավելանում են հասարակական աշխատանքի ծախսումները։

Հումքի կոմպլեքսային օգտագործումը բարդ պրոբլեմ է, որի լուծումն անմիջականորեն առնչվում է տեխնիկական հնարավորությունների ստեղծման, հումքի առանձին տեսակների նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքների, դրանց վերամշակումն ընդլայնելու տնտեսական նպատակահարմարության հետ։ ՍՄԿԿ XXVI համագումարը հանքային հարստությունների կոմպլեքսային վերամշակումը համարեց բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և վերարտադրության խնդրի լուծման հիմնական միջոցներից մեկը։

Տասնմեկերորդ հնգամյակի Հիմնական ուղղություններում սահմանված են բնական, նյութական և աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման խնդիրները, որոնց իրագործումը պահանջում է հանքավայրերից օգտակար հանածոների առավել լրիվ ու կոմպլեքսային կորզման անհրաժեշտ տեխնիկական միջոցների և տեխնոլոգիայի ստեղծում ու լայն կիրառում, աղքատ և բարդ հանքավայրերի մշակում, հումքի կոմպլեքսային վերամշակում, ռեսուրսախնայիչ տեխնիկայի, սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիայի լայն կիրառում, շրջանառության մեջ հումքի ու նյութերի տեղական տեսակների ներդրում, երկրորդային ռեսուրսների օգտագործում։

Հումքի կոմպլեքսային օգտագործման խնդիրն առավել կարևոր նշանակություն ունի գունավոր մետալուրգիայում, քանի որ այն աչքի է ընկնում մեծ նյութատարությամբ և այստեղ հումքի վրա կատարվող ծախսումներին բաժին է ընկնում ապրանքային արտադրանքի ամբողջ ինքնարժեքի 60 տոկոսը։ Ուստի հումքի ռացիոնալ ու կոմպլեքսային օգտագործումը և կատարվող ծախսումների առավելագույն կրճատումը ինքնարժեքի իջեցման հիմնական ռեզերվն է։

Հանքանյութի կոմպլեքսային օգտագործման բնագավառում որոշակի հաջողություններ են ձեռք բերված, որի մասին վկայում է հումքից կորզվող բաղադրամասերի տեսականու մշտական աճը։ Գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում այժմ կորզվում է քիմիական 74 տարր՝ 1950 թ. 43-ի փոխարեն։ Այդ պրոցեսը, անկասկած, հարաճուն է։ Մեր երկրում արտադրվող ծծմբական թթվի մեկ երրորդը ստացվում է գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում, հումքի կոմպլեքսային վերամշակումից, ընդ որում 30 տոկոս պակաս ծծմբով, քան ծծմբի բնական հումքից ստացվածը։ Հումքի բարդ կազմով բնորոշվող ճյուղում գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ իրականացվող հանքանյութի կոմպլեքսային օգտագործումը կնպաստի թողարկվող արտադրանքի ծավալի ավելացմանը։ Գունավոր մետալուրգիայում հումքի կոմպլեքսային օգտագործման շնորհիվ ստացվում է համախառն արտադրանքի 20 տոկոսը, այն առանձին խոշոր ձեռնարկություններում ապահովում է շահույթի 50 տոկոսը։

Հումքի կոմպլեքսային օգտագործման շնորհիվ մոտակա հեռանկարում կբավարարվի հանքային ռեսուրսների նկատմամբ արտադրության պահանջմունքների 30 տոկոսը։ Միության առաջավոր ձեռնարկություններում կորզվում է հանքանյութում պարունակվող արժեքավոր տարրերի մեծ մասը։ Ուստ-Կամենոգորսկի և Բալխաշի կոմբինատներում հումքի կոմպլեքսային օգտագործման առաջավոր փորձը դեռևս 1972 թ. քննարկվեց ՍՄԿԿ Կենտկոմում և հանձնարարվեց այն լայնորեն տարածել գունավոր մետալուրգիայում։

Հումքի կոմպլեքսային օգտագործման արդյունավետությունը որոշելու համար հարկ է նկատի ունենալ ո՛չ միայն տվյալ ձեռնարկության կամ ճյուղի տնտեսական ցուցանիշները, այլև ողջ ժողովրդական տնտեսության շահերը, քանի որ հումքի կոմպլեքսային օգտագործման բազմաճյուղ բնույթը պահանջում է տարբեր ճյուղերում միմյանց փոխարինող առարկաների արտադրության առավելագույն արդյունավետությունն ապահովելու տարբերակների ընտրության պրոցեսում ժողովրդատնտեսական համադրությունների կիրառումը։ Ուստի հումքի կոմպլեքսային վերամշակման տարբերակների նախագծերում մեծ

նշանակություն ունեն տեխնիկատնտեսական հիմնավորվածությունն ու ժողովրդատնտեսական գործոնների հաշվառման աստիճանը։

Ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման պահանջն ուժեղանում է վերամշակվող հումքի բնույթի փոփոխման, օգտակար բաղադրամասերի պարունակությամբ առավել աղքատ հանքավայրերի գործարկման, հումքի առավել բարդ նյութական կազմի բնութագրի կապակցությամբ։

Օքսիդացված, շլամային, մանրացան հանքանյութերի վերամշակման ավելացումը արտաբալանսային, ինչպես նաև որոշակի քանակությամբ արժեքավոր բաղադրամասեր պարունակող մակաբացված հանքանյութերի պաշարների կուտակումը պահանջում են նոր տեխնոլոգիայի, առավել բարդ և միաժամանակ բարձրարտադրողական օպերացիաների ու ագրեգատների ստեղծում։

Հանքային նյութերի կոմպլեքսային օգտագործման խնդրի ճիշտ լուծումը պայմանավորված է յուրաքանչյուր բաղադրամասի հաշվով հանքանյութի վերամշակման բոլոր փուլերում կատարվող ծախսերի (շահագործողական և կապիտալ) ստույգ հաշվառմամբ։ Իմանալով դա, կարելի է նախանշել ապրանքային արտադրության համար այս կամ այն բաղադրամասի էկոլոգիական տնտեսական թույլատրելի սահմանները։ Ապրանքային արտադրության համար լրացուցիչ բաղադրամասի կորզման շրջանակների նպատակահարմարության հարցի պատասխանը կտա լրացուցիչ ծախսերի (այդ թվում նաև էկոլոգիական նշանակության) համադրումը կորզվող արժեքի աճի հետ։

Հանքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման նշանակությունն ակնհայտ է. հումքի բազայի ընդլայնում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում, տեսակարար կապիտալ ներդրումների նվազեցում, շրջակա միջավայրի պահպանում։ Հումքի կոմպլեքսային օգտագործմամբ առավել նպատակահարմար են համադրվում բնության օգտագործման ռացիոնալացումն ու շրջակա միջավայրի պահպանությունը։ Տվյալ խնդրի լուծման մեջ անհրաժեշտ է զանազանել երկու հանգամանք. հիմնական օգտակար հանածոների հետ զուգահեռ տեղադրված հանքանյութի, ինչպես նաև բազմաբաղադրամաս ու բազմամետաղ ապարների կոմպլեքսային օգտագործումը։

Հանքանյութի ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմներն ընդհանուր են նաև Հայկական ՍՍՀ-ի համար։ Մեր հանրապետության ընդերքը հարուստ է մետաղական, ինչպես նաև ոչ հանքային օգտակար հանածոներով, բարձրորակ հանքային ջրերով։

Օգտակար հանածոների խոշոր հանքավայրերի հիման վրա հանրապետությունում զարգացել են լեռնահանքային արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, մեծ քիմիան, շինանյութերի արդյունաբերությունը, ստեղծվել բալնեոլոգիական ձեռնարկությունների՝ խոշոր առողջարանների և հանքային ջրերի գործարանների լայն ցանց։ Հայաստանը, չնայած իր փոքրածավալ տարածքին, ունի բազմազան մետաղների զգալի պաշարներ։

Գունավոր մետալուրգիայի լեռնահանքային արդյունաբերության հետագա զարգացումը զգալի չափով պայմանավորված է հանքանյութի բազայի վիճակով և նախապատրաստվածությամբ։ Այժմ առկա հանքանյութի բազայի վրա հանրապետությունում գործում են Զանգեզուրի և Ագարակի պղնձամոլիբդենային, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատները և այլ ձեռնարկություններ։

Հաշվի առնելով հանքանյութի ռեսուրսների անվերականգնելիությունը և հանքավայրի հետախուզումից մինչև արդյունահանման սկիզբն ընկած ցիկլի երկարատևությունը (10—15 և ավելի տարիներ), պարզ է դառնում, որ հանքանյութի նկատմամբ աճող պահանջմունքները պետք է բավարարվեն ոչ միայն նոր հանքավայրերի հետախուզման և յուրացման, այլև, առաջին հերթին, արդեն հետախուզված և շահագործվող հանքավայրերի առավել ռացիոնալ օգտագործման շնորհիվ։

Արդյունահանվող հումքի առավել լրիվ վերամշակման և պատրաստի արտադրանքի ավելացման պրոբլեմն ունի տնտեսական և սոցիալական մեծ նշանակություն։ Տասնմեկերորդ հնգամյակում հանրապետության գունավոր մետալուրգիայի զարգացումը հիմնականում իրականացվում է հումքային ռե-



սուրսների արդյունավետ օգտագործման և գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման միջոցով։ Այդ ծրագրի հաջող իրականացման համար անհրաժեշտ է նվազեցնել հանքանյութի կորուստները և աղքատացումը, ակտիվացնել հումքի կոմպլեքսային օգտագործման մեթոդների կիրառումը։ Մինչդեռ այս կարևոր գործում բոլոր հարցերը չէ, որ լուծված են։ Օգտակար հանածոների, առանձնապես ստորգետնյա հանույթի ընթացքում, զգալի կորուստների և հումքի աղքատացման տեղիք է տրվում, ուղեկցող արժեքավոր բաղադրամասերի գերակշիռ մասը կորչում է հարստացուցիչ ֆաբրիկաների հանքամնացորդներում, որոնք լցվում են գետերը և աղտոտում հանրապետությունում ջրային ավազանները։

Հանրապետությունում արդյունահանվող բոլոր գունավոր մետաղները իրենց կազմությամբ ունեն հարուստ բաղադրամասեր և բազմապիսի արժեքավոր տարրեր են պարունակում։ Այսպես, սուլֆիդային պղնձյա և պղնձամոլիբդենային հանքանյութերը հիմնական բաղադրամասերին զուգընթաց (պղինձ և մոլիբդեն) պարունակում են նաև ցինկ, կապար, ծծումբ և այլ արժեքավոր տարրեր, ինչպես նաև սելեն, տելուր, ռենիում և այլ հազվագյուտ և տարացիր տարրեր։ Ընդ որում վերջիններս հարակից կորզվող տարրեր են, որոնց կորզման տոկոսը հազիվ հասնում է 20—50-ի։ Մոլիբդենային խտանյութից՝ ռենիումից և պղնձից, սելենի, տելուրի և բիսմութի առավել լրիվ կորզման շնորհիվ մեր լեռնահանքային արդյունաբերությունը կտա միլիոնավոր ռուբլիների լրացուցիչ արտադրանք։ Միաժամանակ, որը պակաս կարևոր չէ, առավել հաջողությամբ կլուծվեն շրջակա միջավայրի պահպանման պրոբլեմները։

Ինչպես հայտնի է, հումքի օգտագործման կոմպլեքսայնության աստիճանի ընդհանրացնող ցուցանիշը կոմպլեքսայնության գործակիցն է, որով սահմանվում է հումքից արժեքավոր բաղադրամասերի կորզման բաժինը։ Հումքի բարդ կազմության և բաղադրամասերի տարբեր արժեքների դեպքում արտադրական շրջանառության մեջ մտցված ամբողջ հումքի և կորզվող մասի համադրելիությունն իրականացվում է գործող մեծածախ գների հիման վրա։ Հանրապետության գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում հումքի օգտագործման կոմպլեքսայնության գործակիցը բավականին ցածր է. 0,6-ից՝ Ախթալայի ֆաբրիկայում, մինչև 0,78՝ Քաջարանի ֆաբրիկայում։ Համեմատության համար նշենք, որ Ուստ-Կամենոգորսկի կոմբինատում հանքանյութում պարունակվող 20 օգտակար բաղադրամասերից կորզվում է 17-ը և թողարկվում 28 արտադրատեսակ։ Հումքի կոմպլեքսային օգտագործման միջին տոկոսը կազմում է 95, որը խոշոր նվաճում է։

Ժողովրդական տնտեսության շահերը պահանջում են ընդերքի հարստությունների լիարժեք օգտագործում։ Այս հարցում կարևոր նշանակություն ունի հանքանյութի արդյունաբերական կոնդիցիայի ճիշտ սահմանումը։ Գունավոր մետաղների հանքանյութի կոնդիցիայի տեխնիկատնտեսական հիմնավորումը կնպաստի հանքավայրերի շահագործումից առաջացող կորուստների նվազեցմանը, արտաբալանսայինի հաշվին հումքի արդյունաբերական պաշարների ավելացմանը, արդյունաբերապես արժեքավոր հանքանյութերի արտանետվածքի կրճատմանը։

Հանքանյութի որակի և մշակման լեռնատեխնիկական պայմանների նկատմամբ կոնդիցիայի պահանջները բալանսավորված պաշարների հաշվարկման միջոց են։ Կոնդիցիայի նշանակությունը շատ մեծ է։ Օբյեկտիվորեն հիմնավորված կոնդիցիան հուսալի պատնեշ է ինչպես բնական ռեսուրսների, այնպես էլ կենդանի և առարկայացված աշխատանքի նկատմամբ վատնողական վերաբերմունքի դեմ։

Հանքանյութի ռացիոնալ օգտագործման ոլորտում մեծ նշանակություն ունեն տնտեսապես նպատակահարմար տեխնիկական լուծումների ընտրության հետ առնչվող հարցերը։ Հանքանյութի մակաբացման մեթոդներով և վերամշակման տեխնոլոգիայի սխեմայով են մեծապես պայմանավորված կապիտալ և շահագործողական ծախսերը, շահույթը և շահութաբերությունը, ինչպես նաև արդյունահանման և վերամշակման պրոցեսում օգտակար հանածոների և բաղադրամասերի կորզման չափերը։

Ընդերքի հարստությունների օգտագործման լիարժեքությունը վկայում է լեռնաարդյունահանման պրոցեսների ինտենսիվացման և ռացիոնալացման մասին։ Բնաօգտագործման ռացիոնալացման և շրջակա միջավայրի պահպանության միասնության տեսակետից ընդերքի օգտագործման լիարժեքության հասկացությունը ներառում է նաև բնապահպանման խնդիր, որովհետև շահագործվող տվյալ հանքավայրում լրացուցիչ ծավալով օգտակար հանածոների արդյունահանումն ապահովում է նույնատիպ ռեսուրսի պահպանումը ուրիշ հանքավայրերում, կանխում է ժողովրդական տնտեսության հարակից ճյուղերին հասցվող վնասը (նոր հողատարածությունների օգտագործում, շրջակա միջավայրի աղտոտում և այլն)։

Հետևաբար, հանքանյութի առավել լրիվ օգտագործումն ապահովում է երկակի արդյունք, սոցիալ-տնտեսական և արտադրական, այսինքն՝ վերանում է բնապաշտպանության նպատակներով լրացուցիչ ծախսերի անհրաժեշտությունը, նվազում են օգտակար հանածոների պաշարների միավոր աճի համար կատարվող կապիտալ և շահագործողական տեսակարար ծախսերը։

Բնության և հասարակության նպատակահարմար փոխհարաբերության կլասիկ բնորոշումը տվել է Ֆ. Էնգելսը. «Սակայն շատ էլ չհրապուրվենք բնության նկատմամբ տարած մեր հաղթանակներով։ Յուրաքանչյուր այդպիսի հաղթանակի համար նա մեզանից վրեժխնդիր է լինում։ Այդ հաղթանակներից յուրաքանչյուրը, ճիշտ է, առաջին հերթին ունենում է այն հետևանքները, որ մենք նկատի էինք առել, բայց երկրորդ և երրորդ հերթին ունենում է միանգամայն այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ոչնչացնում են առաջինների նշանակությունը» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, Հայաստան հրատ., 1969, էջ 178)։

Մեր երկրի հումքային բազայի հարստությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքի կարևորագույն պայմանն է, ուստի այդ հարստության պահպանման, համալրման և ընդլայնման նոր ուղիների ու մեթոդների մշակումն ունի հսկայական նշանակություն։ Այդ հարցերի լուծման բանալին տալիս են ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, «էկոնոմիկան դարձնենք խնայողական» կուսակցության հաստատուն կոչը։

---

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Հ. Ջ. ՔՈՉԻՆՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ խնդիրները իրականացվում են կուսակցության գաղափարադաստիարակչական աշխատանքի միջոցով։ «Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրները հաջողությամբ լուծելու համար աշխատավորների մոբիլիզացում, հասարակության բոլոր անդամների մեջ գիտական աշխարհայացքի, կոմունիստական բարոյականության ձևավորում, բազմակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակություն՝ ահա կուսակցության գաղափարական աշխատանքի նպատակակետը» (Լ. Ի. Բրեժնև, Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին։ Ե., 1974 թ., էջ 56—57)։

Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի կուսակցական կազմակերպությունը իր կարևորագույն խնդիրը համարում է տնտեսական խնդիրների լուծման գաղափարական ապահովումը՝ ելակետ ունենալով Վ. Ի. Լենինի ցուցումն այն մասին, որ աշխատավորներն ամենալայն ձևով պետք է տեղյակ լինեն երկրի էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման հարցերին։

Լեռնամետալուրգիական կոմբինատը, որ վերջերս նշեց իր հիմնադրման 200-ամյակը, հանրապետության խոշորագույն արդյունաբերական ձեռնարկություններից է։ Լինելով Հայաստանի բանվոր դասակարգի ձևավորման օջախներից մեկը, այն հարուստ է հեղափոխական ավանդույթներով, որոնք նա խնամքով պահպանում ու բազմապատկում է նոր կյանքի կառուցման պայքարում։ Այսօր կոմբինատը կարևոր նշանակություն ունի Միության գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների շարքում։ Նրա կոլեկտիվը հայրենանվեր աշխատանք է կատարում կուսակցության և կառավարության առաջադրած խնդիրների կենսագործման նպատակով։ Պատահական չէ, որ տասներորդ հնգամյակում և տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում ձեռք բերած արտադրատնտեսական բարձր ցուցանիշների համար կոլեկտիվը չորս անգամ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, իսկ ութ անգամ՝ ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1982 թ. հունվարի 8-ի հրամանագրով հայրենական գունավոր մետալուրգիայի զարգացման գործում ներդրած մեծ ավանդի և հանքային պարարտանյութերի արտադրության մեջ օգտագործվող գունավոր մետաղների և հումքի թողարկման առաջադրանքների հաջող կատարման համար կոմբինատի կոլեկտիվը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Կոմբինատի աշխատավորության ձեռք բերած արդյունքները նշանակալի են։ Կոլեկտիվը 1980 թ. հոկտեմբերի 22-ին կատարեց տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքները և ստանձնած սոցպարտավորությունները։ Հնգամյակում արտադրանքի թողարկումն աճել է 20 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 17 տոկոսով, տնտեսվել է 24 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 5,5 հազար տոննա պայմանական վառելանյութ, տրվել է գերպլանային մեծաքանակ արտադրանք։

Հանձնելով կառավարական բարձր պարգևը, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Կոմբինատի գործունեության բարելավման կարևոր, որակապես նոր փուլ եղավ տասներորդ հնգամյակը։ Այդ տարիներին շատ բան արվեց արտադրության տեխնոլոգիայի և կազմակերպման կատարելագործման, հումքի կոմպլեքսային օգտագործման, աշխատանքի պայմանների բարելավման համար։ Բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը. արտադրանքի ընդհանուր ծավալի կեսից ավելին թողարկվում է պետական որականիշով»։

Տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում ևս ժամկետից շուտ կատարվեցին պլանային առաջադրանքները, աշխատանքի արտադրողականությունը կազմել է 102 տոկոս, տնտեսվել է 3,5 մլն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, պետական որականիշով թողարկվում է արտադրանքի ընդհանուր ծավալի 56 տոկոսը։

Ձեռք բերված արտադրատնտեսական բարձր ցուցանիշները արդյունք են այն բանի, որ կուսակցական և հասարակական կազմակերպությունները, ադմինիստրացիան անհրաժեշտ ուշադրություն են դարձնում կոլեկտիվի շրջանում սոցիալիստական մրցության կազմակերպմանն ու ծավալմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում նորարարական և գյուտարարական շարժման զարգացմանը, քաղաքական-մասսայական աշխատանքի նպատակասլաց կազմակերպմանը։

Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների հետ միասին կոմբինատում սոցմրցության ծավալմանը ակտիվորեն աջակցում է գիտամեթոդական խորհուրդը, որի կազմում ընդգրկված են ինժեներատեխնիկական աշխատողներ և առաջավոր բանվորներ, կուսակցական և հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ։ Այն մշակել է սոցմրցության ծավալման և նորարարական շարժման մասսայականացման միջոցառումների գործուն ծրագիր, բոլոր արտադրամասերին, բրիգադներին և օղակներին տվել է համապատասխան հանձնարարականներ, հաճախակի լսում է կատարված աշխատանքի մասին նրանց ինֆորմացիան։ Կոմբինատում սոցիալիստական մրցության բազմազան ձևերի և մեթոդների կիրառումը դիտվում է որպես նրա արդյունավետության բարձրացման կարևոր պայման։ Մեծ դեր է խաղում այն հանգամանքը, որ կուսակցական կոմիտեն, սկզբնական կազմակերպությունները յուրաքանչյուր շաբաթ ամփոփում են մրցության արդյունքները, խրախուսում առաջավորներին։

Կուսակցական կոմիտեին կից ստեղծված է նաև գաղափարախոսական աշխատանքի հանձնաժողով, որն ընդհանրացնում է կատարված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, մասսայականացնում այդ ասպարեզում եղած առաջավոր փորձը։ Կոմիտեն և հիշյալ հանձնաժողովը աշխատավորների արտադրական և հասարակական ակտիվության բարձրացմանը, նրանց շրջանում սոցմրցության ծավալմանն են ուղղել քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցների աշխատանքը, քաղինֆորմացիան և դասախոսական պրոպագանդան։

Կուսակցական կազմակերպությունը առանձնահատուկ ուշադրություն է դարձնում պրոպագանդային և ագիտացիայի հարձակողական բնույթ հաղորդելու, նրա ներգործունությունն ուժեղացնելու, կյանքի հետ կապը ամրապնդելու հարցերին։ Կոմբինատում գործում են քաղուսուցման, տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի 90 դպրոցներ ու խմբակներ, որոնցում ընդգրկված է 1.759 ունկնդիր։ Աշխատավորների մի զգալի մասն էլ զբաղվում է մարքս-լենինյան տեսության ինքնուրույն ուսումնասիրությամբ։ Պրոպագանդիստների 75 տոկոսը ՍՄԿԿ անդամներ և թեկնածուներ են, բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունի 77 տոկոսը։

Կոլեկտիվում լավագույն պրոպագանդիստի համբավ է վայելում պղնձի ռաֆինացման արտադրամասի պետ Աշոտ Մկրտումյանը։ Երկար տարիների պրոպագանդիստական աշխատանքում նա միշտ առաջնորդվել է ունկնդիրների ստեղծագործական նախաձեռնությունների զարգացման նշանաբանով, ամեն



կերպ նպաստել մրցության ծավալմանը, կոլեկտիվի ուժերը նպատակամղել կոմբինատում արտադրամասի առաջատար տեղի ապահովմանը։ Առաջնորդվելով լենինյան ցուցումով այն մասին, որ աշխատավորների դաստիարակության հարցերը պետք է լուծել «...թե՛ որպես տեսաբաններ, թե՛ որպես պրոպագանդիստներ, թե՛ որպես ագիտատորներ, թե՛ որպես կազմակերպիչներ», արտադրության հմուտ ղեկավարն այսօր էլ ջանք ու եռանդ չի խնայում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման համար աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու ասպարեզում։ Աշոտ Մկրտումյանը մշտապես օգնում է ունկնդիրներին՝ կազմելու հանդիպական պլանները և սոցմրցության անհատական պարտավորությունները, աջակցում նրանց կատարմանը։ Ճանաչված պրոպագանդիստի փորձը իսկական դպրոց է արտադրամասի մյուս պրոպագանդիստների և քաղինֆորմատորների համար, որոնք զգալի աշխատանք են տանում ունկնդիրների արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման նպատակով։

Կոմբինատում քաղինֆորմատորի բարի համբավ է վայելում նաև պղնձի ռաֆինացման արտադրամասի վարպետ Հակոբ Միքայելյանը, որի փորձին 1981 թ. անդրադարձավ ՀԿԿ Թումանյանի շրջկոմի բյուրոն և որոշեց մասսայականացնել այն։ Քառորդ դար շարունակ լինելով ագիտատոր, ապա քաղինֆորմատոր, նա արտադրամասի մարդկանց պարզաբանում է կուսակցության որոշումներն ու առաջադրանքները, նրանց ուժերը նպատակամղում ձեռնարկության առջև դրված խնդիրների լուծմանը։ Այս օրերին, երբ կոմբինատի ողջ կոլեկտիվը պայքարում է ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը բարձր ցուցանիշներով դիմավորելու համար, Հակոբյանն իր պրոպագանդիստական գործունեությամբ մեծապես նպաստում է կոլեկտիվի ստեղծագործական ակտիվության զարգացմանը, ծառացած խնդիրների լուծման համար նրա ուժերի մոբիլիզացմանը։ Հոբելյանի կապակցությամբ արտադրամասի մարդիկ պարտավորվել են 1982 թ. պլանային առաջադրանքները կատարել դեկտեմբերի 25-ին, լրացուցիչ արտադրել 1.000 տոննա պղնձարջասպ, 25 տոննա ծծմբաթթու։

Քաղուսուցման և տնտեսագիտական կրթության ասպարեզում ձեռք բերված արդյունքների գնահատման չափանիշը նրա արդյունավետությունն է։ Պարապմունքների ժամանակ ունկնդիրների ակտիվության բարձրացումը, նրանց շրջանում ծավալված սոցմրցությունը լավ արդյունքներ են տվել նաև ծծմբաթթվի արտադրամասում. արտադրամասը 1981 թ. պլանային առաջադրանքները կատարեց ժամկետից 22 օր շուտ, տնտեսվեց 890 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, գազերից ծծմբաթթվի կորզումը հասցվեց 68 տոկոսի։

Կոմբինատում քաղաքական և կազմակերպչական շնորհակալ աշխատանք են կատարում պրոպագանդիստներ՝ ծծմբաթթվի արտադրամասի պետ Վ. Վերանյանը, մետալուրգիական արտադրամասի ավագ վարպետ Վ. Սահակյանը, որի աշխատանքի փորձին անդրադարձել է ՀԿԿ Թումանյանի շրջկոմի բյուրոն, կենտրոնական լաբորատորիայի վարիչ Ի. Աբգարյանը, մետալուրգիական արտադրամասի բաժանմունքի պետ Ռ. Աֆիցերյանը, տեխնիկական գրադարանի վարիչ Ս. Հակոբյանը։ Կուսակցական կոմիտեն մշտապես մասսայականացնում է առաջավոր պրոպագանդիստների, քաղինֆորմատորների և դասախոսների փորձը, խրախուսում նրանց հայրենանվեր աշխատանքը։

Կոմբինատում բանվորական նախաձեռնությունների զարգացումը դիտվում է որպես սոցիալիստական մրցության կարևոր ձև։ Աշխատավորական կոլեկտիվում լայնորեն տարածվել են «Տասնմեկերորդ հնգամյակի յուրաքանչյուր տարին՝ 103 տոկոսով», «Որակին՝ բանվորական երաշխիք», «էկոնոմիկան դարձնել խնայողական» նախաձեռնությունները։ Ձեռնարկության 24 հերթափոխային բրիգադներ, աշխատելով այդ նշանաբաններով, 1981 թ. դեկտեմբերի 15-ին կատարեցին հնգամյակի առաջին տարվա պլանային առաջադրանքները։ Լեոնիդ Իվանովի, Յուսուբ Ռուշանովի, Էդիկ Կարապետյանի ղեկավարած հանքափորների, Տելեմաք Ստեփանյանի, Գառնիկ Միսկարյանի, Վլադիմիր Եվոյա-

նի ղեկավարած մետալուրգների բրիգադներն աշխատում են գրաֆիկից զգալիորեն առաջ անցնելով։

Կոմբինատի բազմաթիվ բանվորներ կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են։ Սոցիալիստական աշխատանքի հերոս, ձուլող Արշակ Ղազարյանի, ՍՄԿԿ XXIV և XXVI համագումարների պատգամավոր, ավագ ձուլող Ազատ Արթիկյանի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ձուլող Սեյրան Քոչինյանի, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, հրակայուն շարվածքի որմնադիր Փաշիկ Ջավարյանի օրինակին են հետևում հանքափորներ Ապրո Պապյանը, Ժորա Ավլաստիմովը, Ահմեդ Կարաևը, քիմիագործներ Տիմոֆեյ Զադորկինը, Էմմա Հոսյանը, Ռաֆիկ Սիմոնյանը, Ֆրունզե Մոսինյանը, մետալուրգներ Ջավեն Խլոպուզյանը, Վազգեն Եպիսկոպոսյանը, պղնձագործներ Սերյոժա Մխիթարյանը, Տիգրան Սարգսյանը, էլեկտրամոնտյոր Սուրեն Կիրակոսյանը, հյուսն Միշա Ասլիկյանը։

Մետալուրգների և քիմիագործների աշխատանքային ավանդույթները այսօր հաջողությամբ են շարունակում երիտասարդ սերնդի մարդիկ։ Կուսակցական կազմակերպությունը բանվորական գերդաստանների մեծարման, նրանց փորձի տարածման միջոցով արտադրության երիտասարդ մարդկանց ուժերը նպատակաուղղել է սոցիալիստական մրցության հետագա զարգացմանը։ Բնութագրելով բանվորական գերդաստանների կատարած աշխատանքը, Կ. Ս. Դեմիրճյանը կոմբինատի հոբելյանական հանդեսի ժամանակ ասաց. «Նրանց հրաշալի հատկանիշներից են աշխատանքային անձնվիրությունը, հպարտությունը սեփական մասնագիտությամբ, ձգտումը պահպանել այնպիսի մի հրաշալի ավանդույթ, որպիսին է ալավերդցիների ընտանեկան կապվածությունը իրենց հարազատ կոմբինատին»։

Կոմբինատում և Շամլուղի հանքերում աշխատող բանվորական գերդաստանները աշխատանքային փառավոր ավանդույթներ են ստեղծել, որոնք այսօր մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության անգնահատելի միջոց են։ Էլեկտրաձուլման բաժանմունքի հերթափոխության վարպետ Տելեմաք Ստեփանյանը ասում է. «Մենք՝ ձուլողներս, չենք սիրում խոստումներ շռայլել, բայց խոսքի տեր մարդիկ ենք. որ ասացինք, պիտի կատարենք։ Ստեղծել որքան կարելի է շատ և լավ՝ այս է մեր հավատամքը։ Ավագներիս պարտքն է՝ մեր կենսափորձն ու վարպետությունը հաղորդել նորեկներին»։ Եվ բազում տարիներ է ահա, որ այդ փորձը, հաղորդվելով նորեկներին, շարունակ զարգանում և հարստանում է։

Կոլեկտիվի աշխատանքի խրախուսման և սոցիալիստական մրցության ծավալման անգնահատելի միջոց է ինտերնացիոնալ բարեկամության պրոպագանդան և դրան նպատակաուղղված միջոցառումների կազմակերպումը։ Կոմբինատում և Շամլուղի հանքերում աշխատում են 17 ազգերի ներկայացուցիչներ, որոնց բարեկամությունը խորանում և ամրապնդվում է հայրենանվեր աշխատանքում։

1951 թվականից կոմբինատի կոլեկտիվը սոցմրցության մեջ է Վրաստանի Զեստափոնիի մետալուրգիական գործարանի կոլեկտիվի հետ։ Այսօր այդ մրցությունն ավելի է խորացել։ Ձեռնարկությունը մրցության մեջ է նաև Վրացական ՍՍՀ Մառնեուլիի հանքահարստացուցիչ ֆաբրիկայի, ինչպես և Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվների հետ։ 1981 թ. մայիսին կոմբինատի պատվիրակությունը այցելեց եղբայրական հանրապետության մրցակից ձեռնարկությունները, ծանոթացավ նրանց ձեռքբերումներին։ Նման միջոցառումներն ավելի են ամրապնդում ինտերնացիոնալ կապերը, նպաստում ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, արտադրատնտեսական խնդիրների լուծմանը, ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Կուսակցական կազմակերպությունը, սոցմրցության ծավալմանը զուգընթաց, մշտական ուշադրություն է նվիրում գյուտարարական և նորարարական շարժման զարգացմանը։ Այդ նպատակով հաճախակի կազմակերպվում են արտադրության առաջավորների, վարպետ-դաստիարակների, նորարարների հավաքներ։ Գործում են առաջավոր փորձի դպրոցը և գյուտարարների ու նորարարների խորհուրդը, որտեղ ընդգրկվել են ինժեներատեխնիկական աշխատողներ, բրիգադավարներ, վարպետներ և առաջավոր բանվորներ։ Դրանց աշխատանքը սերտորեն զուգակցվում է գիտահետազոտական ինստիտուտների աշխատանքի հետ։ 1981 թվականին կոմբինատի գյուտարարների և նորարարների ներդրած 147 առաջարկություններից ստացվել է 380 հազար ռուբլու տնտեսական օգուտ։ Խնայվել է 436 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, լրացուցիչ արտադրվել է 4 հազար տոննա ծծմբաթթու, 561 տոննա պղնձարջասպ։ Հետաքրքիր առաջարկությունների հեղինակներ են հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորներ Ա. Բաբայանը, Ն. Իգնատենկոն, Վ. Վերանյանը, Դ. Աբելյանը, նորարարներ Ռ. Օսյանը, Ս. Սարգսյանը, Ռ. Աֆիցերյանը, Դ. Սահակյանը, Ս. Ռամազյանը։ Միայն 1981 թ. մետալուրգիական արտադրամասի պետ Ի. Լազարևի ներդրած 12 առաջարկություններից ստացվել է 136 հազար 720 ռուբլու, հումքի կլիման բաժանմունքի պետ Ռ. Աֆիցերյանի ներդրած 6 առաջարկություններից՝ 125 հազար 200 ռուբլու, ծծմբաթթվի արտադրամասի պետ Վ. Վերանյանի ներդրած 11 առաջարկություններից՝ 25 հազար 918 ռուբլու տընտեսական օգուտ։ Նրանց օրինակին են հետևում բանվոր ռացիոնալիզատորներ Վ. Բաբայանը, Դ. Սիմոնյանը և ուրիշներ։ Լայն տարածում են ստացել «Տասնմեկերորդ հնգամյակի երկրորդ տարին նշանավորենք մասսայական տեխնիկական ստեղծագործությամբ», «Նորարարները՝ հնգամյակին» շարժումները։ Արժեքավոր առաջարկություններ են արվել ծծմբաթթվի, մետալուրգիական, պղնձարջասպի արտադրամասերում։

Գյուտարարների և նորարարների խորհուրդը գիտահետազոտական ինստիտուտների աշխատակիցների հետ համատեղ աշխատում է փոշեմետալուրգիայի զարգացման հարցերի վրա, արդեն առկա են առաջին արդյունքները։

Կոմբինատի արտադրամասերում այս օրերին քաղաքական-մասսայական աշխատանքը ստացել է ավելի գործնական բնույթ։ Ընդունելով հայրենիքի բարձր պարգևը, աշխատավորները ստանձնել են նոր պարտավորություններ։ Նրանք խոստացել են ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի կապակցությամբ պլանային առաջադրանքները կատարել դեկտեմբերի 25-ին, պետական որականիշով վայերբասային պղնձի թողարկումը հասցնել 85 տոկոսի, խնայել 3 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, պլանից դուրս թողարկել զգալի քանակությամբ վայերբասային ու սև պղինձ, ծծմբաթթու, նախորդ տարվա համեմատությամբ շլակի մեջ պղնձի կորուստը հասցնել 0,01 տոկոսի, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 0,3 տոկոսով։ Ստանձնած պարտավորությունների կատարումը կոմբինատի կուսակցական ու հասարակական կազմակերպությունները և նրա ադմինիստրացիան ապահովում են աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունների զարգացմամբ, սոցիալիստական մրցության ասպարեզում ձեռք բերված առաջավոր փորձի կիրառմամբ, կոլեկտիվի անդամների շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավմամբ։

# ՎԵՐԵԼՔԻ ԳՈՒՄԱՐԵԼԻՆԵՐԸ

**Ռ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

ԱՅԺՄ, ԵՐԲ ԱՎԱՐՏՎԵԼ Է տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարին, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ ամփոփում է ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների լուծման առաջին արդյունքները: Եվ, անշուշտ, ձեռքբերումները համեմատվում են ոչ միայն պետական պլանների, այլև նախորդ հնգամյակի ավարտական տարվա ցուցանիշների հետ:

Իջևանի գորգագործական կոմբինատի համար, հաջողությունների առումով, հակապատկեր էին 1980 և 1981 թվականները: Արդեն 1980-ի կեսերին ակնհայտ էր, որ հանրապետության գորգագործության այս խոշոր ձեռնարկությունը կթերակատարի տարվա և ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի պլանները: Եվ, իրոք, հնգամյա պլանից պակաս արտադրվեց 634 հազար քմ գորգ՝ շուրջ մեկ տարվա արտադրանք: Ավելին՝ մի շարք ցուցանիշներով ձեռնարկությունը նահանջեց իններորդ հնգամյակի մակարդակից: Կոմբինատում պլանների թերակատարման, աշխատանքային ու պետական կարգապահության թուլացման մասին այդ ժամանակաընթացքում բազմիցս գրվել է մամուլում, հարցը քննարկվել է հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիայում: Կոմբինատի վիճակի բարելավմանը քանիցս անդրադարձել է ՀԿԿ Իջևանի շրջկոմը՝ ղեկավարությանը ժամկետներ տալով ձեռնարկությունն առաջավոր բնագծեր դուրս բերելու համար: Ժամկետներն անցել էին, իսկ վիճակը նույնն էր մնացել: Այլևս անհրաժեշտ էին արմատական և կտրուկ միջոցառումներ: Նոր, կարող ղեկավարություն էր պետք:

Շրջանում կային տեխնիկական բարձրագույն կրթությամբ, կոլեկտիվներում աճած արտադրության ոչ քիչ թվով հմուտ ղեկավարներ: Նրանցից ո՞վ կարող էր փակուղուց հանել Իջևանի ամենամեծ ձեռնարկությունը: Կուսշրջկոմում հանգամանորեն ուսումնասիրում էին այդ պաշտոնի համար նախատեսվող ընկերների քաղաքական ու գործարար հատկանիշները: Վերջապես կատարված էր ընտրությունը: Շրջկոմի առաջին քարտուղարն իր մոտ հրավիրեց № 51 շինվարչության պետ Բաբկեն Խուդավերդյանին: Որպես կոմունիստ, նա աճել էր շրջանի կուսակցական կազմակերպության շարքերում, որպես արտադրության պետ՝ շրջանի շինհրապարակներում: Վերջին տասնամյակում այստեղ իրականացվող մեծածավալ շինարարությունը շատ բանով առնչվում էր նրա անվան հետ: Այդ ընթացքում նա իրեն դրսևորել էր որպես տեղամասի, աշխղեկության ու ամբողջ շինվարչության կոլեկտիվի հմուտ կազմակերպիչ: Խղճատապահանջ էր իր և աշխատակիցների նկատմամբ:

Իհարկե, ընդունելով նման որոշում, շրջկոմը որոշակի ռիսկի էր դիմում, շինարարը պետք է ղեկավարեր գորգագործական խոշոր արտադրություն: Կհաջողվե՞ր նրան այդ: Ինքը՝ շինվարչության պետը, նույնպես զարմացած էր այդ առաջարկությունից և անկեղծորեն հրաժարվեց այն ընդունել:

— Մանկուց յուրաքանչյուր իջևանցի ծանոթ է գորգագործությանը,— բարեկամաբար ասաց կուսշրջկոմի առաջին քարտուղար Ռոբերտ Սուխուդյանը,— ուրեմն արտադրությանն ինչ-որ չափով ծանոթ եք: Շրջկոմը և թեթև արդյունաբերության մինիստրությունը համակողմանի օգնություն ցույց կտան: Ձեզ հավատում և վստահում ենք...

Բաբկենի հայրը՝ կոմունիստ Գալուստ Խուդավերդյանը, ուներ կյանքի գեղեցիկ նշանաբան. «Լավ է քիչ, բայց լավ: Եվ ավելի լավ է՝ շատ ու լավ»: Այդ ոգով էր պատերազմի ծանր տարիներին կոմունիստ Խուդավերդյանը ղեկավարում Ջողազի կոլտնտեսությունը, մոբիլիզացնում աշխատավորների ուժերը, դաստիարակում նրանց ու իր զավակներին: Ջողազը տալիս էր Իջևանի շրջանի մեծ ու բարձրորակ հացը: «Ուրեմն, մեծ գործը փոքրից է սկսվում, բայց միշտ պետք է լավ կատարել»— աշխատանքի նկատմամբ նման վերաբերմունքը մանկուց հարազատ էր երիտասարդ շինարարին: Վարչության պետի պաշտոնում նա յուրացրեց նաև ղեկավարման արվեստի նրբությունները: Կառավարման յուրաքանչյուր աստիճանի հետ բարդանում են ղեկավարին ներկայացվող պահանջները՝ որպես կազմակերպիչ, կոլեկտիվի դաստիարակ և պետական պլանների կատարման համար պատասխանատու անձ:



Երիտասարդ կոմունիստը շրջկոմում արված առաջարկից հետո օրեր շարունակ մտորում էր հենց պատասխանատվության մասին: Իրեն վստահում էին անծանոթ ու մեծ գործ: Կոլեկտիվում շատ բան պետք է շտկվեր: Տևականորեն ետ մնալու հետևանքով կորել էր գորգագործների հավատը հաջողության, աշխատանքային հաղթանակների նկատմամբ: Մեծ էր կադրերի հոսունությունը, քիչ չէին պետական ունեցվածքի հափշտակության դեպքերը: Բ. Խուդավերդյանը, մտորելով իրեն արված առաջարկի մասին, հանգում էր այն համոզման, որ կարելի է շտկել ձեռնարկությունում տիրող վիճակը: Հարկավոր էր զարգացնել գորգագործների նախաձեռնությունը, կոմունիստներին ավելի ակտիվորեն մասնակից դարձնել արտադրական ու սոցիալական հարցերի լուծմանը, բարձրացնել յուրաքանչյուր օղակի ղեկավարի պատասխանատվությունը...

Նոր դիրեկտորը կոմբինատ եկավ ձեռնարկության համար հիշարժան մի օր: 1980 թ. հոկտեմբերի 14-ին տեղի ունեցավ կոմբինատի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը: Բ. Խուդավերդյանին կոմունիստներին ներկայացրին հանրապետության թեթև արդյունաբերության մինիստր Ա. Գևորգյանը և ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Սուխուդյանը: Կոմունիստները, ինչ խոսք, մտահոգված էին ձեռնարկության անհաջողություններով: Նոր դիրեկտորը ելույթ չունեցավ, նա ասելիք չուներ: Սակայն առատ էին ծոցատետրում արված նշումները: Կուսկոմիտեի քարտուղարի զեկուցման մեջ բավականին հիմնավոր վերլուծվում էին ձեռնարկության արտադրական հարցերը, կուսակցական կազմակերպության ջանքերը՝ գործերի վիճակը բարելավելու համար: Անաչառ էին մտքերի փոխանակությանը մասնակցած կոմունիստների ելույթները: Ժողվերահսկողության խմբի նախագահ Նորիկ Երմոյանը նշեց, որ արտադրանքի առաքման կարգը խախտելու, տարաները ժամանակին չվերադարձնելու, ստանդարտին չհամապատասխանող արտադրանք թողարկելու, երկաթուղային վագոնների և կոնտեյներների ոչ ժամանակին բարձման-բեռնաթափման համար 1980 թ. առաջին ինն ամսում տարբեր կազմակերպությունների կոմբինատը վճարել է 795 հազար ռուբլի տուգանք: Պահեստային տնտեսության փոքրության պատճառով հումքի մի մասը տեղավորված էր բաց երկնքի տակ: Ժամանակին չէր իրացվել գերնորմատիվային մնացորդը, արտադրական թափոնները նորմաները գերազանցում էին 2—5 անգամ:

Մանող բանվորուհի Մանյա Բլբուլյանը խոսեց պարապուրդներ ծնող պատճառների մասին, որոնք առաջանում էին ոչ բոլոր անհրաժեշտ նյութերն ունենալու և պատրաստի արտադրանքով արտադրական մակերեսները զբաղեցնելու հետևանքով: Վատ էին նորոգվում նաև մեքենասարքավորումները, գործարար բնույթ չէր կրում սոցմրցությունը, շատ քիչ բան էր արվել կոլեկտիվի անդամների ակտիվ հանգիստը կազմակերպելու համար: Հետաքրքրական փաստեր հիշատակեցին կոմունիստներ Արաքսյա Առաքելյանը և Անուշ Դանիելյանը: Տասնյակ առաջավոր գորգագործներ հնգամյակի պլանը կատարել էին 2,5—3 տարում, բայց կոմբինատը թերակատարել էր: Ինչո՞ւ: Որովհետև ամռան ամիսներին շատերը հեռանում էին կոմբինատից, մեկնում արտագնաց աշխատանքի՝ հեշտ վաստակի հույսով: Գործող արտադրամասում լիցքավորողների պակասի պատճառով արձակուրդ գնացողներին և հիվանդացողներին փոխարինող չէր լինում, ուստի անխուսափելի էին մեքենասարքավորումների պարապուրդները: Շատ ժամանակ էր կորչում հերթափոխերն ընդունելիս և հանձնելիս, շատերն էլ ինքնակամ երկարաձգում էին ընդմիջումները: Եղել են դեպքեր, երբ միջին օղակի որոշ ղեկավարներ աշխատանքի ժամանակ ոգելից խմիչք են գործածել և վատ ազդեցություն ունեցել իրենց ենթակա բանվորների վրա... Կոմունիստների ելույթներից դիրեկտորը շատ բան իմացավ:

Հաջորդ օրը Բ. Խուդավերդյանը կոմբինատ եկավ բոլորից շուտ, շրջեց անսովոր լուռ արտադրամասերում: Շատերը, գիշերվա հերթափոխն ավարտելով, չէին մաքրել աշխատատեղերը, մանարան արտադրամասի անցումներն անգամ խցանված էին պատրաստի արտադրանքով, որոշ տեղերում ջարդված պատուհաններից ցուրտ էր փչում, մաքուր չէին բակերը: Այս ամենը պետք է կանխեին հերթափոխի պետերը, վարպետներն ու նրանց օգնականները, որոնք տարբեր օղակների ղեկավարներ են: Եվ դիրեկտորը մտածում էր. ո...

րեմն ցածր է նրանց պատասխանատվությունը և գործում են վատ սովորության ուժով: Ժամը 7-ին աղմկեցին առաջին դազգահները: Սակայն բոլորը գործի չանցան միանգամից. ուշացողները շատ էին: Բոլոր դազգահները գործել սկսեցին մեկ ժամ անց միայն: Այդ նշանակում է պակաս են թողարկվելու տասնյակ կիլոգրամ մանվածք և զգալի մակերեսով գորգեր:

Ժամը 11-ին հրավիրվեց դիսպետչերական խորհրդակցություն: Դիրեկտորը պետք է ծանոթանար կոմբինատի ղեկավար կազմին: Նրան ժամանակ էին տվել կոմբինատի վիճակը բարելավելու համար: Կարող էր որոշ ժամանակ նաև չմտածել բարձր բնագծերի մասին, սակայն դա մեծ շռայլություն կլիներ: Ուստի բաժինների և արտադրամասերի ղեկավարների հետ ծանոթանալուց հետո վճռական ասաց.

— Յուրաքանչյուր արտադրամաս, հերթափոխ և բրիգադ պետք է սահմանված պլանը կատարի: Ավելորդ է ասել, որ դա պետական օրենք է: Եթե կան կատարմանը խանգարող հանգամանքներ, ընդհանուր ուժերով կվերացնենք: Բաժիններն ու օժանդակ ծառայությունները պարտավոր են ապահովել հիմնական արտադրամասերի համաչափ աշխատանքը: Թերացողին ժամանակ կտրվի վիճակը շտկելու համար: Կրկնվելու դեպքում նման ղեկավարի նկատմամբ համապատասխան միջոցներ կձեռնարկվեն: Չպետք է լինեն աշխատաժամանակի կորուստներ. րոպեները ժամեր են դառնում: Այսուհետ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի մասին կդատենք միայն իր աշխատանքի արդյունքով: Սա կլինի գնահատման չափանիշ:

Այդ օրը, ինչպես և հետագա շատ օրեր, դիրեկտորն իր աշխատանքն ավարտեց գիշերվա ժամը երկուսին: Ու հենց առաջին օրը կոմբինատը գերակատարեց մանվածքի և գորգերի թողարկման առաջադրանքը: Հստակ ռիթմը պահպանվեց նաև հետագա օրերին: Եվ եթե հոկտեմբերի առաջին տասնօրյակում տրվել էր քսան հազար, ապա երկրորդում՝ արտադրվեց 47 հազար քմ գորգ: Նոյեմբերին նախորդ ամսվա համեմատ ավելի թողարկվեց քսան հազար, դեկտեմբերին՝ 28 հազար քմ արտադրանք: Իսկ արդեն 1981 թ. հունվարին կոլեկտիվն իր տարեգրության մեջ առաջին անգամ նվաճեց ամսվա ընթացքում հարյուր հազար քառակուսի մետր գորգ թողարկելու բնագիծը:

Գորգագործները տասնմեկերորդ հնգամյակն սկսեցին հաջողության ակնկալությամբ, վերելքի աշխույժ հնքով: Մարդկանց հոգում վերականգնվել էր հավատն աշխատանքային հաղթանակների նկատմամբ: Դիրեկտորը նաև հետագայում հավատարիմ մնաց վերջնական արդյունքով մարդկանց գնահատելու սկզբունքին: Հենց այդ չափանիշով առաջնորդվելը հնարավորություն ընձեռեց արագորեն բացահայտելու արտադրության առաջընթացն արգելակող պատճառները: Թերությունները շատ էին հատկապես միջին օղակում: Տեղամասերի ու արտադրամասերի ղեկավարներից շատերը հանդես չէին բերում գործարար այն հատկանիշները, որոնցով ապահովվում են առաջադրանքների կատարումը, կոլեկտիվի աշխատանքի հստակ ռիթմը և առողջ մթնոլորտը: Սակայն ստեղծված բարեհոգության պայմաններում ոչ մեկը պատասխան չէր տվել հանձնարարված գործի ձախողման համար:

Կուսակցական ժողովներում, կուսբյուրոյի նիստերում, դիսպետչերական խորհրդակցություններում այդ ընկերներին առանձին-առանձին տարբեր ժամկետներ տրվեցին՝ իրենց ղեկավարած տեղամասերի վիճակը բարելավելու համար, իսկ օժանդակ ծառայություններին հանձնարարվեց համակողմանի օգնություն ցույց տալ նրանց: Մեկ-երկու ամսից հետո իրենց չարդարացրած ղեկավարները հանվեցին զբաղեցրած պաշտոնից: Թափուր տեղերում նշանակվեցին արտադրությունում աճած խոստումնալից երիտասարդներ:

Յուրաքանչյուր բրիգադի, հերթափոխի, տեղամասի, արտադրամասի, արտադրության և բաժնի ղեկավարից դիրեկցիան ու կուսկոմիտեն պահանջեցին խստորեն պահպանել աշխատանքային կարգապահության կանոնները, արդյունավետ օգտագործել աշխատաժամանակը: Աստիճանաբար նվազագույնի հասցվեցին բանվորների ուշացումները, ինքնակամ ընդմիջումները, աշխատանքից շուտ հեռանալու փաստերը: Գրեթե բացառվեցին անհարգելի բացակայությունները:

Կազմակերպչական աշխատանքն անհրաժեշտ էր ամրապնդել տեխնիկական միջոցառումներով: Ուսումնասիրությունները ցույց էին տվել, որ, օրինակ, գործող դազգահների միջանկյալ նորոգումները տևում էին 20—22 օր: Եթե կրճատվեր այդ ժամկետը և նորոգումը կատարվեր բարձր որակով, ապա հաստոցի պարապուրդը կկրճատվեր 8—10 օրով: Իսկ քանի որ տարվա ընթացքում նման ձևով նորոգվում են տասնյակ հաստոցներ, ապա շահած ժամանակը և լրացուցիչ թողարկած արտադրանքի ծավալը զգալի կլինեին: Դիրեկցիայի հրամանով այդ հարցում նոր կարգ սահմանվեց, լավագույն նորոգողների համար



նախատեսվեցին պարգևներ: Այժմ ցանկալի արդյունքներն ակնհայտ են:

Արտադրության կատարելագործմանը նպաստել են իրականացված տեխնիկական այն բազմաթիվ միջոցառումները, որոնց հեղինակներն են ռացիոնալիզատորները: Օրինակ, հենց նրանց առաջարկով ռադիոֆիկացվել են աշխատատեղերը: Բանվորն այլևս ստիպված չէ գործընկերոջն ինչ-որ բան ասելու համար կտրվել գործից կամ հեռվից գոռալ: Խնայվել են թանկարժեք վայրկյանները և... նյարդերը:

1980 թվականի վերջին ամիսները բեկումնային դարձան կոմբինատի կոլեկտիվի ստեղծագործական ակտիվության բարձրացման գործում: Կուսակցության XXVI համագումարին ներկայացվող ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի քննարկման ընթացքում անկեղծ խոսակցություն բացվեց ձեռնարկության նահանջի, սոցիալիստական մրցության կազմակերպման ասպարեզում եղած թերությունների մասին: Տնտեսական անի այդ զորեղ լծակին պատշաճ ուշադրություն չէր նվիրվել, իսկ աշխատավորներն ունեին լավ մտահղացումներ:

— Մենք նոր հնգամյակ պետք է մտնենք նոր նախաձեռնություններով,— մանարան արտադրամասում նախագծի քննարկման ժամանակ ասաց ՀԿԿ XXVII համագումարի պատգամավոր Մանյա Բլբուլյանը:— Վարպետների հետ հաշվարկներ ենք կատարել, որ եթե ընդլայնենք դազգահների սպասարկման գոտին ու ավելի արդյունավետ օգտագործենք աշխատաժամանակը, ապա մենք՝ մանածագործներս, կարող ենք հերթափոխի առաջադրանքը կատարել 5 ժամում, իսկ հնգամյակը՝ երեքուկես տարում:

«Հնգամյակը՝ երեքուկես տարում»,— առաջավոր մանածագործուհու այս կոչը ջերմորեն պաշտպանեցին ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Հրանուշ Վանեսյանը, Ռոզա Անտոնյանը, Աղավնի Միրզոյանը, Ժենյա Ղալումյանը, Վալյա Մկրտումյանը, Ասյա Սահակյանը և նրանց բազմաթիվ ընկերուհիներ: Այս ջուլհակուհիները, իրենց խոստմանը հավատարիմ, ժամկետից 4—5 ամիս շուտ հատեցին 1981 թվականի բնագիծը: Ծավալված մրցության շնորհիվ կոմբինատը ոչ միայն լիովին ապահովվեց որակյալ մանվածքով, այլև հնարավորություն ստեղծվեց տարվա ընթացքում 200 տոննա մանվածք վաճառել Անդրկովկասի և Միջին Ասիայի համանման ձեռնարկություններին: Մանարանը, որի պետն է Լիպարիտ Թումանյանը, հնգամյակի մեկնարկային տարվա գրաֆիկից առաջ անցավ 40 օրով:

Բարձր բնագծեր նվաճեցին նաև գործողները: Նրանք 1980 թ. հոկտեմբերից սկսած գերակատարել են բոլոր ամիսների առաջադրանքները, իսկ 1981 թ. ձեռնարկության տարեգրության մեջ առաջին անգամ գորգի տարեկան արտադրությունը հասցրին մեկ միլիոն 100 հազար քմ-ի: Ճանաչված բանվորուհի Լամարա Ծահնազարյանը մեկ հերթափոխում սկսեց թողարկել 73—75 քմ գորգ, որը միութենական միջին ցուցանիշը գերազանցում է 10—15 մետրով: Այս նվաճումն այժմ ռեկորդ է կոմբինատի համար: Առաջավորների շարքում են նաև Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Անուշ Դանիելյանը, Գենյա Ամիրյանը, Ջեմմա Մովսիսյանը, Ռայա Խաչատրյանը, Վալյա Սահակյանը և ուրիշներ:

Կոմբինատի կոլեկտիվը, շարունակելով ոգեշունչ աշխատանքը, 1981 թ. առաջին եռամսյակում հանրապետության թեթև արդյունաբերության աշխատողների սոցմրցությունում արժանացավ երկրորդ կարգի դիպլոմի, հետագա եռամսյակներում՝ փոխանցիկ կարմիր դրոշների և առաջին կարգի մրցանակի: Գորգագործներին է շնորհվել նաև ՀԿԿ Իջևանի շրջկոմի, շրջանային և քաղաքային սովետների գործադիր կոմիտեների փոխանցիկ կարմիր դրոշները:

Անցյալում այստեղ մեծ էր կադրերի հոսունությունը: Աշխատուժի խիստ կարիք ուներ հատկապես գործող արտադրամասը, լիցքավորողներ չունենալու հետևանքով հարյուրավոր ժամերի պարապուրդ էին տվել դազգահները: Մասնագետների պատրաստումը վատ էր իրականացնում Իջևանի № 33 պրոֆտեխնիկական ուսումնարանը: Հարցի լուծումը գտնվեց ձեռնարկությունում, որի ուսումնական կոմբինատը վեց ամիսը մեկ արտադրությանը տալիս է 70—80 որակյալ բանվորուհի: Ընդհանրապես կոմբինատում լուրջ ուշադրություն է նվիրվում երիտասարդների ուսուցմանը: Այժմ տասնյակ բանվորներ և բանվորուհիներ սովորում են բաներիտ դպրոցներում, տեխնիկումներում և բուհերում: Լենինգրադի տեքստիլ արդյունաբերության ինստիտուտի հեռակա բաժնում է սովորում կոմբինատի դիրեկտորը:

ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումները գործողության ծրագիր են կուսկազմակերպության, նրա կոմիտեի համար: Նրանք մոբիլիզացրել են կոլեկտիվի ուժերը, բարելավել քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ծավալել գործարար սոցիալիստական մրցություն:

Կուսակցության՝ «Էկոնոմիկան պետք է լինի խնայողական» նշանաբանը կարմիր պաստառների վրա գրված կա բոլոր արտադրամասերում: Դրա կենսագործումն ապահովվել

է տեխնիկապես: Այդ նպատակով կատարվել են մանրակրկիտ ուսումնասիրություններ, իրականացվել են հումքի կորուստների կրճատման մի շարք միջոցառումներ: Սակայն այդ գործում վճռորոշ դերը պատկանում է մարդկանց, քանի որ խնայողությունը դաստիարակության արդյունք է: Կոմբինատի գաղափարական ճակատի առաջամարտիկների ջանքերով է նաև, որ բոլոր տեղամասերում, հերթափոխերում և արտադրամասերում շարունակվել է հետևողական պայքարը խնայողության համար: Եվ ահա արդյունքը: Ձեռնարկության մարդիկ 1981 թ. խնայել են ավելի քան 8 տոննա հումք և այնքան էլեկտրաէներգիա, որով լրացուցիչ թողարկվել է 12 հազար քառակուսի մետր նախշազարդ գորգ:

...Կոմբինատի վերջնամշակման արտադրամասը միշտ տոնական հարդարանքի մեջ է: Երկար հոսքային գիծը, եզրակարման սեղանները, հատակներն ու պատերը ժպտում են ծիածանի գույներով: Ժողովրդական կիրառական արվեստի լավագույն ավանդույթներով ստեղծված մեքենայական գորգերը շնչում են զարմանահրաշ նախշերի, զարդերի ու հյութեղ գույների ծեքծեքումներով: Եվ դա բնական է: Գորգերն ապրում են դարեր՝ գեղեցկացնելով մարդկանց կենցաղը: Իջևանյան գորգերն այժմ հայտնի են մեր մեծ հայրենիքի ամենահեռավոր անկյուններում: Դրանք բարձր գնահատականի են արժանացել նաև միջազգային ցուցահանդեսներում: Օրինակ՝ հանրահայտ «Էրեբունին»:

Սակայն մինև 1981 թվականը արտադրանքի ընդհանուր ծավալում քիչ են եղել պետական որականիշով գորգերը, ընդամենը՝ 18,5 տոկոս, այն դեպքում, երբ հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության միջին ցուցանիշը 24,4 տոկոս է: Քիչ գործ էր կատարվել նաև առաջին տեսակի և «Ն» ինդեքսով գորգերի արտադրությունն ավելացնելու նպատակով:

Որակի բարելավման և տեսականու ընդլայնման հարցերը ողջ սրությամբ դրվեցին դիսպետչերական խորհրդակցություններում, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների ժողովներում, մշակվեցին կոնկրետ միջոցառումներ: Շատ ժամանակ չի անցել, բայց արդեն այժմ ձեռնարկության արտադրանքի շուրջ 40 տոկոսը թողարկվում է հնգանիստ նշանով: Իջևանյան գորգերը հիմա պահանջարկ ունեն նաև արտասահմանում: Լիբանանցի պատվիրատուները 1981 թ. ստացել են 7 հազար քառակուսի մետր ծոպավոր գորգ:

Կոլեկտիվը նոր բնագծեր նվաճելու համար պայքարում է «Իջևանյան գորգերին՝ գերազանց որակ» նշանաբանով: Այժմ աշխատանքի որակական ցուցանիշներին ամենօրյա ուշադրություն է նվիրվում տեխնոլոգիական ցիկլի յուրաքանչյուր օղակում՝ սկսած մանվածքի հումքի նախապատրաստումից մինչև առաքում: Դրան նպաստում են ստուգումները, որոնց մասնակցում են ոչ միայն արտադրության ղեկավարները, այլև նկարիչները, տեխնիկական վերահսկիչները և իրացմամբ զբաղվող մարդիկ:

Ժողովրդական սպառման առարկաներ թողարկող ձեռնարկությունների հաջողությունները պայմանավորված են նաև տեսականու անընդհատ բարելավմամբ: Կոմբինատի նկարչական արվեստանոցը նայում է գալիք օրվան: Այստեղ են ծնվել Սովետական Հայաստանի մեքենայական արտադրության գորգերի էսքիզները, և նկարիչները միշտ որոնումների մեջ են:

— Յուրաքանչյուր վեց ամիսը մեկ հրավիրվում է համամիութենական գեղարվեստական խորհուրդ, որին մասնակցում են երկրի համանման բոլոր ձեռնարկությունները,— ասում է կոմբինատի նկարչական բաժնի վարիչ Հռիփսիմե Հարությունյանը:— Վերջին անգամ գեղարվեստական խորհուրդը կայացավ Վիտեբսկ քաղաքում: Իջևանցիներս ներկայացրել էինք «Սահականույշ», «Մարինե», «Նարեկ» գորգերը, որոնք միաձայն արժանացան «գերազանց» գնահատականի: Այդ հաջողությունն ունեցան նաև մեր ստեղծած «Տիգրանակերտ», «Փիրուզա» և «Հարություն» էսքիզները: Որպես կանոն, գեղարվեստական խորհրդի հաստատած գործերն անմիջապես ներդրվում են արտադրությունում:

Նախատեսվում է ընթացիկ տասնամյակում վերակառուցել և ընդլայնել կոմբինատը, որի շնորհիվ այն կդառնա տվյալ ճյուղի ավտոմատացված ու մեքենայացված ամենահզոր ձեռնարկություններից մեկը: Մեծ ուշադրություն է նվիրվում բնակարանային խնդրի լուծմանը, որը ձեռնարկության նեղ տեղերից մեկն է: Մոտ ապագայում կոմբինատը կստեղծի իր գյուղատնտեսական օժանդակ տնտեսությունը:

Իջևանի գորգագործական կոմբինատը աշխատանքային բեղուն հերթի մեջ է: Ամրապնդելով 1981 թվականի հաջողությունները, ձեռնարկության մարդիկ ձգտում են նոր նվաճումներով նշանավորել Սովետական Միության կազմավորման 60-ամյակը:



# ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՄԵՆԱՀԱՂԹ ԴՐՈՇԸ

*ՄԵՐ ԴԻՆԱՄԻԿ, ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ իրադարձություններով ու անցքերով հարուստ դարաշրջանում, երբ ծավալվել, խորացել ու բարդացել է հասարակական առաջընթացը, նորանոր խնդիրներ են ծառանում մարքս-լենինյան տեսության առջև: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, կուսակցությունը չի կարող իր դերը կատարել, եթե պատշաճ ուշադրություն չի նվիրում ողջ եղածի իմաստավորմանը, կյանքի նոր երևույթների ընդհանրացմանը: Ուստի բնական է այն չթուլացող հոգածությունը, որ տածում են մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացման նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմը, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը: Դրա նոր վկայությունը ընկեր Լ. Ի. Բրեժնևի* **Լենինի ու լենինիզմի մասին*** *գիրքն է, որը հրատարակել է քաղաքական գրականության հրատարակչությունը:*

*Լենինիզմի կենսահաստատ նշանակությունն այն է, որ խոր կերպով և ճշտորեն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, համաշխարհային սոցիալական պրոգրեսի պահանջները, հնարավորություն է ընձեռում մշակելու արդիականության ամենահրատապ հարցերի եղանակները: Այն սովորեցնում է նաև ստեղծագործաբար լուծել հասունացած պրոբլեմները, օժտում հասարակական զարգացման հեռանկարների գիտական ըմբռնմամբ:*

**Լենինի և լենինիզմի մասին** *նոր գրքի հեղինակը արդիականության ականավոր քաղաքական ու պետական գործիչ, լենինյան հեղափոխական գործի անխոնջ շարունակող, խաղաղության պաշտպանության անդուլ մարտիկ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևն է:*

*Գրքում զետեղված նյութերը բովանդակում են սկզբունքային կարևոր ընդհանրացումներ հեղափոխական տեսության ու պրակտիկայի մարզում, տալիս են մեր օրերի կենսահույզ հարցերի պատասխանները, շեշտում հասուն սոցիալիզմի հասարակության զարգացման կողմնորոշիչները:*

*Հանճարեղ մտածող ու հեղափոխական Վ. Ի. Լենինը շարունակեց Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի սխրանքը: Խորապես գիտակցելով XIX և XX դարերի սահմանագծի հեղափոխական անցման էությունը, նա գլխավորեց ռուսաստանյան պրոլետարիատի պայքարը: Վերջինիս վիճակված էր լուծելու ժամանակի միջազգային բանվորական շարժման ամենահեղափոխական խնդիրը՝ հարթել դեպի սոցիալիզմ տանող մարդկության ուղին:*

*Հենվելով մարքսիզմի տեսության վրա, Լենինն ապացուցեց, որ Ռուսաստանն ընթանում է կապիտալիստական ուղիով, երկրի գլխավոր հեղափոխական ուժը դառնում է բանվոր դասակարգը: Լենինը հերքեց նարոդնիկների, «լեգալ մարքսիստների», «էկոնոմիստների» հայացքները: «Այսպես,— նշված է գրքում,— Մարքսի-Էնգելսի հեղափոխական ուսմունքի համար մղվող պայքարում սկզբնավորվում էր լենինիզմը: Այսպես սկսվեց Ռուսաստանում հեղափոխության նախապատրաստությունը, որին Լենինը նվիրեց իր կյանքի երեք տասնամյակը» (էջ 136):*

*Լենինին ներհատուկ էին հեղափոխական մտքի սրությունը, պրոլետարա-*

---

* Л. И. БРЕЖНЕВ, **О Ленине и ленинизме.** М., Политиздат, 1982 г.

կան դասակարգային պայքարի կազմակերպչի չգերազանցված վարպետությունը։ Նա անշեղորեն հետևում էր Մարքսի կոչին՝ ո՛չ միայն բացատրել աշխարհը, այլև վերափոխել այն։ Նա քաջ գիտակցում էր, որ հեղափոխության հաղթանակի, նոր հասարակարգի կառուցման համար անհրաժեշտ է մարքսիզմի տեսությամբ զինված բանվոր դասակարգի մարտական կուսակցություն։ Իր Ի՞նչ անել հայտնի աշխատության մեջ Լենինը եզրակացրեց. Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք կհեղաշրջենք Ռուսաստանը։

Այդպիսի կուսակցության ստեղծումն ու կոփումը դարձան նրա կյանքի գործը։ Հանուն դրա Լենինն անհաշտ պայքար մղեց մենշևիկների, տրոցկիստների և այլ կարգի օպորտունիստների դեմ։ «Նոր տիպի կուսակցությունը,— ասված է ժողովածուում,— հեղափոխական տեսության և հեղափոխական պրակտիկայի անխզելի միասնության գերագույն մարմնավորումն է։ Դա այն մեծագույն ժառանգությունն է, որ Լենինը թողել է համաշխարհային հեղափոխական շարժմանը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցողներին» (էջ 137)։

Ռուսական երեք հեղափոխությունների մարտերում ծնունդ էին առնում և ստուգվում տեսական այն նոր հետևություններն ու ընդհանրացումները, ստրատեգիական ու տակտիկական նոր դրույթները, որոնք կազմեցին սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության հիմքը։ Լենինն ապացուցեց իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերածելու ռեալ հնարավորությունը։ Բուրժուադեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի, պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի, մյուս դասակարգերին և կուսակցություններին ցույց տրվող վերաբերմունքի մասին, հեղափոխության վերելքի և վայրէջքի ժամանակաշրջանում պրոլետարական կուսակցության տակտիկայի մասին լենինյան ուսմունքն այսօր էլ անգնահատելի գաղափարատեսական ու մեթոդաբանական զենք է սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարում։

Լենինյան տեսական մտքի ուժն ու խորությունը, միջազգային նշանակությունն այն է, որ ձևավորվելով դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի ամուր հիմքի վրա, մշտապես ծառայել է դրա ստեղծագործական զարգացմանը։ Սոցիալական երևույթների նկատմամբ կուսակցական, դասակարգային մոտեցումը Լենինը համարում էր մարքսիստական գաղափարախոսության անխախտ սկզբունք։ Նա կոմունիստներին ուսուցանում էր քաղաքական բոլոր հոսանքների, տարբեր ծրագրերի ու առաջարկների, սոցիալական ու բարոյական ամեն երանգի ուսմունքների ետևում տեսնել որոշակի դասակարգերի շահերը, պրոլետարիատի դիրքերից ելնելով որոշել դրանց նկատմամբ սեփական վերաբերմունքը։

Գրքում կարդում ենք, որ հիանալիորեն տիրապետելով մարքսիստական տեսության ողջ զինանոցին, լինելով փայլուն ստրատեգ և տակտիկ, զերծ լինելով դոգմատիզմ հիշեցնող ամեն մի բանից, Լենինը պատրաստ էր պատմական իրադարձությունների ամեն մի շրջադարձի։ Նա պարզ տեսնում էր, որ համաշխարհային իմպերիալիստական պատերազմը դրեց կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի սկիզբը, որը հղի էր վիթխարի ուժգնություն ունեցող հեղափոխական պայթյունով (էջ 138)։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Լենինը մեծ եռանդ ու ջանք է գործադրում մոնոպոլիստական կապիտալիզմի էությունը խորապես ուսումնասիրելու համար, որի արգասիքը եղավ իմպերիալիզմի, որպես կապիտալիզմի բարձրագույն ու վերջին փուլի, ամբողջական տեսության ստեղծումը։

Օպորտունիզմի տեսաբանները հակառակ մեկնակետից փորձեցին բացատրել իմպերիալիստական դարաշրջանի նոր երևույթները։ Նրանց տեսակետով իբր արդի կապիտալիզմը դարձել է «կազմակերպված», «կարգավորված»։ Ավելին, արդարացում էին որոնում հեղափոխությունից հրաժարվելու համար։ Այդ շիկացած մթնոլորտում Լենինն անհաշտ պայքար ծավալեց իմպերիալիզմի ջատագովների դեմ։ Նա ապացուցեց, որ կապիտալիզմի նոր հատկանիշները նոր հեռանկարներ են բացում պրոլետարիատի հաղթական պայքարի համար։ Իմպերիալիզմը սոցիալիստական հեղափոխության նախօրյակն է։ Լենինյան



հանճարի փայլատակումներից էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը սկզբում մի քանի երկրներում կամ նույնիսկ մեկ երկրում հետևությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը աշխարհի կոմունիստական վերակերտման հիմքը դրեց, որը Լենինի նախընթաց տեսական ու պրակտիկ գործունեության գագաթնակետն էր։

Լենինը՝ սոցիալիզմի հոյակապ շենքի ճարտարապետն ու շինարարը, գլխավորեց բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին կառավարությունը։ Նա ղեկավարեց սովետների հանրապետության պաշտպանությունը, հիմնադրեց կարմիր բանակը։ Լենինը տվեց սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ամենաբարդ հարցերի լուծումը, մշակեց սոցիալիզմի քաղաքատընտեսության հիմքերը։ Նրա գաղափարներով են տոգորված ՌՍՖՍՀ առաջին սահմանադրությունը և ՍՍՀՄ դաշնագրությունը։ Առաջնորդի ընդարձակ տեսադաշտում էին կուլտուրան ու լուսավորությունը, գիտությունն ու տեխնիկան, դասակարգերի ու ազգերի ճակատագիրը։ Լենինյան հանճարի արգասիքն են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ուղիների ծրագրային դրույթները։ «Հոկտեմբերի հաղթանակից հետո անցած վեց տարուց փոքր ինչ ավելի ժամանակամիջոցում,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մեր հեղափոխության առաջնորդը այնպիսի վիթխարի աշխատանք կատարեց, որի բովանդակությունն ու արդյունքները դեռ երկար ժամանակ ազդեցություն կգործեն համաշխարհային պատմության ընթացքի վրա» (էջ 142)։

Ակներև է Լենինի ավանդը համաշխարհային կոմունիստական շարժման զարգացման, հեղափոխական ուժերի համախմբման գործում։ Նրա նախաձեռնությամբ ստեղծվեց Կոմունիստական Ինտերնացիոնալը, որը շրջադարձային կետ հանդիսացավ համաշխարհային կոմունիզմի պատմության մեջ։ Հիրավի, լենինիզմը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի, գաղութատիրության խորտակման և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի դարաշրջանի, մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և կոմունիստական հասարակարգ կառուցելու դարաշրջանի մարքսիզմն է։ Լենինը ռուսական իրականության ծնունդ է, սակայն նրա ուսմունքում ներառվել է այն ամենը, ինչ ստեղծել են մարդկության լավագույն մտածողները։ Լենինիզմում ընդհանրացված և որպես միասնական ամբողջություն ի մի է ձուլված աշխատավորների դասակարգային պայքարի համաշխարհային փորձը։ Լենինը մեզ ժառանգություն է թողել արդի դարաշրջանում համաշխարհային հեղափոխական պրոցեսի մի ամբողջական կուռ կոնցեպցիա, որի միջուկը երկու սիստեմների պայքարն է։ Լենինին՝ հանճարեղ մտածողին ու առաջնորդին, խորհրդով դիմում են մոլորակի հեղափոխական բանվորների ներկայացուցիչները, բոլոր նրանք, ովքեր մարտնչում են հանուն խաղաղության ու սոցիալական պրոգրեսի։

Լենինյան գաղափարներով են տոգորված կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի բոլորանվեր գործերը։ Ընթանալով առաջնորդի նշած ուղիով, սովետական մարդիկ հարազատ կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ իրականացրին երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, փայլուն կերպով լուծեցին սոցիալական ամենաբարդ խնդիրը՝ ազգային հարցը։ Լենինը կուսակցության, սովետական ժողովրդի հետ էր Հայրենական մեծ պատերազմի մարտերում։ Մեր երկրում ստեղծված զարգացած սոցիալիստական հասարակությունը լենինիզմի հաղթանակի փայլուն դրսևորումն է։ Մշտապես և ամենուր մեր ժողովուրդը հավատարիմ է լենինյան դրոշին, կուսակցությանը, հեղափոխության գործին։

Կոմունիստական կուսակցության քաղաքականությունը լենինիզմն է գործողության մեջ։ Դեպի կոմունիզմ մեր շարժման լենինյան կուրսը հստակ ու պարզորոշ արտահայտված է ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումներում։ Եվ որքան խոշոր խնդիրներ է իր առջև դնում սովետական ժողովուրդը, որքան պատասխանատու է դառնում կուսակցության գործը, այնքան մեծանում

է պահանջը՝ խորհրդակցել Լենինի հետ։ Մեր երկրի արդի զարգացման կարևորագույն պրոբլեմների լուծման համար կենսական նշանակություն ունեն Լենինի մտքերը, նրա անսահման հարուստ պրակտիկ փորձը։ «Լենինի հայտնագործած սոցիալիզմի զարգացման օրինաչափությունները,— նշված է գրքում,— այսօր էլ տալիս են դրանց ըմբռնման և լուծման բանալին։ Ահա թե ինչու Լենինը մնում է մեր գործերի կենդանի մասնակիցը, մեր հուսալի և իմաստուն ուսուցիչը» (էջ 153)։

Ղեկավարվելով Լենինի գաղափարներով, կոմունիստական կուսակցությունն ամեն ինչ անում է էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի բնագավառներում մեր երկրի անշեղ վերընթացն ապահովելու, հասարակության սոցիալքաղաքական ու գաղափարական միասնությունը, աշխատավորների եղբայրական բարեկամությունն ամրապնդելու համար։ Կուսակցության XXVI համագումարին ներկայացրած ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, բացառիկ խորությամբ մշակված է ութսունական թվականների մեր սոցիալ-տնտեսական քաղաքականությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումը կոնկրետ միջոցառումներ առաջադրեց ապահովելու այդ քաղաքականության իրականացումը։ Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ իբրև իրենց հարազատ գործ ընդունեցին կուսակցության նշանաբանը՝ ժողովրդական տնտեսության հետևողական ինտենսիֆիկացում, արտադրության արդյունավետության ու որակի անշեղ բարձրացում։

Գրքում շեշտվում է, որ էկոնոմիկայի ղեկավարման հարցերը սոսկ տնտեսական հարցեր չեն, այլ քաղաքական, կուսակցական։ Կուսակցությունը առաջնահերթ խնդիրներից է համարում պլանավորման մեթոդների մշտական կատարելագործումը, ընթացիկ ու հեռանկարային պլանի գիտատեխնիկական ու տնտեսական ապահովման բարելավումը։ Կուսակցության սոցիալական քաղաքականության գերագույն նպատակը սովետական մարդկանց բարեկեցությունն ու երջանկությունն է։ ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ծրագիրն ընդգրկում է սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերի բարելավումը— սպառումը և բնակարանը, կուլտուրան ու հանգիստը, աշխատանքի ու կենցաղի պայմանները։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը սոցիալ-տնտեսական հիմնավորված միջոցառումների իրականացումով, արդի տեխնիկայի ու գիտության հասումների հիման վրա ջանում են առավելապես մերձեցնել բանվորների ու գյուղացիների աշխատանքի բնույթը, վերակառուցել գյուղի կենցաղը, հարստացնել գյուղական կյանքի կուլտուրան։

Ղեկավարվելով լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներով, կուսակցությունը հետևողականորեն իրագործում է ազգերի համակողմանի մերձեցման, նրանց համագործակցության ու փոխօգնության հետագա ամրապնդման կուրս։ Մեր երկրում անցած տասնամյակներում ձևավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Այս տարի հանդիսավորությամբ նշվելու է ՍՍՀՄ կազմավորման վաթսունամյակը։ Կուսակցությունը աշխատավոր զանգվածներին դաստիարակում է սովետական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի, սոցիալիզմի ճշմարտացիության ու անհաղթահարելիության ոգով, մեր մեծ հայրենիքին, Լենինին, Հոկտեմբերի գաղափարներին հավատարմության, սոցիալիստական նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով։

Գրքում համակողմանիորեն լուսաբանված է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դերը սոցիալիզմի երկրների հետ բարեկամության ու համագործակցության ամրապնդման, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնությանն ու համախմբմանը սատարելու, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին, խաղաղության ու սոցիալական առաջընթացի բոլոր պրոգրեսիվ ուժերին աջակցելու գործում։

Կոմունիզմի կառուցման հիմնական զենքը, սովորեցրել է Լենինը, սոցիալիստական պետությունն է։ Հավատարիմ լենինյան պատգամին, կուսակցությունը մշտապես ամրապնդում է սովետական պետությունը, կատարելագործում հասարակության կառավարման ողջ սիստեմը։ 1977 թվականին ընդունված ՍՍՀՄ նոր սահմանադրությունը նպաստում է սովետական սոցիալիստական համաժողովրդական պետության ու սոցիալիստական դեմոկրատիայի հետագա առաջընթացին։ Մեր պետական ու հասարակական զարգացման դիալեկտիկան այն է, որ սոցիալիստական պետության սիստեմում միլիոնավոր քաղաքացիներ առավել ակտիվ են մասնակցում իշխանության, ժողովրդական վերահսկողության մարմինների գործերին, արտադրության կառավարմանն ու բաշխմանը, սոցիալական ու կուլտուրական քաղաքականությանը, արդարադատության իրականացմանը։ Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմամբ աստիճանաբար կատարվում է մեր պետականության վերաճումը կոմունիստական հասարակական ինքնակառավարման։

Լենինի ու լենինիզմի մասին աշխատության մեջ արժանի պատասխան է տրված սոցիալիստական դեմոկրատիայի բոլոր քննադատներին։ «Որքան էլ մեր հակառակորդները մտահոգվեն սոցիալիզմի «անկատարելության» առթիվ, որքան էլ նրանք հոգան դրա «բարելավման», «հումանիզացման» մասին, մենք հպարտությամբ կրկնում ենք լենինյան այն խոսքերը, որ պրոլետարական, սոցիալիստական դեմոկրատիան միլիոն անգամ ավելի դեմոկրատական է բուրժուական ամեն մի դեմոկրատիայից։ Մեր պետությունը եղել է, կա ու կլինի աշխատավորների պետություն, պետություն աշխատավորների համար, պետություն, որը կառավարում են աշխատավորները» (էջ 160)։

Մեր երկրում մեծ աշխատանք է տարվում սովետական սոցիալիստական ապրելակերպը կատարելագործելու, նոր մարդուն կերպավորելու նպատակով։ Կուսակցությունը գաղափարաքաղաքական, բարոյական ու աշխատանքային դաստիարակության գործում խարսխվում է սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքին։ Մեր պրոպագանդայի, աշխատավորության կոմունիստական դաստիարակության բարձրացման ուղիները սահմանված են կուսակցության XXVI համագումարի փաստաթղթերում։ ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում ցույց են տրված գաղափարական գործունեության շատ տեղամասերի ու ոլորտների արմատական վերակառուցման ուղիներն ու եղանակները։ Խնդիրն այն է, որ գործով հաստատվի գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական ու տնտեսական աշխատանքի միասնություն։

Սովետական մարդկանց գիտական, մատերիալիստական աշխարհայացքի կերպավորումը եղել ու մնում է գաղափարաքաղաքական աշխատանքի առանցքը։ Կուսակցությունը սովետական մարդկանց դաստիարակում է կոմունիզմի իդեալներին ու գործին հավատարմության, աշխատանքի ու հասարակական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, անհաշտվողականություն սոցիալիզմին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են անտնտեսավարությունն ու շռայլությունը, ընչաքաղցությունն ու կաշառակերությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, հասարակությունից անվարձահատույց գշլելու մոլուցքը և այլն։ Կուսակցությունն ըստ ամենայնի զարգացնում ու ամրապնդում է սովետական մարդկանց հեղափոխական զգոնությունը, նրանց դասակարգային ինքնագիտակցությունը։

Գաղափարախոսական աշխատանքը կոմունիստական կուսակցության առաջնահերթ խնդիրներից է։ Այն իր բնույթով բազմազան է և պահանջում է հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսների գիտական վերլուծություն, ծագող պրոբլեմների մշտական լուծում։

Իր Հուշեր-ում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նկատել, է, որ վտանգավոր է նույնիսկ առժամանակ, նույնիսկ առանձին տեղամասերում պետական ու հասարակական կյանքի գաղափարական սկզբունքը մոռանալը, գաղափարական սխալների հետ հաշտվելը։ Առաջին հայացքից դրանք այնպես նկատելի չեն լինում, ինչպես, ասենք, տեխնիկական սխալները։ Եթե մի ինչ-որ ագրեգատ սխալ է նախագծված, ապա այն սպասվող հզորությունը չի ունենա, կամ էլ բնավ չի աշխատի, դա երևում է միանգամից, կրած վնասը հեշտ է հաշվել։ Իսկ գաղափարախոսության մեջ սխալը,— շարունակում է Լեոնիդ Իլյիչը,— որպես կա-

նոն, թաքնված է, քողարկված գեղեցիկ խոսքերի պատմուճանով, բայց առավել ևս հղի է հետևանքներով, քանի որ այն անպայման կարտահայտվի և հրապարակային վնաս կբերի, եթե ժամանակին չչտկվի։ Ժամանակակից աշխարհում դատարկություն չկա, այնտեղ, որտեղ մենք բարեհոգություն ենք անում, այդտեղ գործում են մեր գաղափարախոսական հակառակորդները։ «Ուստի,— ուսուցանում էր Վ. Ի. Լենինը,— սոցիալիստական գաղափարախոսության յուրաքանչյուր նսեմացում, յուրաքանչյուր հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում» (Լ. Ի. Բրեժնև, Հուշեր, «Հայաստան» հրատ., 1982 թ.; էջ 50)։

Ահա թե ինչու հակապրոպագանդան հանդիսանում է գաղափարախոսական գործունեության կարևոր ոլորտներից մեկը, այն պետք է տարվի սիստեմատիկորեն, պատշաճ բանիմացությամբ, հետևողականորեն ու նպատակասլաց։

Կուսակցությունը մեր երկրում իրականացնելով կոմունիստական շինարարության ղեկավարությունը, չթուլացող ուշադրություն է հատկացնում միջազգային քաղաքականությանը։ Խաղաղության պատմական լենինյան դեկրետից է սկիզբ առնում ութսունական թվականների ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած խաղաղության ծրագիրը։ Մարդկության պատմության մեջ Լենինն է առաջին անգամ գիտական կոմունիզմի տեսությունը միացրել պետական արտաքին քաղաքականության պրակտիկայի հետ։

Հիրավի, արդի միջազգային բարդ իրադրության պայմաններում մեզ համար ուղենիշ աստղ են արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները։ Այդ քաղաքականությունն աչքի է ընկնում սկզբունքային դիրքերի հետևողական պաշտպանությամբ, համաշխարհային կարևորագույն հարցերի նկատմամբ խոր պատասխանատվությամբ, բանակցություններ վարելու և համաձայնությունների գալու պատրաստակամությամբ, պրակտիկ հարցերը լուծելու դեպքում՝ ճկունությամբ։ Սովետական Միությունը մարդկության առջև հանդես է գալիս կոնկրետ ու ռեալ առաջարկությունների լայն ասպեկտով՝ ուղղված խաղաղության պահպանման, սպառազինությունների մրցավազքի սանձման, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի վտանգի վերացման։ «Մեր կուսակցությունը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարի եզրափակման նիստում,— մեկ անգամ ևս ապացուցեց՝ սովետական ժողովուրդը ոչ միայն ցանկություն, այլև քաղաքական կամք ունի ամեն ինչ անելու հանուն խաղաղության՝ կայուն, անսասան խաղաղության։ Մենք ունենք ո՛չ միայն խաղաղության պայքարի կամք, այլև այդ պայքարի ճշգրիտ, հստակ ծրագիր» (էջ 398)։ Հանձինս Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի, աշխարհի ժողովուրդները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը տեսնում են խաղաղության ու սոցիալական առաջընթացի ամենատոկուն ու հաստատակամ մարտիկին։

Լենինը սովորեցրել է մեր կուսակցությանը նվիրումով ծառայել աշխատավոր ժողովրդին։ Մեր երկրի աշխատավորները լավ գիտեն, որ մեր բոլոր հաջողություններն ու հասումները ձեռք են բերվել լենինյան կուսակցության ղեկավարությամբ։ Սովետական ժողովուրդն անչափ հավատում է հարազատ կուսակցությանը, միահամուռ պաշտպանում ու աջակցում իր ավանգարդի քաղաքականությանը։ Սերտ համախմբված կոմունիստական կուսակցության, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի, քաղբյուրոյի շուրջը, սովետական մարդիկ անձնուրաց պայքարում են ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներն անշեղորեն իրականացնելու համար։ Կուսակցության ու ժողովրդի շահախնդրությունների միասնության մեջ է ամփոփված ՍՄԿԿ քաղաքականությունը, նրա բոլոր ձեռնարկումների իրողությունը։

Կոմունիստական կուսակցությունը, իբրև բանվոր դասակարգի կուսակցություն, վաղուց դարձել է ողջ սովետական ժողովրդի ավանգարդը։ Կուսակցության կազմում առավել լիովին են արտացոլվում սովետական հասարակության կառուցվածքում կատարվող փոփոխությունները, բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցումը։ Մեզ մոտ չկա և չի կարող լինել քաղաքական մեկ ուրիշ ուժ, որն ի վիճակի լիներ այնքան լրիվ ու հետևողականորեն հաշվի



առնել, զուգակցել և կոորդինացնել բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի և ազգությունների, մեր հասարակության բոլոր սերունդների շահերն ու պահանջմունքները, ինչպես այդ անում է կոմունիստական կուսակցությունը։ «Կուսակցությունը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հանդես է գալիս իբրև ողջ հասարակական սիստեմի կազմակերպիչ, իբրև ողջ սովետական ժողովրդի կոլեկտիվ բանականություն» (էջ 162)։

Կուսակցության ուժը բանվոր դասակարգի, ժողովրդական զանգվածների հետ անխզելի կապի մեջ է։ Մեր կուսակցությանը բնորոշ է ժողովրդի առջև բարձր պատասխանատվության զգացումը, խոր սկզբունքայնությունը։ ՍՄԿԿ-ն իր բոլոր գործերում հենվում է ժողովրդական նախաձեռնության անսպառ աղբյուրին, ստանում բանվոր դասակարգի, աշխատավորական լայն զանգվածների ակտիվ աջակցությունը, հետևում նրանց կոլեկտիվ մտքին ու փորձին, ի մի բերելով այդ ամենն իր քաղաքականության ու պրակտիկ գործունեության մեջ։ ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց, որ հասարակության առաջատար ուժի դերը ինքնաբերաբար չի տրվում։ Կուսակցությունն այդ դերը վաստակում է, նվաճում մշտական ու անդադրում պայքարում հանուն աշխատավորության շահերի։ Այն ամրապնդվում է նրանով, որ կուսակցությունը մշտապես խորացնում է կապերը ժողովրդական զանգվածների հետ, ապրում նրանց կարիքներով ու հոգսերով։

Կուսակցության գլխավոր զենքը և՛ քաղաքականության մեջ, և՛ պրոպագանդայում ճշմարտությունն է։ Ինչպես Լենինի օրոք, այնպես էլ այժմ, կուսակցությունը համարձակ ու հրապարակայնորեն քննադատել ու քննադատում է մեր բազմաբովանդակ կյանքում տեղ գտած սխալներն ու թերությունները։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում հետագա զարգացում է ստացել քննադատության ու ինքնաքննադատության վերաբերյալ կուսակցական, լենինյան մոտեցումը։ Քննադատության ու ինքնաքննադատության մեթոդի էությունն այն է, որ կոլեկտիվի, առանձին աշխատողի գործունեության բոլոր կողմերը ստանան օբյեկտիվ գնահատական, որպեսզի եղած թերությունները վերացնելու նպատակով համակողմանի վերլուծվեն։ Կուսակցությունը խիստ շահագրգռված է, որպեսզի բոլոր կոմունիստները ճշմարտացիորեն, լենինաբար օգտվեն քննադատության զենքից։ Կուսակցության կանոնադրությունը, ՍՍՀՄ սահմանադրությունը պահանջում են ամենավճռական հակահարված տալ քննադատության հետապնդման ամեն մի փորձի։

Կուսակցության անգնահատելի սեփականությունն ու հզորագույն զենքը մեր աշխատանքային պրակտիկայում հաստատված լենինյան ոճն է։ Այսօր դրա բնորոշ հատկանիշներն են կատարողականության ու կարգապահության օրգանական զուգակցումը համարձակ նախաձեռնության հետ, պրակտիցիզմն ու գործարարությունը՝ մեծ նպատակների ձգտման հետ, մեր ընտրած ուղու պատմական առավելության նկատմամբ անվարան վստահությունը թերությունների հանդեպ սկզբունքային քննադատական վերաբերմունքի հետ։ Հիրավի, հոգատար վերաբերմունք մարդկանց նկատմամբ, անհանդուրժողականություն ամեն տեսակ անարդարությունների հանդեպ, վստահություն և պահանջկոտություն, գործարարություն և համարձակ որոնումներ՝ ահա այն ոճը, որը տիրապետում է մեր հասարակության մեջ։

Լենինը բազմիցս է շեշտել, որ կուսակցական ղեկավարման էությունը կադրերի ընտրությունն է ու կատարման ստուգումը։ ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ վերջին ժամանակներս բարելավվել է ղեկավար կադրերի որակական կազմն ու տեղաբաշխումը, հատկապես բարձրացել է կուսակցական, տնտեսական ու սովետական ղեկավարների պատասխանատվությունը։ Ամեն մի ղեկավար պետք է մշտապես անբիծ պահի այն վստահությունը, որ տածում են նրա նկատմամբ աշխատանքային կոլեկտիվը, կուսակցական կազմակերպությունը։

Իրողություն է, սակայն, որ զգալի թվով կուսակցական կազմակերպություններում պատշաճ մակարդակի վրա չի դրված կատարման ստուգման գործը։ Գրքում տեղին է շեշտված. «Դեռ ոչ բոլորն են յուրացրել այն հասարակ

ճշմարտությունը, որ ղեկավարման արվեստը այն չէ, որ ամեն առիթով դիրեկտիվ ցուցումներ հորինեն ու շռայլեն։ Ընդունելով որոշում, հարկավոր է հասնել դրա անշեղ կատարմանը սահմանված ժամկետում։ Հենց դրան պետք է օգնի վերահսկողության ուժեղացումը։ Եվ այդ վերահսկողությունը պետք է իրականացվի սիստեմատիկաբար ու օպերատիվորեն, վերևից ու ներքևից միաժամանակ» (էջ 386)։

Կուսակցությունը սովետական ժողովրդի կոլեկտիվ առաջնորդի իր բարձր կոչմանն արժանի լինելու, զանգվածներին վստահորեն ու ճշտորեն լենինյան կուրսով առաջնորդելու համար պետք է շարունակ հոգ տանի իր մարտունակության բարձրացման համար։ Ժողովածուի էջերում հանգամանորեն ցույց է տրված, թե կուսակցության մարտունակության համար ինչպիսի մեծ նշանակություն ունեն նրա սեփական վիճակը, կուսակցական շարքերի ամրությունը, որակը։ Հեղինակը շեշտում է, որ կոմունիստական կուսակցությունը ո՛չ միայն համախոհների, այլև համատեղ գործողների կուսակցություն է։ Փորձը անհերքելիորեն սովորեցնում է, որ կուսակցությանը ամուր գիտական կարգապահությունը հարկավոր է և՛ այն ժամանակ, երբ նա ժողովրդական զանգվածներին հեղափոխության է տանում, և՛ այն ժամանակ, երբ նա մասսաների գլուխ անցած պայքարում է սոցիալիստական հասարակություն ստեղծելու համար, և՛ կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաընթացքում։

Գրքում մերկացված են բուրժուական գաղափարախոսների, աջ ու «ձախ» ռևիզիոնիստների մտայնությունների այն անհիմնությունը թե իբր կուսակցության ղեկավար դերի մեծացման մարքս-լենինյան դրույթը հակասում է դեմոկրատիային, վնասում հասարակական այլ կազմակերպությունների իրավունքների ու ֆունկցիաների դրսևորմանը։ Իրականում, ինչպես այդ խոր հիմնավորվածությամբ ցույց է տվել ընկեր Լ. Ի. Բրեժնևն իր աշխատություններում, կառավարող մարքս-լենինյան կուսակցությունն ըստ ամենայնի խրախուսում ու աջակցում է պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեությունը նոր հասարակարգի կառուցման մարզում։ Կուսակցության կարևոր խնդիրը իրոք այն է, որպեսզի խթանի սոցիալիզմի քաղաքական սիստեմի բոլոր օղակների ակտիվացմանը, բարելավի այդ հասարակական ինստիտուտների աշխատանքը, բարձրացնի պատասխանատվությունը սահմանված իրավասության շրջանակներում։

Կուսակցական կյանքի լենինյան սկզբունքները ստուգվել ու հաստատվել են ՍՄԿԿ, եղբայրական կոմունիստական կուսակցությունների փորձով։ Փաստերը վկայում են, որ կոմունիստները հաղթում են այնտեղ, որտեղ կուսակցությունը հետևողականորեն կատարում է բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ավանգարդային դերը, որտեղ պահպանվում են ներկուսակցական նորմերը, որտեղ կուսակցությունը հետևողականորեն ամրապնդում է իր քաղաքական, կազմակերպական ու գաղափարական միասնությունը։ Կուսակցության դերի ամեն մի նսեմացում, կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներից հեռացում հանգեցնում են լուրջ անհաջողությունների։ «Լեհաստանի իրադարձությունները վերստին համոզում են,— ասվեց ՍՄԿԿ XXVI համագումարում,— թե կուսակցության համար, նրա ղեկավար դերի ամրապնդման համար որքան կարևոր է զգայուն կերպով ունկնդրել մասսաների ձայնին, վճռականորեն պայքարել բյուրոկրատիզմի, վոլյունտարիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ, ակտիվորեն զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, հավասարակշռված, ռեալիստական քաղաքականություն վարել արտաքին տնտեսական կապերում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 14)։

Մեր լենինյան կոմունիստական կուսակցությանը բնորոշ են գործի նկատմամբ նորարարական մոտեցումը, կյանքում մշտապես ծագող խնդիրների ստեղծագործական լուծումը։ Ընթերցողի առջև վառ կերպով պատկերվում են այն կարևոր ընդհանրացումներն ու հետևությունները, որոնցով համալրվել է կուսակցության տեսական զինանոցը։ Կուսակցությունը սրբորեն հետևում է իր մեծ հիմնադրի ու ուսուցչի նշանաբանին՝ չի կարող դոգմատիզմ լինել այնտեղ, որտեղ դոկտրինայի գլխավոր ու միակ չափանիշը կյանքն է, համապատասխանումը հասարակական-տնտեսական զարգացման իրական պրոցեսի հետ։



Մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման օրինակ են կուսակցության XXIII, XXIV, XXV և XXVI համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունները։ Դրանցում ամփոփված է սոցիալիզմի կառուցման հսկայական փորձը, ցույց են տրված մեր հասարակության զարգացման գլխավոր փուլերի հաջորդականությունը, կոմունիստական շինարարության, արդի համաշխարհային պրոցեսի ամրապնդման պրոբլեմների վերլուծությունը։

Մեր կուսակցության տեսական մտքի ակնառու նվաճում է զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի մշակումը։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ցույց տվեց, որ զարգացած սոցիալիզմը կոմունիստական ֆորմացիայի անհրաժեշտ, օրինաչափ, պատմականորեն տևական ժամանակաշրջան է։ Ելնելով այդ սահմանումից, կուսակցությունը ճշտեց ու կոնկրետացրեց մեր ծրագրային նպատակների իրականացման ուղիներն ու ժամկետները, որոշեց տևական պատմական ժամանակաշրջանի ստրատեգիան ու տակտիկան։ Հասուն սոցիալիզմի ստեղծումը բնականաբար հարուցեց երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր զարգացման նոր խնդիրներ։ Կուսակցության մասին լենինյան ուսմունքում նշանակալի ներդրում է ընկեր Լ. Ի. Բրեժնևի մշակած ու հիմնավորած՝ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ՍՄԿԿ ղեկավար ու ուղղություն տվող դերի բարձրացման օրինաչափությունը։

Կուսակցության տեսական մտքի անկյունաքարը դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմն է, մարքս-լենինյան ստեղծագործական աշխարհայեցումը։ Հենց դրա շնորհիվ է մեր կուսակցությունը հաջողությամբ լուծում նոր, հասարակական պրակտիկայով առաջադրված պրոբլեմները։ Բացահայտելով կոմունիզմի կառուցման հիմնական օրինաչափությունները, ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ արդիականության արմատական պրոբլեմների ճշգրիտ ըմբռնման ու լուծման բանալին հանդիսանում են լենինիզմի գաղափարները։

Զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, կոմունիստները օբյեկտիվորեն են ընկալում աշխարհում տեղի ունեցող պրոցեսների էությունն ու հեռանկարը, ճիշտ հետևություններ անում հանուն դեմոկրատիայի, խաղաղության ու սոցիալիզմի։ Մարքս-լենինյան տեսության զարգացման նրկատմամբ կուսակցության անդուլ հոգատարության ակնառու դրսևորում են ՍՄԿԿ XXVI համագումարը, նրա ընդունած փաստաթղթերը, մասնավորապես կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը XXVI համագումարին։ Այս պատմական փաստաթուղթը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի օրինակ է, խոշոր ավանդ գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի մեջ։ Մարքսիզմ-լենինիզմի կենսականության, մշտական առաջընթացի վկայություն է նաև կուսակցության գաղափարատեսական ակտիվ գործունեությունը հասարակական կյանքի բոլոր բնգավառներում։

Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության, կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթների ուսումնասիրությունն ու զարգացումը գաղափարաքաղաքական դաստիարակության, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, աշխատավորների դասակարգային ինքնագիտակցության ու գաղափարական համոզվածության ներարկման անսպառ աղբյուր են։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի գրքում բացառիկ համոզչությամբ տրված է լենինյան պատգամների իրականացումը սովետների երկրի մեծագործություններում, հարազատ կոմունիստական կուսակցության պրակտիկայում, կուսակցություն, որին սիրելի առաջնորդը հպարտորեն անվանել է արդի դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։

---

# ՏՈԼՍՏՈՅԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԻ ԼՈՒՅՍԻ ՆԵՐՔՈ

**ՄԵՅԱ ՔԱՅԱԽՅԱՆ**
*Փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՄԵԾԱԳՈՒՅՆ հանճարներից մեկի՝ Լև Տոլստոյի, աշխարհայացքն ու ստեղծագործությունը մինչև օրս հարուցում են տարբեր մեկնաբանություններ ու կարծիքներ ո՛չ միայն հույժ բարդության, հակասականության և համապարփակության, այլև նրա աշխարհահռչակ հեղինակության և համաշխարհային գրական պրոցեսի վրա նրա ժառանգության ունեցած բարոյագեղագիտական վիթխարի ազդեցության պատճառով: Ամենից առաջ հենց սրանով է բացատրվում նրա հայացքների և ստեղծագործության շուրջ ողջ աշխարհում անընդհատ ծավալվող գաղափարախոսական պայքարը:

Տոլստոյի ուսումնասիրման լենինյան սկզբունքը հիմնված է նրա հայացքների ողջ հանրագումարի վերլուծության ու գնահատման վրա: Լենինը բացահայտել է Տոլստոյի «աղաղակող հակասությունները», բացատրելով դրանք ռուսական հեղափոխության պատմական ինքնատիպության առանձնահատկություններով: Գրողի հայացքների, ուսմունքի և ստեղծագործության հակասությունները համարելով դարաշրջանի պատմական կոնկրետ պայմանների արդյունք, Լենինը բացահայտեց նրա աշխարհայացքի և ստեղծագործության ուժեղ և թույլ կողմերի դիալեկտիկական կապը: Ամենայն խստությամբ քննադատելով «տոլստոյականությունը», նրա աշխարհայացքի թույլ, հետադիմական կողմերը՝ Լենինը միաժամանակ ցույց տվեց Տոլստոյի հայացքների հակասականությունը, որոշակիորեն նշեց, որ նրա ուսմունքը պետք է համարել սոցիալիստական, չնայած այն ուտոպիական է և հետադիմական:

«Տոլստոյի ուսմունքն անվերապահորեն ուտոպիական է և, իր բովանդակությամբ, ռեակցիոն բառիս ամենաստույգ և ամենախոր նշանակությամբ: Բայց այստեղից բնավ չի հետևում ոչ այն,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ այդ ուսմունքը սոցիալիստական չի եղել, ոչ էլ այն, որ նրա մեջ չեն եղել քննադատական տարրեր, ընդունակ արժեքավոր նյութ տալու առաջավոր դասակարգերի լուսավորության համար» (**ԵԼԺ**, հ. 20, էջ 124):

Գրողի հոգևոր որոնումների հակասականությունն ու բարդությունը, նրա աշխարհայացքի թուլությունները Լենինը քննում է ոչ թե որպես Տոլստոյ-մտածողի «սխալներ», այլ որպես այն բարդ պայմանների, այն օբյեկտիվ պատմական հակասությունների արտահայտություն, որոնցում ապրել և ստեղծագործել է հանճարեղ գրողը: «Լ. Տոլստոյը որպես գեղագետ և մտածող կատարելապես կերպավորվել է հենց այն ժամանակաշրջանում, որի անցումային բնույթը ծնել է թե Տոլստոյի երկերի և թե «տոլստոյականության» **բոլոր** հատկանշական գծերը» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 20, էջ 120):

Արվեստի առանձնահատկության խոր ըմբռնումը Լենինին հնարավորություն ընձեռեց հասկանալու Տոլստոյին՝ նրա ողջ անկրկնելիությամբ: Զանջատելով Տոլստոյ-մտածողը Տոլստոյ-արվեստագետից, Լենինը խորաթափանցորեն գնահատեց գրողի ստեղծագործական հարուստ աշխարհը: Տոլստոյի ստեղծագործությունը Լենինը քննել է դիալեկտիկորեն, կենդանի շարժման մեջ, այն հարաբերակցելով իրականությունում կատարվող սոցիալ-հոգեբանական պրոցեսների հետ: Պատահական չէ, որ Լենինը Տոլստոյին կոչել է «ռուսական հեղափոխության հայելի», ընդ որում հեղափոխության հետ կապելով գրողի ո՛չ միայն ուժեղ, այլև նշելով նրա կրոնական ուսմունքի թույլ, բացասական տարրերը:

Ինչպես ցույց է տվել Լենինը, Տոլստոյը և՛ իր ստեղծագործություններում, և՛ փիլիսոփայական, հրապարակախոսական, բարոյակրոնական հոդվածներում ու տրակտատներում բացահայտել է կապիտալիստական Ռուսաստանի սոցիալական կյանքի արատներն ու չարիքը, իր երկերում վարպետորեն նկարագրելով իրականությունը, ռուսական հետռեֆորմյան, նախահեղափոխական կյանքի հակասությունները, նա «...արտացոլել է եռացող ատելությունը, հասունացած ձգտումը դեպի լավը, անցյալից փրկվելու ցանկությունը,— և երազկոտության, քաղաքական անդաստիարակության, հեղափոխական անողնաշարության տհասությունը» (**ԵԼԺ**, հ. 17, էջ 255):

Վ. Ի. Լենինը Տոլստոյին գնահատում էր ո՛չ միայն որպես արվեստագետ, այլև մտածող և, սահմանելով նրա տեղը աշխարհի մեծագույն գրողների շարքում, ցույց տվեց Տոլստոյի նշանակությունն իբրև մտածողի, «...որը հսկայական ուժով, համոզվածությամբ, անկեղծությամբ **առաջադրել** է ժամանակակից քաղաքական և հասարակական կառուցվածքի հիմնական գծերը շոշափող բազմաթիվ հարցեր» (**ԵԼԺ**, հ. 20, էջ 45): Անհրաժեշտ է շեշտել այս հանգամանքը, քանի որ, չնայած այժմ արդեն Տոլստոյ-արվեստագետին չեն հակադրում Տոլստոյ-մտածողին, սակայն տակավին պատահում է, որ թերագնահատում են նրան իբրև մտածողի: Դեռևս չի հաղթահարվել գրողին հանճարեղ գեղարվեստագետ, սակայն իբրև մտածող թույլ համարելու միտումը: Բայց Տոլստոյը մեծ է և իբրև մտածող: Այլ կերպ չի էլ կարող լինել: Եթե նա մեծ մտածող չլիներ, այդպիսի հանճարեղ գրող չէր լինի: Տոլստոյի գրական ողջ ժառանգությունն անանջատելի է նրա աշխարհայացքից, որի ուժեղ և թույլ կողմերն արտացոլվել են նրա գեղարվեստական ստեղծագործություններում և հրապարակախոսության մեջ: Ե՛վ ստեղծագործության, և՛ ուսմունքի մեջ «բանականությունը» զուգակցվում է «նախապաշարմունքի» հետ, ուստի և Տոլստոյի հրապարակախոսության մեջ, ինչպես և գեղարվեստական ստեղծագործություններում, շատ բան հակասում է նրա ուսմունքի ոգուն, իր սոցիալ-քննադատական, ընդդիմադիր էությամբ հօդս ցնդեցնելով նրա «մի՛ կալ հակառակ չարին» փիլիսոփայությունը: Անժխտելի է և տոլստոյական փիլիսոփայության ներթափանցումը նրա ստեղծագործությունների գեղարվեստական հյուսվածքում, սյուժեի զարգացման մեջ, հերոսների ճակատագրում:

Գրողի փիլիսոփայական որոնումների մեկնակետը եղել է կյանքի իմաստի խնդիրը: Կյանքի իմաստի որոնումները կազմում են նրա հոգևոր կազմավորման կարևոր փուլը: Այս խնդրի հետ են կապված և նրա կրոնական որոնումները: Հավատի ու աստծո հարցը Տոլստոյին հետաքրքրել է իրեն հուզող գլխավոր հարցերի առնչությամբ, կյանքի ու մահվան, կյանքի իմաստի հետ: Բուն կրոնի նկատմամբ, բարոյականության հարցերից անջատ, գրողի վերաբերմունքը բավականին քննադատական է: «Մեզ ասում են՝ կրոնն ամեն ինչ բացատրել է. մի անգամ ընդունելով աստծո գոյությունը, դուք ամեն ինչ գիտեք. ինչպե՞ս է սկսվել աշխարհը, մարդը: Ինչի՞ց է, որ տարբեր են լեզուները, ինչի՞ց է գոյավորվում ծիածանը, ի՞նչ կլինի անդրշիրիմյան աշխարհում և այլն: Այս է ճշմարտությունը: Ամեն ինչ պարզ է, բացի բուն կրոնից, որն այնքան ավելի խավար է, որքան ավելի պայծառ է մնացած ամեն բան» (Л. Н. Толстой, ПСС (юбилейное), т. 7, стр. 127):

Տոլստոյի հավատը ոչ այնքան կրոնական, որքան գաղափարաբարոյական դիրքավորում է: Այստեղից և կրոնի ժխտումը և միաժամանակ ձգտումը գտնելու դրա մեջ իրեն հուզող հարցերի պատասխանները:

**Քրիստոնյայի հիշատակարանում** գրողը խոստովանում է, որ ինքը ոչ մի պատկերացում չունի այն մասին, թե ինչն է լավ, ինչը՝ վատ: Համոզվելով այս անգիտության մեջ, ինչպես և նրանում, որ ոչինչ չի կարող սովորեցնել մարդկանց և, եղք չգտնելով այդ վիճակից, նա «հուսահատվում և քիչ է մնում կախվի... հետո տառապալի ու բարդ տարբեր ուղիներով նա հանգում է քրիստոնեական վարդապետության հավատին» (նույնը, հ. 49, էջ 8):

Սակայն ճիշտ չէ կարծել, թե Տոլստոյը հաստատապես ընդունեց կրոնը, հավատը: Իսկական հավատացյալ նա չդարձավ և կյանքի վերջին շրջանում: Բավական է համեմատել տարբեր տարիների նրա արտահայտած կարծիքները, համոզվելու համար, որ էական տարբերություններ չկան դրանց միջև: 1858 թվականին Տոլստոյը գրել է. «Երկամյա մտավոր աշխատանքով ես գտա պարզ ու հին մի բան... ես գտա, որ կա անմահություն, որ կա սեր և որ պետք է ապրել այլ բանի համար, հավիտենապես երջանիկ լինելու համար: Այս հայտնագործություններն ինձ զարմացրին քրիստոնեական կրոնի հետ ունեցած նմանությամբ, և ես, փոխանակ այդ հայտնագործություններն ինքս անեմ, սկսեցի որոնել դրանք Ավետարանում, բայց այնտեղ չգտա» (հ. 60, էջ 293): Նա ասում է, որ սիրում ու հարգում է կրոնը և գտնելով, որ առանց դրա մարդը չի կարող ոչ լավը լինել, ոչ երջանիկ, ամենից շատ ցանկանում է ինքը հավատացյալ դառնալ, բայց ապարդյուն: Տոլստոյը եզրակացնում է. «...կյան-

քըն է ինձ համար կրոն ստեղծում և ոչ թե կրոնը՝ կյանք» (հ. 60, էջ 294)։ Շատ գրառումներում մենք գտնում ենք ո՛չ միայն տարակուսանք ու կրոնական ավանդական պատկերացումների ժխտում, այլև հավատացյալ դառնալու անհնարինության խոստովանություն։

Տոլստոյի կրոնական որոնումներում տատանումները հավատի և անհավատության միջև ամենից առաջ արդյունք են այն բանի, որ նա ընդունում է կրոնական դավանանքի սոսկ բարոյագիտական կողմը, ամբողջովին ժխտելով դրա էությունը։ Չպետք է մոռանալ, որ Վ. Ֆ. Ասմուսը Տոլստոյի կրոնական վարդապետության յուրահատկությունը համարել է այն, որ այդ կրոնը համարյա ամբողջովին հանգում է բարոյագիտության։ Եվ, որովհետև գրողի հավատը սերտորեն կապված է գաղափարաբարոյական դիրքորոշման հետ, նա, շարադրելով կրոնի վերաբերյալ իր հայացքները, միաժամանակ խիստ քննադատում է ուղղափառ եկեղեցու պաշտոնական վարդապետությունը։ Տոլստոյի կրոնասիրության կոչը յուրատեսակ բողոք է ընդդեմ այն բանի, որ կրոնը զրկվել է իր նախասկզբնական բարոյագիտական բովանդակությունից։ Պատահական չէ, որ Վ. Ի. Լենինը, նշելով եկեղեցու՝ տոլստոյական- քննադատության ուժն ու համոզչականությունը, բացահայտեց կրոնի մեջ եկեղեցու՝ տոլստոյական քննադատության հակասականությունը։ Մերժելով հավատի եկեղեցական կերպը՝ եկեղեցական վարդապետությունը, նա կոչ էր անում ամրապնդել հավատի բուն սկզբունքը, հավատ աստծո՝ հոգեպես հղկված, բարոյապես մաքրված նոր ըմբռնման նկատմամբ։

Բարոյական օրենքով էր Տոլստոյն ստուգում մարդու բոլոր արարքները, բարոյական գործունեությունը համարելով նրա գերագույն կոչումը։ «Բարոյական օրենքի պարզաբանումը մարդկության ո՛չ միայն գլխավոր, այլև միակ գործն է» (հ. 25, էջ 226)։ Կրոնաբարոյական օրենքն ըստ Տոլստոյի բնորոշում է մարդկային կյանքի բոլոր դրսևորումները— ընտանեկան, հասարակական-քաղաքական, միջազգային, տնտեսական։ Այս օրենքն ընդհանուր է բոլոր մարդկանց համար և հիմնականում հանգում է հետևյալին. ամեն մի մարդ չպետք է ուրիշին անի այն, ինչ իրեն չի կամենում։

Տեսնելով ժամանակի հասարակության բարոյազրկությունն ու հանցավորությունը, բուռն կերպով ցանկանալով գտնել շուրջը տիրող չարիքն արմատախիլ անելու միջոցներ, Տոլստոյը ձեռնարկում էր Քրիստոսի վարդապետության նոր մեկնաբանման, հավատալով, որ այն է մարդկության միակ ելքը, քանի որ, գրողի կարծիքով, քրիստոնեությունը շոշափում է ո՛չ միայն անձնական փրկության, այլև համընդհանուր, պետական հարցեր։ Տոլստոյը գտնում էր, որ իրական քրիստոնեական վարդապետությունն ընդհանուր ոչինչ չունի եկեղեցական պաշտոնական վարդապետության հետ, քանի որ վերջինս խեղաթյուրում է այն։ Բացի դրանից գրողը հաստատում էր, որ «հավատը մերժում է իշխանությունն ու կառավարությունը, պատերազմները, ավարը, գողությունը, իսկ այդ ամենը կառավարության բովանդակությունն են։ Դրա համար իսկ կառավարությունը չի կարող չցանկանալ բռնադատել հավատը։ Եթե չբռնանան, թույնը կթունի» (հ. 48, էջ 195)։

Դեռևս 1855 թվականին Տոլստոյը գրել է, որ ինքն իրեն ունակ է համարում կյանքը նվիրաբերելու իրեն հայտնված նոր, մեծ առաքելությանը՝ հիմնելու «նոր, մարդկության զարգացմանը համապատասխան կրոն, Քրիստոսի կրոն, սակայն հավատից ու խորհրդավորությունից զտված, գործնական կրոն, որը խոստանում է երանություն ոչ թե ապագայում, այլ երանություն է շնորհում երկրին» (հ. 47, էջ 37)։

Քարոզելով բարու, այլոց համար ապրելու իր տեսությունը, Տոլստոյը անձնական երջանկությունից հրաժարվելու կոչ չէր անում, հնարավոր համարելով «ինքնուրացման» զուգակցումը կենսասիրության, կյանքի բոլոր ուրախությունների հետ։ Ինքնուրացման կոչ անելով, նա նկատի ուներ ոչ թե հրաժարումն կյանքի բարիքներից հանուն աստծո հետ հաղորդակցումը մոտեցնելու, ինչպես քարոզում է կատարյալ ճգնավորությունը, այլ սահմանափակում սոսկ հույժ անճաճ, սեփական բավարարությանը ծառայող պահանջմունքների, որոնք խանգարում են ապրել ո՛չ միայն իր, այլև այլոց համար։ 1879 թվականի հուլիսին Ֆետին ուղղած նամակում այս առիթով Տոլստոյը գրել է։ «Ես չեմ ժխտում ոչ իրական կյանքը, ոչ այդ կյանքն ապահովելու համար անհրաժեշտ աշխատանքը, բայց ինձ թվում է, որ իմ և ձեր կյանքի մեծ մասը լցված է ոչ թե բնական, այլ դաստիարակությամբ արհեստականորեն պատվաստված և մեր կողմից իսկ հնարված, սովորական դարձած պահանջմունքներով, և որ այդ պահանջմունքների բավարարմանը նվիրված աշխատանքի $^{9}/_{10}$-ը ապարդյուն աշխատանք է» (հ. 62, էջ 493)։

Մեծ մտածողը շատ վաղ ըմբռնեց կյանքի չարիքը և ծանր ապրեց իր սոցիալական միջավայրի հետ եղած խոր աններդաշնակությունը, ամեն կերպ ջանալով մոտենալ հասարակ մարդկանց, ժողովրդին։ 1853 թվականի օրագրում նա գրել է. «Հասարակ ժողովուրդը...



մեզնից շատ բարձր է կանգնած իր աշխատանքով լեցուն կյանքով» (հ. 46, էջ 184)։

Շրջապատի հետ գժտվելը Տոլստոյը նկարագրել է **Խոստովանության** մեջ։ Գրողի հակադրությունն արիստոկրատական ապրելակերպի աննպատակայնությանը, հարուստների ու աղքատների, կալվածատերերի ու գյուղացիների շահերի անհամատեղելիության նրա ըմբռնումն արտացոլվել են նրա գեղարվեստական ստեղծագործություններում։ Նեխլյուդովը (**Կալվածատիրոջ առավոտը**), երազելով թեթևացնել գյուղացիների կյանքը, անհանգստությամբ խորհում էր, թե ինչու գյուղացիները չեն հավատում իրեն։ Նիկոլայ Ռոստովը ջանում է ներդաշնակել կալվածատերերի ու գյուղացիների շահերը։ Եվ միայն Լևինն է համոզվում, որ անհնար է հաղթահարել կալվածատիրոջ նկատմամբ գյուղացիների անվստահությունը, քանի որ նրանց շահերն անհամատեղելի են։

**Ուրեմն ի՞նչ անենք, Մեր ժամանակի ստրկությունը, Թագավորին և նրա օգնականներին, Չեմ կարող լռել, Ժամանակն է հասկանալու, Աստվածային արքայությունը մեր ներսում է** և այլ տրակտատներում ու հոդվածներում նույնպես, ինչպես իր լավագույն գեղարվեստական ստեղծագործություններում, Տոլստոյը բացահայտել և խարազանել է չարը, բռնությունը, հասարակական հարաբերությունների անարդարությունն ու անճշտությունը, բանվորների ու գյուղացիների անողոք շահագործումը, արտահայտել իր զայրալի բողոքը ժողովրդի ծանր վիճակի համար՝ նկարագրելով թշվառության, աղքատության ու սովի դաժան պատկերներ։ Այս բոլոր ստեղծագործություններում նա սևեռուն ուշադրություն է նվիրել ո՛չ միայն հասկանալու իր ժամանակի հասարակական կառուցվածքը, հասկանալու, թե ինչո՛վ է ապրում և ի՛նչն է պահպանում ցարական Ռուսաստանի պետական կարգը, այլև խոր անկեղծությամբ վերանայել է սեփական հայացքները հասարակական, սոցիալական-տնտեսական, կրոնական ու բարոյական խնդիրների հետ կապված իրեն հուզող հարցերի վերաբերյալ։

Իտալո-հաբեշական պատերազմի ժամանակաշրջանում նա գրում էր ագրեսորներին սանձահարելու անհրաժեշտության մասին. «Ինչո՞ւ ենք մենք այդ մարդկանց հանգիստ թողնում և չենք հարձակվում նրանց վրա, չենք նետում նրանց (այդ բոլոր կայսրներին, արքաներին, մինիստրներին, գեներալներին) զսպիչ հաստատությունները։ Մի՞թե ակնհայտ չէ, որ նրանք մտահղանում և նախապատրաստում են ամենասարսափելի չարագործությունը և որ, եթե մենք չկասեցնենք նրանց հիմա, չարագործությունը կկատարվի եթե ոչ այսօր, ապա վաղը» (հ. 31, էջ 195—196)։ Տոլստոյը երազում էր այն ժամանակվա մասին, երբ թնդանոթները, սրերը, ամրոցները կմնան իբրև «հին հուշարձաններ»։

Տոլստոյի մերկացնող հզոր ուժն ուղղված էր նաև ժողովուրդների գաղութային ստրկացման դեմ։ **Ուրեմն ի՞նչ անենք** տրակտատում ռուս մեծ գրողը մերկացնում էր գաղութային կեղեքման բազմաթիվ եղանակներն ու ձևերը, հանդես գալիս ԱՄՆ-ում նեգրերի նկատմամբ ցուցաբերվող բարբարոսական վերաբերմունքի դեմ։

Տոլստոյը նկարագրել է, թե ինչպես բուրժուական պետությունների կառավարությունները զավթում, կողոպտում են ուրիշների տերիտորիաները, պետությունները, որոնք «միշտ կանգնած են իրար դեմ-հանդիման՝ ցցված մագիլներով ու բաց երախներով և սպասում են լոկ այն բանին, որ մեկն ու մեկը դժբախտանա և անզորանա, որպեսզի հնարավոր լինի իր համար նվազագույն վտանգով հարձակվել նրա վրա և հոշոտել» (հ. 90, էջ 432)։

Տոլստոյը չէր կասկածում, որ եղած կենսակարգը կկործանվի։ Բացահայտորեն ոչ ոքից և ոչնչից չվախենալով, նա մերկացնում էր կառավարությունը, իշխանությունը։ «...Այժմ մեր ժամանակի ամենաքիչ դատող ամեն մի մարդ անգամ» տեսնում է «կյանքը նախկին հիմքերի վրա շարունակելու անհնարինությունը, կյանքի ինչ-որ նոր ձևերի հաստատման անհրաժեշտությունը» (հ. 28, էջ 285)։ Եվ, չնայած իր աշխարհայացքի թուլության պատճառով . նա չէր տեսնում բուրժուական հասարակությունն ու պետությունը հեղափոխության միջոցով տապալելու հնարավորությունը և քարոզում էր քրիստոնեական գիտակցության զարթոնքի անհրաժեշտությունը, գտնում էր, որ «դժվար թե որևէ հեղափոխություն ժողովրդի մեծ զանգվածների համար առավել աղետալի լինի», քան այն կյանքը, որ նա քարշ է տալիս (հ. 28, էջ 285)։ Գրողն ընդունում էր հեղափոխության անխուսափելիությունը և դրա հետ էր կապում ժողովրդի ազատագրումը կյանքի ծանր պայմաններից, բայց միաժամանակ նա բացասաբար էր վերաբերվում հեղափոխական պայքարին։

Նա դեմ էր հեղափոխական պայքարին, գտնելով, որ եթե պետությունը հասկանա, որ այն անխուսափելի է և հրաժարվի բռնությամբ չարին հակառակվելուց, կվերանա և հեղափոխության անհրաժեշտությունը։ Քանի դեռ պետությունը բռնությամբ է պատասխանում չարին, անօգուտ է հեղափոխական ամեն մի պայքար, որովհետև գրողի կարծիքով այն կաստակցնի իշխանության այդ բռնությունը և, վեր-

չին հաշվով, ժողովուրդն ավելի շատ կտառապի:

Տոլստոյը քարոզում էր ոչ թե մի՛ կալ հակառակ չարին, այլ՝ բռնությամբ մի՛ կալ հակառակ չարին: Ուստի և խորհուրդ տալով չընդունել կառավարությունը տապալելու ձգտող խոռվարարներին, նա միաժամանակ կոչ էր անում չհնազանդվել կառավարությանը: «Ասես նըրանց թվում է, թե ոչ մի ընտրանք իսկ չկա և որ միայն մի ճանապարհ կա— ստրկական հնազանդություն» (հ. 28, էջ 163):

**Երեք ճշմարտություն** հոդվածում անողոք մերկացնելով ցարական իշխանության դաժանությունն ու անարդարությունը, նրա կողոպտչական, հակաժողովրդական քաղաքականությունը, գրողը եզրահանգեց. «Պետք է չտապալել կառավարությունը, չպայքարել դրա դեմ... այլ ուղղակի ապրել, ասես թե կառավարություն չկա և չենթարկվել ո՛չ այն կառավարությանը, որն այժմ կա, ո՛չ նրան, որը հետո է լինելու, որպիսին էլ այն լինի» (հ. 36, էջ 402):

Սարսափով ու հուսահատությամբ Տոլստոյը մտածում էր այն մասին, թե քանի որ ինքն օգտվում է այնպիսի բարիքներից, որոնցից զուրկ է մեծամասնությունը, ուրեմն ինքը մասնակից է կառավարության չարագործություններին, քանի որ այդ ամենն իբր արվում է իր իսկ հանգստության համար, «մեկուսացնելու համար նրանց, ովքեր կուզեին խլել ինձնից այն, ինչից ես օգտվում եմ» (հ. 37, էջ 95):

Կարդալով Տոլստոյի հոդվածներն ու տրակտատները՝ համոզվում ենք, որ իր հրապարակախոսությամբ ևս նա հանդես է գալիս ո՛չ միայն որպես համընդհանուր սիրո ու հնազանդության կոչող և վերացական հումանիզմի կողմնակից ու քարոզիչ, համոզված, որ բռնությունը սոցիալական պրոբլեմների լուծման միջոց չէ: Նա ինքնակալության, շահագործման, սոցիալական անհավասարության, դեսպոտիզմի կրքոտ մերկացնող է: Գրողի ստեղծագործություններում անքակտելի են սոցիալ-մերկացնող և բարոյական-փիլիսոփայական միտումները: Տոլստոյի աշխարհայացքի ո՛չ միայն ուժեղ, այլև թույլ կողմերն են դրսևորվել նրա ստեղծագործություններում, ընդ որում ո՛չ միայն այնպիսի գործերում, ինչպես, օրինակ, **Տերն ու մշակը, Կեղծ կտրոնը, Կոշկակարն ու հրեշտակը, Ճարպամոմը,** որոնցում նույնիսկ Տոլստոյի հանճարն անզոր եղավ հաղթահարելու գեղարվեստական կեղծիքը: Գրողի աշխարհայացքի թույլ կողմերն իրենց կնիքն են դրել նույնիսկ նրա լավագույն ստեղծագործությունների վրա:

**Պատերազմ և խաղաղություն** էպոպեայում, որ տոգորված է պատմափիլիսոփայական թեմաներով, դրսևորվել են գրողի հայացքները պատմության և նրա շարժիչ ուժերի հարցերն արծարծելիս: Նա ելնում էր «նախասահմանման օրենքից», որը, նրա խոր համոզմամբ, կառավարում է պատմությունը: Վեպի մի շարք պատկերներում հաստատվում, պաշտպանվում է տարերային, «երամային» գործոնի դերը պատմական իրադարձություններում:

Անողոքաբար պսակազերծելով Նապոլեոնի պաշտամունքը, բացահայտելով նրա գործունեության իրական նպատակը, մեծ մասամբ գաղափարապես ճիշտ լուսաբանելով այդ կերպարը, Տոլստոյը ձերբազերծել է Նապոլեոնին իր արարքների պատասխանատվությունից: Նապոլեոնը հաճախ հանդես է գալիս որպես ճակատագրի կույր գործիք: Նա ճակատագրով նախասահմանված էր ժողովուրդների դահճի մռայլ, անազատ դերի համար,— գրել է նա:

Գրողի աշխարհայացքի ուժն ու թուլությունն արտացոլվել են նաև Կուտուզովի կերպարում, դրսևորելով նրա նկարագրի ներքին հակասությունները: Սիրո քրիստոնեական-մարդասիրական տեսությունն իր կնիքն է դրել վեպի շատ էպիզոդների, նույնիսկ Անդրեյ Բոլկոնսկու կերպարի վրա, որոշ չափով խախտելով նրա գեղարվեստաբարոյական ամբողջականությունը: Գեղարվեստական մեծ համոզչականությամբ բացահայտելով իր հերոսի բարդ ներաշխարհը, օժտելով նրան խորաթափանց խելքով, անվախությամբ, արտակարգ տաղանդով, Տոլստոյը ո՛չ միայն հանգեցրեց նրան ամենքի նկատմամբ լիակատար ներման ու սիրո զգացումի, այլև «թույլ տվեց» նրան վայելել իր համար նորահայտ երջանկության բերկրանքն ու ուրախությունը:

Վեպի ողջ շարադրանքում պատմության ըմբռնման, կրոնաբարոյական հայացքների, բարոյական կատարելագործման կոչերի հետ կապված Տոլստոյի հայացքները հակադրվում են պատմականությանը, ժողովրդական պատերազմի՝ իրենց արտահայտչականությամբ բացառիկ պատկերներին, հոգեբանական խոր բնութագրումներին, քննադատական պաթոսին և գրողի նուրբ ու կծու սատիրային, որոնք ուղղված են նրանց դեմ, ովքեր հակադրվում են ժողովրդին:

**Աննա Կարենինա** վեպը նույնպես կրում է իր ստեղծողի աշխարհայացքի հակասականության կնիքը: Իրեն հատուկ գեղարվեստական արտահայտչականության ողջ ուժով ներկայացնելով ու մերկացնելով ստի, երեսպաշտության ու կեղծիքի վրա հիմնված դատարկ ու բարոյազուրկ ազնվականիրթ հասարակությանը, Տոլստոյն անողոք գնահատում է այն իրականությունը, որում ապրում է իր հերոսուհին: Մարդուն հակադրվող այդ սոցիալական կենսապայմանների մերկացնող նկարագրություններում իսկ դրսևորվել է գրողի աշխարհայացքի ուժը: Բայց խարանելով իր համար ատելի բարձրակիրթ բյուրոկրատական աշխարհը, մերկացնելով կյանքի չարիքն ու կեղծիքը, պատկերելով Աննային որպես բարձրաշխարհիկ հասարակության կեղծ բարեպաշտությանն ու բարոյականությանը համարձակորեն մարտահրավեր նետող հերոսուհու, Տոլստոյը միաժամանակ դատապարտել է նրան իր հայացքների մեկնակետից, դատապարտել բարոյական բարձրագույն արժույթների տեսանկյունից:

Աննան մեղավոր է ոչ թե մարդկանց, այլ բարոյականության վեհ օրենքի առաջ: Վ. Ի. Լենինը Տոլստոյի ստեղծագործության էական կողմերից մեկը համարում է այն, որ գրողն ընդունում է միայն բարոյականության բարձրագույն սկզբունքները: Այս դիրքորոշմամբ էլ գրված է վեպը: Եթե ուշադրությամբ խորամուխ լինենք վեպի տեքստի մեջ, կտեսնենք, որ մեր գրականության մեջ հաստատված՝ Կարենինի կերպարի «մեղադրական» մեկնաբանությունը հիմնավորված չէ: Կարենինն ապրում է այն սկզբունքներով, որոնք պաշտպանում է Տոլստոյը— բարոյականության հավերժական օրենքներով: Խարազանելով այլանդակ կենսակարգը, որը ծանրորեն ճնշում է մարդուն և հարկադրում ենթարկվել «բարձր հասարակության» պայմանականությունների պահանջներին, Տոլստոյը նկատի ունի ո՛չ միայն և ոչ այնքան Աննային, որքան Կարենինին:

Գրողի աշխարհայացքի թույլ կողմերը նեըազդել են նաև Լևինի կերպարի վրա: Նա խորհում է սոցիալական շատ հարցերի մասին: Սոցիալական խոր հակասությունները, որոնց բախվում է նա իր կալվածքում, նրան հանգեցնում են այն մտքին, որ անհրաժեշտ են արմատական փոփոխություններ ագրարային ռեֆորմի միջոցով: Սակայն համոզվելով, որ անհնար է համատեղել գյուղացիների ու կալվածատերերի շահերը, Լևինը խորապես հիասթափվում է: Որոնելով և չգտնելով իրեն տանջող հարցերի պատասխանը՝ նա հասնում է այնտեղ, որ ցանկանում է ինքնասպան լինել: Եվ միայն «հոգու համար, ճշմարտացի, աստվածահաճո ապրող» մուժիկի կյանքի մասին պատահական պատմվածքն է բացահայտում նրան կյանքի իմաստը և փրկում ինքնասպանությունից:

Այսպես, իր հերոսին հասցնելով ժողովրդի գոյություն ունեցող կենսապայմանները փոխելու, սոցիալական անհավասարությունը և դրա հիման վրա ծագող բախումներն ու հակասությունները վերացնելու անհրաժեշտության գիտակցմանը, Տոլստոյն իր հերոսին ի վերջո հանգեցնում է «աստվածային» ելքին, որպես սոցիալական պրոբլեմների լուծման միակ միջոց:

Գրողի աշխարհայացքին հատուկ «աղաղակող հակասությունները» հատկապես ցայտուն են արտահայտվել **Հարություն** վեպում: Սոցիալ-քաղաքական սրությամբ աչքի ընկնող այս ստեղծագործության մեջ վիթխարի ուժի է հասել Տոլստոյի մերկացուցիչ պաթոսը: Ծատ միջադեպեր, դատարանի տեսարանը, բանտային կյանքի պատկերները բացահայտում են իրականության սոցիալական խոր հակասությունները: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, Տոլստոյն անողոքաբար քննադատում է կառավարության բռնությունները, բացահայտում պետական կառավարման ու դատարանի կատակերգայնությունը: Սակայն, բարձրացնելով իր բողոքի մերկացնող ձայնն ընդդեմ գոյություն ունեցող սոցիալական կարգի, օժտելով վեպը վիթխարի պայթուցիկ ուժով, գրողը հանգում է այն եզրակացության, որ անհրաժեշտ է վերացնել աղքատությունն ու տառապանք ծնող հասարակությունը: Միաժամանակ վախենալով ընդհարումների դաժանությունից, Տոլստոյը սքողում է պայքարի անհրաժեշտությունը, փորձելով համոզել, թե հնարավոր է խաղաղ, քրիստոնեական ելքը:

Սոցիալական չարիքի խիստ անողոք մերկացման և համընդհանուր սիրո քարոզի այս միահյուսվածքում իսկ արտահայտվում էին Տոլստոյի աշխարհայացքի ուժեղ և թույլ կողմերը, հարուցելով անհաշտելի հակասություններ նրա՝ որպես կապիտալիստական շահագործման, կառավարական բռնությունների դեմ կրքոտ բողոքողի, մերկացնողի ու քննադատի մեծության և նրա միամտության միջև՝ «որպես մարգարե, որը հայտնագործել է մարդկության փրկության նոր դեղատոմսեր» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 17, էջ 253):

Այս առումով հետաքրքրական է Վ. Ի. Լենինի **«Վերապահության» հերոսները** հոդվածը, «պոտրեսովյան զորքի նոր ռազմիկ», մենշևիկ Վ. Բազարովի **Լ. Ն. Տոլստոյը և ռուսական ինտելիգենցիան** հոդվածի դեմ, որ լույս էր տեսել «Նաշա զարյա» ժուռնալում: Հեղինակն այստեղ հայտարարում է, թե «մեր ինտելիգենցիան միահամուռ կերպով իր խիղճն է համարում Տոլստոյին՝ Տոլստոյին ամբողջովին»: Բացահայտելով Վ. Բազարովի սխալականությունը՝ Լենինը միաժամանակ քննադատում է Մ. Նևեդոմսկու հոդվածը, ուր վերջինս, Տոլստոյին համարելով «համամարդկային գաղափարական սկզբունքի՝ խղճի սկզբունքի ամենամաքուր, ամենաավարտված մարմնացումը», հիացած նրա ամբողջականությամբ, եզրակացնում է. «...ինչպիսի՜ վսեմ, ինչպիսի՜ հզոր, միասնական մաքուր մետաղից ձուլված կեր-

պարանքով է կանգնած... Տոլստոյը միանական սկզբունքի այդ կենդանի մարմնացումը»: Նման ճարտասանների դեմ Իլյիչը զայրույթով գրել է. «Օ՜հ, գեղեցիկ է խոսում, բայց չէ՞ որ ճիշտ չէ: Ո՛չ միանական, ո՛չ մաքուր և ոչ էլ մետաղից է ձուլված Տոլստոյի կերպարանքը» (**ԵԼԺ**, էջ 113):

Եվ Տոլստոյին նվիրված իր հոդվածներում, բացահայտելով հանճարեղ գրողի համաշխարհային նշանակությունը, Վ. Ի. Լենինը ցույց է տվել նրան հատուկ հակասությունները:

«Ես ոչ միայն մտածում եմ,— գրել է Տոլստոյը,— որ շատ շուտով պետք է իրականանա Քրիստոսի օրենքների վրա հիմնված կյանքը... այլ համոզված եմ, որ դա է մեր քրիստոնյա մարդկության միակ փրկությունը լրիվ ոչնչացումից, և որ մենք հասել ենք քրիստոնեական այնպիսի վիճակի, որ ստիպված կլինենք ղեկավարվել այդ օրենքներով: Ավելին, ես մտածում եմ, որ լիովին պարզ է, եթե բոլորը հետեվեին Քրիստոսի օրենքներին, ապա աստվածային արքայությունը վաղուց հաստատված կլիներ: Դրա համար էլ մենք պարտավոր ենք այժմ իսկ ապրել այնպես, ասես այդ օրենքները են կառավարում աշխարհը» (հ. 65, էջ 239):

Գրողի՝ 80—90-ական թվականների կեսի փիլիսոփայական որոնումները արտացոլվել են նաև նրա դրամատիկական ստեղծագործություններում: Ուշ շրջանի պիեսների թեմաները ու պրոբլեմները համընկնում են **Աննա Կարենինայում, Հարությունում** և այլ ստեղծագործություններում արծարծված հարցերին ու գաղափարներին: Իր դրամաներում ևս Տոլստոյը շարունակում է մնալ կրքոտ բողոքող, հասարակական անարդարությունների համոզված քննադատ և մերկացնող այն աշխարհի բռնությունների ու ճնշման, որը երազում էր վերափոխել:

Լրջորեն խորհելով հասարակության սոցիալական վերակառուցման հարցերի մասին, ծանր ապրելով սոցիալական անհավասարությունը, Տոլստոյը յուրաքանչյուր մտածողի ու գեղագետի պարտքն ու պարտականությունն էր համարում գտնել հասարակական անարդարության հաղթահարման ուղիներ, այնպես անել, որ կյանքը մարդկանց, ողջ ժողովրդի համար «դառնա ավելի գեղեցիկ և ուրախ», ձերբազատելով նրան նվաստացումից ու ճնշումից:

Ըստ Տոլստոյի, գրողի հիմնական կոչումը կյանքում նորի բացահայտումն է: Սակայն այդ նորը, որպեսզի արվեստի ստեղծագործությանը տա իսկական հնչեղություն, պետք է օժտված լինի արժույթով, պետք է նրանց համար լինի բարօրության աղբյուր:

Ողջ կյանքում մաքառելով չարի դեմ, մերկացնելով ամեն բռնություն ու անարդարություն, Տոլստոյը ձգտում էր օգնել արդարացի հասարակարգի ստեղծմանը, որոնում էր հասարակական չարիքից ձերբազերծվելու ուղիներ: Գրողը համոզված էր, որ մարդը ծնված է երջանկության համար, ուստի և բոլոր ջանքերը պետք է ուղղել մարդկանց կյանքից վերացնելու սոցիալական անհավասարության հետ կապված դժբախտությունները:

Այսպիսով, ինչպես ասել է Վլադիմիր Իլյիչը, Տոլստոյի հայացքների և ուսմունքների մեջ եղած հակասությունները պատահականություն չեն, այլ այն հակասական պայմանների արտահայտություն, որոնց մեջ ընթանում էր XIX դարի վերջին շրջանի ռուսական կյանքը:

Կյանքի ճշմարտացիության ռեալիստական արտացոլումը գրողի ստեղծագործություններում լայն հնարավորություն ընձեռեց Տոլստոյին նկարագրելու այն ժամանակվա ռուսական իրականության իսկական պատկերը: Զուր չէր, որ պաշտոնական Ռուսաստանն այդքան ատում էր հանճարեղ արվեստագետին:

Տոլստոյը երազում էր անդասակարգ հասարակության մասին, ուր կմիավորվեն բոլոր մարդիկ, կվերանան այդ միավորմանը խոչընդոտող բոլոր արգելքները, և մարդիկ կհամախմբվեն համաշխարհային մեկ եղբայրության մեջ: Այդ ջերմ պատրանքը Տոլստոյը փայփայել է իր ողջ կյանքում:

Տոլստոյի երազած արդարացի հասարակությունն իրականություն դարձավ իր իսկ հայրենիքում, որի ստեղծած հոգևոր ժառանգությունը հիրավի մեր բազմազգ ժողովրդի սեփականությունն է:

---

# ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԴԵԿՐԵՏԸ ԵՎ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

**Հ. Ջ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ արդի փուլում, երբ շարունակվում է սպառազինությունների մրցավազքը, և միջազգային իմպերիալիզմը, ձգտելով համաշխարհային տիրապետության, ամեն րոպե ջանում է աշխարհի ժողովուրդներին ներքաշել կործանիչ միջուկային պատերազմի մեջ, սովետական պետությունը և կոմունիստական կուսակցությունն անշեղորեն հետևում են սովետների համառուսաստանյան II համագումարում հաստատված լենինյան պատգամներին: Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում հաշվետու զեկուցման մեջ նշեց.* «Պաշտպանել խաղաղությունը՝ միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր» *(ՍՄԿԿ XXVI* համագումարի նյութերը, *էջ 49—50):*

*Ահա այդ կենսական խնդրի լուծման համար հույժ կարևոր է նաև անցյալի պատմական փորձի ուսումնասիրումը, առավել ևս՝ հաշտության լենինյան դեկրետի նշանակության համակողմանի հետազոտությունը: Սույն հոդվածում, վերլուծելով հաշտության լենինյան դեկրետի արձագանքները անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլում, մենք նպատակ ունենք նաև բացահայտելու Անդրկովկասում հեղափոխական շարժումների և սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի պատմության մի էջը, քանի որ, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «բոլոր հարցերը, որոնց համար մասսաները զինված պայքար էին մղում 1905—1907 և 1917—1920 թվականներին, կարելի է (և պետք է) հետաքննել սաղմնային ձևով, այն ժամանակվա մամուլով» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 31, էջ 12):*

*1917 թ. հոկտեմբերի 25-ին, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, Պետրոգրադում հաղթանակեց զինված ապստամբությունը: Նույն օրն իսկ Պետրոգրադում բացվեց բանվորների և զինվորների դեպուտատների սովետների համառուսաստանյան II համագումարը, որի հռչակած դեկրետներում տրվեց բանվորների, զինվորների, գյուղացիների իղձերի ու ցանկությունների, ինչպես նաև Ռուսաստանի առջև ծառացած այն անհետաձգելի ու հրատապ խնդիրների պատասխանը, որոնց համար աշխատավոր ժողովուրդը ոտքի էր ելել՝ իրականացնելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը:*

*1917 թ. հոկտեմբերյան օրերին առաջին համաշխարհային պատերազմից արյունաքամ ու ծվատված Ռուսաստանի և աշխարհի աշխատավորության համար հրատապ նշանակություն ունեին հաշտության շուտափույթ կնքումը և իմպերիալիստական պատերազմի դադարեցումը:*

*1917 թ. հոկտեմբերի 26-ին, սովետների II համագումարի վերջին նիստում հաշտության մասին զեկուցմամբ հանդես եկավ Վ. Ի. Լենինը: Նա համագումարին ներկայացրեց հաշտության դեկրետի նախագիծը: Այդ դեկրետով դրվեց սովետական պետության արտաքին խաղաղասիրական քաղաքականության հիմքը: Հաշտության լենինյան դեկրետը, արտահայտելով պատերազմող երկրների աշխատավորության շահերը, կոչ էր անում անհապաղ սկսել բանակցու-*

թյուններ՝ առանց անեքսիաների ու կոնտրիբուցիաների դեմոկրատական հաշտություն կնքելու համար։ Դեկրետում տրվում էր անեքսիայի ճշգրիտ բնութագիրը, մերկացվում էին պատերազմի իմպերիալիստական բնույթն ու դրա սանձազերծողները, ցույց էր տրվում պատերազմից դուրս գալու ելքը (եռամսյա զինադադար, հաշտության հարցի համաժողովրդական քննարկում և այլն), վերացվում էին ցարական և ժամանակավոր կառավարության կնքած գաղտնի թալանչիական պայմանագրերը։ Հաշտության շուտափույթ կնքման պահանջը ուլտիմատիվ բնույթ չուներ և ուղղված էր ո՛չ միայն պատերազմող երկրների կառավարություններին, այլև ժողովուրդներին։ Հաշտության լենինյան դեկրետը հանդիսացավ Ռուսաստանի հեղափոխական ժողովրդի կամքի արտահայտությունը, ինչպես նաև սովետական դիվանագիտության կարևորագույն ծրագրային փաստաթուղթ (տե՛ս История дипломатии, т. III, М., 1965, стр. 53)։

Դեկրետի հռչակման հաջորդ օրն այն հրապարակվեց Պետրոգրադի բոլշևիկյան մամուլում, առանձին թերթիկով (տե՛ս «Правда», № 171, «Известия» ЦИК, № 208), հաղորդվեց ռադիոյով։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը և սովետների II համագումարի հռչակած դեկրետները, մասնավորապես հաշտության դեկրետը, ինչպես ամբողջ երկրում, նույնպես և Անդրկովկասում, հսկայական ազդեցություն ունեցան սոցիալիստական հեղափոխության հաղթական երթի իրականացման վրա։ Անդրկովկասի տարբեր դասակարգեր և կուսակցություններ ցուցաբերեցին իրենց առանձնահատուկ վերաբերմունքը այդ մեծագույն իրադարձությունների նկատմամբ։ Պետրոգրադի պրոլետարիատի հաղթանակը և սովետների II համագումարի ընդունած լենինյան դեկրետները հեղափոխական լիցք հաղորդեցին Անդրկովկասի աշխատավոր զանգվածներին։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, պետրոգրադյան իրադարձությունների լուրն ստանալուն պես, կոչ արեցին երկրամասի աշխատավորությանը հանդես գալ Պետրոգրադի հաղթական պրոլետարիատի և սովետների II համագումարի պաշտպանությամբ։ Բոլշևիկների ղեկավարությամբ բանվորների ու զինվորների մասսայական ցույցեր, միտինգներ ու ժողովներ էին տեղի ունենում ամենուրեք— Բաքվում, Թիֆլիսում, Երևանում, Փոթիում, Բաթումիում, Ալեքսանդրապոլում, Ելիզավետապոլում, Ալավերդում, Կարսում, Սարիղամիշում և այլուր, որոնց մասնակիցները ողջունում էին Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը, իրենց պատրաստակամությունը հայտնում պաշտպանելու Հոկտեմբերի վեհ գործը (տե՛ս Очерки ком. организации Закавказья, Тбилиси, 1967, стр. 373)։

Այդ օրերին անդրկովկասյան բոլշևիկյան մամուլը՝ «Кавказский рабочий»-ն, «Бакинский рабочий»-ն, «Բանվորի կռիվը», «Բրձոլան», «Հյումեթը», արտահայտելով երկրամասի աշխատավորության կամքը, պաշտպանում էր պետրոգրադյան իրադարձությունները, միաժամանակ ցույց տալիս դրանց հսկայական հեղափոխիչ ազդեցությունը Անդրկովկասում։ Այսպես՝ «Бакинский рабочий»-ի № 76-ում տպվեց Ստ. Շահումյանի գրած Բաքվի շրջանի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետի գործադիր կոմիտեի* կոչը, որտեղ ասված էր. «Նոր հեղափոխական կառավարությունը հրապարակել է մի շարք դեկրետներ՝ հաշտության, կալվածատիրական հողերն անհապաղ բռնագրավելու մասին և այլն։ Բոլորը, ովքեր ժողովրդին բարիք և հյուծված ու տանջված երկրում ամենաարագ կերպով խաղաղություն ու կարգ հաստատել են ցանկանում, պետք է անհապաղ ու վճռականորեն անցնեն նոր կառավարության, Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների կառավարության կողմը» («Бакинский рабочий», № 76, 4 նոյեմբերի)։ Իսկ «Кавказский рабочий»,-ի № 192-ում հրապարակվեց Թիֆլիսի զինանոցի բանվորների հա-

* 1917 թ. նոյեմբերի 2-ին Բաքվի սովետի ընդլայնված կոնֆերանսում վավերացվեց իշխանության փաստացի անցումը Բաքվի սովետին, ընտրվեց Գործադիր կոմիտե՝ կազմված բոլշևիկներից։



վանությունն արտահայտող հաղորդումը Պետրոգրադի սովետի և նրա վարած քաղաքականության նկատմամբ։

Այլ էր Անդրկովկասի բուրժուազիայի, կալվածատերերի բուրժուաազգայնական, ինչպես նաև մանրբուրժուական կուսակցությունների վերաբերմունքը բոլշևիկների կողմից իշխանության գրավման և սովետների II համագումարում ընդունված լենինյան դեկրետների, մասնավորապես հաշտության դեկրետի նկատմամբ։ Նրանք ճիգ ու ջանք չխնայեցին խեղաթյուրելու պետրոգրադյան իրադարձությունների իմաստը և սովետների II համագումարի ընդունած դեկրետները, թուլացնելու Մեծ Հոկտեմբերի հեղափոխական ազդեցությունը Անդրկովկասի աշխատավոր մասսաների վրա և խանգարելու սովետական իշխանության հաստատումը երկրամասում։ Այդ նպատակով ավելի մերձեցան Անդրկովկասի մանրբուրժուական և բուրժուաազգայնական կուսակցությունները (տե՛ս Г. К. Жвания, Великий Октябрь и борьба большевиков Закавказья за Советскую власть. Тбилиси, 1967)։ Այսպես, 1917 թ. հոկտեմբերի 28-ին Թիֆլիսի քաղաքային սովետի նիստում մենշևիկների, էսէռների, ֆեդերալիստների, դաշնակների ներկայացուցիչները կոչ էին անում լիկվիդացնել Պետրոգրադի հեղափոխությունը և նրա նվաճումները։ 1917 թ. նոյեմբերի 7-ին Կովկասյան ճակատի և թիկունքի բոլոր սովետներին ուղղված շրջաբերականով հանդես եկավ երկրամասի կենտրոնի նախագահը՝ մենշևիկյան պարագլուխներից մեկը՝ Գ. Գեգեչկորին։ Շրջաբերականում ասվում էր. «Պետրոգրադում սկսված քաղաքացիական պատերազմն սպառնում է լիակատար կործանում ռուսական հեղափոխությանը և նրա նվաճումներին։ Հայրենիքի և հեղափոխության միակ փրկությունը միասնական, լիիրավ իշխանության ստեղծումն է։ Այդպիսի իշխանությունը կարող է լինել միայն սահմանադիր ժողովը, որը կկարողանա տալ երկրին ազատություն և խաղաղություն» (ընդգծումը մերն է— Հ. Ա.)[1]։

1917 թ. նոյեմբերի 9-ին Կովկասյան երկրային սովետի արտակարգ նիստում մենշևիկների առաջնորդներ Ն. Ժորդանիան և Գ. Գեգեչկորին իրենց ելույթներում կրկին պաշտպանում էին նրանց, ովքեր պետրոգրադյան ապստամբությունը համարում էին ավանտյուրա։ (տե՛ս Г. Б. Гарибджанян, В. И. Ленин и большевистские организации Закавказья (1893—1924 гг.), Ереван, 1967, стр. 382)։

Այսպիսով, Անդրկովկասի հակահեղափոխական կուսակցությունները ժողովրդին մոլորեցնելու և բոլշևիկներին վարկաբեկելու համար կատաղի զրպարտչական արշավանք ծավալեցին պրոլետարական հեղափոխության և սովետների II համագումարի հռչակած հաշտության դեկրետի դեմ՝ կոչ անելով աշխատավոր մասսաներին իրենց ցանկությունների իրականացման հույսը դնել սահմանադիր ժողովի հրավիրման վրա։

Անդրկովկասի հակահեղափոխական ուժերի այդ տրամադրություններն արտահայտվեցին տեղի բուրժուական, էսէռամենշևիկյան և բուրժուաազգայնական մամուլում։ Այդ մամուլն առանձնապես կատաղի վայնասուն բարձրացրեց հաշտության լենինյան դեկրետի դեմ՝ քաջ գիտակցելով, որ այդ դեկրետը, արտահայտելով պատերազմից տառապած աշխատավորների իղձերն ու ցանկությունները, մի նոր, ավելի հզոր հեղափոխական ավյուն կհաղորդի նրանց։

Խեղաթյուրելով փաստերը՝ անդրկովկասյան բուրժուազիայի և նրա կամակատարների մամուլն սկզբնական շրջանում ձգտում էր ժողովրդից թաքցնել, իսկ այնուհետև նաև աղավաղել իրողությունը հաշտության դեկրետի և բոլշևիկների վարած արտաքին քաղաքականության վերաբերյալ։ Այսպես, Թիֆլիսի էսէռների օրգանը գրում էր. «Իշխանությունը զավթելուց հետո առաջին օրը նեթ Լենինը հայտարարում է, որ անհապաղ հաշտության սպասելն անհնար է, վճռական խաղաղասիրական քաղաքականությունը չի նշանակում պատերազմի դադարեցում։ Բայց չէ՞ որ այդ նույնը, նույնիսկ բառացի, այդ նույն արտահայտությամբ, ասում էին էսէռներն ու մենշևիկները» («Знамя труда», № 169, 28 հոկտեմբերի 1917 թ.)։

1 ՀՍՍՀ, ՊԿՊԱ, ֆ. 119, ց. 1, գ. 23, թ. 9։

Նրան ձայնակցում էր Թիֆլիսում հրատարակվող կովկասյան բանակի օրգան էսէռամենշևիկյան «Голос Краевого совета» թերթը՝ գրելով. «Անհապաղ հաշտությունն անհնար է։ Այդ ասում է ինքը Լենինը՝ ներկայիս պետրոգրադյան կառավարության գլուխը։ Կառավարությունը, ստանձնելով ռուսաստանյան հանրապետության կառավարման սանձերը, հանդես եկավ իր առաջին դեկլարացիայով՝ ուղղված հրաշքի սպասող ժողովրդին։ Նրա դեկլարացիան պարզ, հստակ և կարճ էր— անհապաղ հաշտությունն այժմ անհնար է» (№ 112, 28 հոկտեմբերի 1917 թ.)։

Իսկ Թիֆլիսի դաշնակցության օրգան «Молот»-ն այն միտքն էր պրոպագանդում, թե բոլշևիկների իշխանությունը ժողովրդին չի կարող տալ «ո՛չ շուտափույթ խաղաղություն, ո՛չ բավականաչափ հաց, ո՛չ կարգ, ո՛չ էլ իշխանության կազմակերպվածություն» (№ 21, 27 հոկտեմբերի, 1917 թ.)։

Նույն ոգով համանման մտքեր էին արտահայտում նաև Բաքվի բուրժուական օրգաններ «Каспий» և «Баку» թերթերը, որոնք կեղծ լուրեր էին տարածում բոլշևիկյան կուսակցության և Վ. Ի. Լենինի դեմ։

Անդրկովկասյան բոլշևիկները և նրանց մամուլը հանդես եկան լենինյան դեկրետը խեղաթյուրողների դեմ։ Այսպես, 1917 թ. նոյեմբերի 11-ին Թիֆլիսում, Անվտանգության կոմիտեի կողմից հրավիրված անդրկովկասյան կուսակցությունների և արհմիությունների խորհրդակցության մասնակիցներ, բոլշևիկներ Ֆ. Ի. Մախարաձեն, Ա. Մ. Նազարեթյանը, Մ. Գ. Ցխակայան հանդես գալով՝ բացահայտեցին հակահեղափոխական կուսակցությունների կեղծիքները, որոնք ուղղված էին բոլշևիկների կողմից իշխանության գրավման և սովետների II համագումարի ընդունած դեկրետների դեմ։ «Кавказский рабочий»-ն տպագրեց Մ. Գ. Ցխակայայի մերկացնող ելույթը, որտեղ մասնավորապես ասված էր. «ՌՍԴԲ(բ)Կ-ի Կովկասյան երկրային կոմիտեն մի անգամ ևս ազդարարում է, որ ինքը և նրա մեջ մտնող երկրամասի տեղական կազմակերպություններն ամբողջովին կանգնած են սովետների համառուսաստանյան II համագումարի որոշումների դիրքերում» (№ 200, 16 նոյեմբերի, 1917 թ.)։

Բաքվում տեղի բուրժուական «Баку» և «Каспий» թերթերի քննադատությամբ հանդես եկավ «Бакинский рабочий»-ն։ Վերջինս ցույց տվեց, որ «Տեղական թերթերն ամեն օր թավ տառերով տպում են ամեն ինչ՝ բոլշևիկներին վարկաբեկելու համար, սակայն ոչ մի խոսք այն դեկրետների մասին, որոնց համար բարձրացվել է ապստամբության դրոշը։ 1) Բոլոր ռազմաճակատներում զինադադարի անհապաղ հայտարարում՝ ազնիվ, դեմոկրատական հաշտության առաջարկով և մեր դաշնակիցների հետ եղած գաղտնի պայմանագրերի հրապարակում։ 2) Ամբողջ հողի անհատույց փոխանցում գյուղացիական կոմիտեներին...

Այս ամենի մասին ոչ մի խոսք,— շարունակում էր «Бакинский рабочий»-ն, բայց դրա փոխարեն ողջ բուրժուական մամուլը հնարել է ընկ. Լենինի ճառը Պետերբուրգի Բ. և Զ. Դ. սովետում, թե պատերազմը չի կարելի դադարեցնել» (№ 73, 1 նոյեմբերի, 1917 թ.)։

Այնուհետև «Бакинский рабочий»-ն պատճառաբանում է, թե ինչ նպատակով է բուրժուական մամուլը դիմում կեղծիքի։ Նա գրում է. «Այդ հերյուրանքը նախատեսված է զինվորների համար, որոնց փորձում են մի անգամ էլ հիմարացնել։ Բայց զինվորները լավ գիտեն բուրժուական մամուլի շատախոսներին։ Այդ ամենը... կարող է միայն ստիպել բանվորներին ու զինվորներին, այլ քաղաքների օրինակով՝ բոյկոտի ենթարկել տեղի «Баку» և «Каспий» թերթերը» (նույն տեղը)։

Թիֆլիսում հաշտության դեկրետը խեղաթյուրող մենշևիկների և էսէռների դեմ հանդես եկավ տեղի բոլշևիկյան օրգան «Բանվորի կռիվը»․ «Հրովարտակները մի-մի ապտակ են թե՛ իմպերիալիստական բուրժուազիային և թե մանր բուրժուական «սոցիալիստներին», հանձինս էսէռների ու մենշևիկների» (№ 40, 11 նոյեմբերի, 1917 թ.)։ Իսկ մի այլ համարում թերթն այն միտքն է արտահայտում, որ հաշտության դեկրետը չի համապատասխանում իշխող դասակարգերի շահերին ու ձգտումներին, ուստի և այդ դասակարգերը կատաղի հալածանք



են սկսել այդ դեկրետի դեմ, սակայն «...պրոլետարների և կիսապրոլետարների կուսակցությունը և նրանց կառավարությունը չեն կոչված ղեկավարվելու բուրժուազիայի ճաշակով» (№ 42, 14 նոյեմբերի)։ Քննադատելով նախկին բուրժուական ժամանակավոր կառավարության և համաձայնողական կուսակցությունների վարած «պատերազմ մինչև հաղթական վախճանը» քաղաքականության սնանկությունը՝ անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները նշում էին, որ նրանք չարտահայտեցին ժողովրդի կամքը խաղաղության հաստատման հարցում և այդ պատճառով էլ տապալվեցին։ Մինչդեռ նոր կառավարությունը խորապես ըմբռնելով ժողովրդի ցանկությունը՝ ամենից առաջ «գլխավոր ուշադրության առարկա դարձրեց հաշտության դեկրետը» («Բանվորի կռիվը», № 40, 11 նոյեմբերի, 1917 թ.)։

Այսպիսով, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլը, իր ուսերին կրելով տեղի բուրժուազիայի, նրա կամակատարներ էսէռամենշևիկյան և բուրժուաազգայնական մամուլի դեմ դժվարին պայքարի ծանրությունը, հաջողությամբ մերկացրեց նրանց զրպարտանքներն ու սուտը՝ ուղղված պրոլետարական հեղափոխության, հաշտության դեկրետի, բոլշևիկյան կուսակցության և Վ. Ի. Լենինի հասցեին։

Անդրկովկասում հեղափոխական պայքարի թափի ուժեղացման, երկրամասում սովետական իշխանության համար մղվող պայքարի, աշխատավոր մասսաների շրջանում լենինյան արտաքին քաղաքականության պրոպագանդման ու լուսաբանման, ինչպես նաև տեղի հակահեղափոխական ուժերի դեմ պայքարի գործում կարևոր նշանակություն ունեցան սովետների II համագումարի ընդունած հաշտության դեկրետի արտացոլումն ու պրոպագանդումը անդրկովկասյան բոլշևիկյան մամուլում։ Անդրկովկասյան բոլշևիկյան մամուլի օրգանները ո՛չ միայն արտատպեցին հաշտության դեկրետը* (1917 թ. նոյեմբերի 3-ին «Бакинский рабочий»-ն, 4-ին՝ «Բրձոլան», 8-ին՝ «Кавказский рабочий»-ն), այլև դրանցում խմբագրականներով ու հոդվածներով հանդես եկան ականավոր բոլշևիկներ՝ հանգամանորեն վերլուծելով հաշտության դեկրետը և ըստ արժանվույն գնահատելով լենինյան արտաքին քաղաքականության էությունն ու համաշխարհային նշանակությունը։ Այսպես, «Кавказский рабочий»-ն նոյեմբերի 4-ի խմբագրականում նշելով, որ սովետների II համառուսաստանյան համագումարը ճնշող մեծամասնությամբ կազմված էր ինտերնացիոնալիստներից, միաձայն ընդունեց հաշտության դեկրետը, այն համարեց ժամանակի մեծագույն պատմական ակտը՝ իրագործված ամբողջ աշխարհի մոլեգնած իմպերիալիստական բուրժուազիայի դեմ, իսկ «Բանվորի կռիվում» «Երկու հրովարտակ» խորագիրը կրող հոդվածով հանդես եկավ Սարգիս Կասյանը, որտեղ մանրամասն վերլուծելով լենինյան դեկրետը՝ Անդրկովկասի աշխատավորության էր լուսաբանում լենինյան խաղաղասիրական քաղաքականության էությունը (տե՛ս «Բանվորի կռիվը», № 42, 14 նոյեմբերի, 1917 թ.)։

Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլն իր էջերում արտացոլելով հաշտության դեկրետը՝ հատկապես շեշտում էր, որ, ի տարբերություն նախորդ բոլոր դիվանագիտական փաստաթղթերի, լենինյան դեկրետը դեմ է անեքսիաներին ու կոնտրիբուցիաներին։ Այսպես, «Բրձոլա»-ն գրում էր. «Արդարացի կամ դեմոկրատական հաշտություն կառավարությունը համարում է անհապաղ հաշտությունն առանց անեքսիաների և առանց կոնտրիբուցիաների» (№ 26, 4 նոյեմբերի, 1917 թ.), իսկ «Բանվորի կռիվում» զետեղված վերոհիշյալ հոդվածում Սարգիս Կասյանը մեկնաբանում էր անեքսիայի լենինյան ըմբռնումը. «...եթե մի ուժեղ կամ խոշոր պետություն միացնում է իրեն մի թույլ կամ փոքր ազգ՝ առանց վերջինիս պարզորոշ և ինքնակամ արտահայտված համաձայնության և ցանկության— ըստ հրովարտակի, անեքսիա է» (№ 42, 14 նոյեմբերի, 1917 թ.)։ Ապա Կասյանը հանգամանորեն ցույց է տալիս, որ բոլ-

* Հաշտության դեկրետը արտատպվեց մեր երկրի բոլշևիկյան կուսակցության օրգան հանդիսացող 98 թերթերում, իսկ Լենինի եզրափակիչ խոսքը՝ 16-ում։ Տե՛ս С. А. Андронов. Большевистская печать в трех революциях. М., 1978, стр. 324։

շևիկյան կառավարությունն անեքսիա է համարում նաև այն, որ այս կամ այն պետությունը ձգտում է ուժով ու բռնությամբ հպատակեցված պահել նախկինում իր գրաված երկիրը։ Հեղինակի կարծիքով, ամեն մի ժողովուրդ ինքը պետք է որոշի իր պետական գոյաձևը։ Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականների կողմից անեքսիայի լենինյան սահմանման պարզաբանումը մերկացնում էր երկրամասի իմպերիալիստական բուրժուազիայի և նրա կամակատարների կողմից գաղութային զավթումներն արդարացնելու բոլոր փաստարկները, որոնցով այդ հակահեղափոխական ուժերը տքնում էին դեմոկրատական հաշտության լենինյան գաղափարը ներկայացնել որպես անարդար ու միակողմանի, որն իբրև թե հղի էր նոր պատերազմներով։

Անդրկովկասի բոլշևիկյան թերթերն անդրադարձան նաև հաշտության լենինյան դեկրետի մյուս բոլոր կարևոր կետերին։ Այսպես, արտահայտելով այն միտքը, որ սովետական պետությունն առաջարկում է անհապաղ հաշտություն կնքել, Անդրկովկասի բոլշևիկյան պարբերականներն ապացուցեցին, որ այդ առաջարկությունն ուլտիմատիվ չէ և ժամանակ է տալիս պատերազմող կողմերին խորհելու, միաժամանակ հնարավորություն չի ընձեռում այդ երկրների իմպերիալիստական կառավարություններին խուսանավելու հաշտության լենինյան առաջարկից՝ անընդունելի լինելու պատճառաբանությամբ։ «Կարող է պատահել, որ կառավարությունները մեզ ոչինչ չպատասխանեն, բայց թող բոլորն իմանան, որ մենք ուլտիմատումներ չենք դնում, որոնք կարող են հեշտացնել կառավարությունների բ..ցասական պատասխանելը մեր ուղերձին» («Бакинский рабочий», № 75, 3 նոյեմբերի, 1917 թ.)։ Հաշտության դեկրետի մյուս կարևոր կետը, որին անդրադարձան Անդրկովկասի բոլշևիկյան պարբերականները, գաղտնի դիվանագիտության և պայմանագրերի (պայմանագրեր, որ կնքվել էին դեռ Նիկոլայ II-ի և ժամանակավոր կառավարության օրոք) վերացումն ու հրապարակումն էր։

«Կառավարությունը վերացնում է գաղտնի դիվանագիտությունը և հայտնում, որ բոլոր բանակցությունները վարելու է բաց կերպով, ամբողջ ժողովրդի առաջ» («Բրձոլա», № 26, 4 նոյեմբերի, 1917 թ.), իսկ «Բանվորի կռիվը» այն միտքն էր արտահայտում, որ «խաղաղության մասին մտածողն ու հոգացողը, դեմոկրատական խաղաղության իրագործողները պետք է լինեն ոչ թե արտաքին մինիստրության մութ անկյուններում գործեր շտկող դիպլոմատները և իշխող դասակարգի չարչիները, այլ ժողովրդական ներկայացուցիչները» (№ 42, 14 նոյեմբերի, 1917 թ.)։

Արտահայտվելով գաղտնի դիվանագիտության և թալանչիական պայմանագրերի վերացման օգտին՝ անդրկովկյան բոլշևիկյան թերթերը միաժամանակ նշեցին, որ կարիք չկա վերանայելու Ռուսաստանի միջազգային պայմանագրերի այն կետերը, որոնք վերաբերում էին այլ երկրների հետ տնտեսական ու բարի դրացիական հարաբերություններին։

Հաշտության լենինյան դեկրետում կոնկրետ առաջարկություններ էին արված խաղաղության կնքման, զինադադարի բանակցությունների վարման ժամանակի ու տեղի, ձևերի վերաբերյալ։

Այդ հարցերին ևս անդրադառնալով ու նշելով, որ զինադադարի ժամկետ է նշանակված 3 ամիս՝ անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլը ցույց տվեց, որ այդ ժամկետը սահմանված է այն բանի համար, որպեսզի նախ՝ պատերազմից հոգնած ժողովուրդներին ժամանակ տրվի հանգստանալու, երկրորդ՝ որ բոլոր երկրների ժողովրդական ներկայացուցիչներին հնարավորություն ընձեռվի մշակելու խաղաղության պայմանները։ Դրա հետ մեկտեղ թերթերը նշում էին, որ բոլշևիկյան կառավարությունը պատրաստ է հաշտության արագ կնքման համար ընդունելու նաև այլ առաջարկներ զինադադարի ժամկետի վերաբերյալ։ «Եթե առաջարկվի զինադադար ոչ թե 3 ամսով, այլ ավելի կարճ ժամկետով, ապա կառավարությունը պարտավոր է համաձայնել նաև ավելի կարճ ժամկետին» («Бакинский рабочий», № 75, 3 նոյեմբերի, 1917 թ.)։

Իսկ ինչ վերաբերում է զինադադարի բանակցությունների վարման տեղի ընտրությանը, անդրկովկասյան բոլշևիկյան պարբերականները նշում էին, որ բոլշևիկյան կառավարությունը, առաջարկելով պատերազմող կառավարություններին ու ժողովուրդներին անմիջապես սկսել բանակցությունները, «այդ նպատակի համար նշանակում է իրավասու իր ներկայացուցչին չեզոք երկրում» («Բանվորի կռիվը», № 42, 14 նոյեմբերի, 1917 թ.)։



Անդրկովկասյան բոլշևիկյան մամուլը, լուսաբանելով և պրոպագանդելով լենինյան դեկրետի հիմնական սկզբունքները, հետագայում ևս անդրադարձավ դրանց, իսկ այդ ժամանակ շատ կարևոր էին նաև հաշտության դեկրետի միջազգային հսկայական նշանակության բացահայտումն ու պրոպագանդումը Անդրկովկասի աշխատավորությանը, քանի որ տեղի ռեակցիոն ուժերը դեռևս շարունակում էին իրենց զրպարտանքները դեկրետի հասցեին՝ այս անգամ նսեմացնելով դրա միջազգային նշանակությունը։ Այսպես, Թիֆլիսի դաշնակցության օրգան «Հորիզոն»-ը գրում էր. «Նրանք (բոլշևիկները— Հ. Ա.) կարծում են՝ միայն դեկրետով կարելի է լուծել միջազգային հարաբերությունների խճճված կծիկը, սակայն բոլշևիկների հայտարարությունները Եվրոպայում հրդեհ չվառեցին, սոցիալ-դեմոկրատիան մնաց անշարժ» (№ 245, 16 նոյեմբերի, 1917 թ.)։ Անդրկովկասյան բոլշևիկյան թերթերն իրենց էջերում ցույց տվեցին թե՛ հաշտության լենինյան դեկրետի հսկայական միջազգային նշանակությունը և թե միջազգային սոցիալ-դեմոկրատիայի վերաբերմունքը հաշտության դեկրետի նկատմամբ, դրանով մերկացնելով բուրժուաազգայնական մամուլի հերյուրանքները։

Այսպես, ելնելով լենինյան այն դրույթից, որ սովետական իշխանության և դիվանագիտության կարևորագույն խնդիրն է՝ օգնել պատերազմող երկրների ժողովուրդներին ավելի ակտիվ մասնակցելու պատերազմի և հաշտության լուծման հարցին, «Բանվորի կռիվը» նշում էր, որ հաշտության դեկրետն ուղղված է ո՛չ միայն պատերազմող երկրների կառավարություններին, այլև ժողովուրդներին, որոնք անհամբերությամբ սպասում էին այդ դիվանագիտական փաստաթղթին։

Թերթը գրեց. «Բոլոր պատերազմող երկրների և ազգերի արյունաքամ եղած, քաղցի մատնված ժողովուրդներն անպայման պետք է ականջալեին կապիտալիստական աշխարհում առաջին բանվորագյուղացիական կառավարությունից անկեղծ ու վճռական քայլ տենչած խաղաղության նկատմամբ։

Եվ ահա Բ. Զ. և Գ. Խորհուրդների իշխանությունը՝ բոլոր պատերազմող երկրների կառավարությունների և ազգերի ժողովուրդներին առաջարկեց անհապաղ սկսել բանակցություններ արդարացի դեմոկրատական խաղաղության համար» («Բանվորի կռիվը», № 42, 14 նոյեմբերի, 1917 թ.)։ Շարունակելով այդ միտքը՝ «Кавказский рабочий»-ն իր հերթին դրվատեց լենինյան դեկրետի հսկայական միջազգային ինտերնացիոնալ նշանակությունը և հումանիստական էությունը՝ գրելով. «Հաշտության դեկրետը մի փաստաթուղթ է, որը ժողովուրդների խաղաղության և եղբայրության հաստատուն հիմքն է դնում։ Դա հեղափոխական ակտ է, բարձր մարդասիրական ակտ... վճռական արտաքին քաղաքականության օրինակ» (№ 191, 4 նոյեմբերի, 1917 թ.)։

Անդրկովկասյան բոլշևիկյան թերթերը, օգտվելով հավաստի աղբյուրներից, ցույց տվեցին նաև միջազգային սոցիալ-դեմոկրատիայի վերաբերմունքը հաշտության դեկրետի հանդեպ, արտահայտելով այն միտքը, որ այն արժանացել է միջազգային սոցիալ-դեմոկրատիայի և աշխատավորության հավանությանն ու պաշտպանությանը (տե՛ս Я. Г. Темкин, Большевики в борьбе за демократический мир, М., 1957, М. И. Лоцманов. Ленинский декрет о мире и Болгария. Вопросы истории КПСС. 1970, № 1, «Всемирная история». М., т. VIII, 1961, стр. 87—93)։ Այսպես՝ «Бакинский рабочий»-ի № 82-ում (14 նոյեմբերի, 1917 թ.) տպագրվեց հոդված՝ «Արտասահմանում ռուսական հեղափոխության մասին» վերնագրով, որտեղ ասված էր. «Ֆրանսիական ցիմմերվալդիստները շնորհավորում են խիզախ բոլշևիկներին, ողջունում են անհապաղ հաշտությունը։ Գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը, Ավստրիան արտահայտում են լիակատար համաձայնություն զինադադարի առաջարկի և բանակցությունների վերաբերյալ»։

*Նույն կերպ էր բացատրում միջազգային սոցիալ-դեմոկրատիայի վերաբերմունքը նաև «Բանվորի կռիվը» նոյեմբերի 14-ի համարում։*

*Անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլի կողմից հաշտության լենինյան դեկրետի արտացոլումն ու դրա միջազգային մեծագույն նշանակության իմաստավորումն անգնահատելի նշանակություն ունեցան երկրամասի բանվորներին, զինվորներին ու գյուղացիներին լենինյան արտաքին քաղաքականության խոսքը մեկնաբանելու և պրոպագանդելու հարցում։ Այն հատկապես մեծ խանդավառություն հարուցեց իմպերիալիստական պատերազմից հոգնած ու տանջված ինչպես ամբողջ բանակի, նույնպես և կովկասյան ռազմաճակատի զինվորների շրջանում (տե՛ս Ա. Հ. Սավոյան,* Բոլշևիկների պարտիայի պայքարը առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմից դուրս գալու համար, *Երևան, 1953 թ.,* Я. Г. Темкин, Большевики в борьбе за демократический мир, М., 1957, *Հ. Ս. Մելիքյան,* Հոկտեմբերյան հեղափոխությունը և Կովկասյան բանակը, *Երևան, 1970 թ.)։ Ճիշտ է, 1917 թ. հոկտեմբերի վերջին և նոյեմբերի սկզբներին ռազմաճակատների բանակների ու կորպուսների շտաբները դեռևս գտնվում էին ռեակցիոն բուրժուական-կալվածատիրական տարրերի և էսէռամենշևիկյան կոմիտեների ձեռքին, որոնք, լինելով բանակի ինֆորմացիայի և կառավարման ապարատի տերն ու տնօրենը, զրպարտիչ լուրեր էին տարածում կամ ջանում էին զինվորներից լրիվ սքողել հաշտության լենինյան դեկրետը, սակայն բոլշևիկյան մամուլի շնորհիվ կովկասյան բանակի զինվորական լայն մասսաներին ևս հայտնի է դառնում լենինյան հաշտության դեկրետը։ Եվ ահա Կովկասյան ռազմաճակատից ստացվում են ողջույնի բազմաթիվ հեռագրեր և հավանության բանաձևեր՝ ուղղված սովետական իշխանությանը, նրա կողմից հրապարակված խաղաղասիրական ակտի՝ հաշտության դեկրետի առիթով։*

*Այսպիսով, անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլն իր էջերում ո՛չ միայն արտացոլել ու պրոպագանդել է հաշտության լենինյան դեկրետը, այլև արտահայտել է Անդրկովկասի աշխատավորության, մասնավորապես Կովկասյան բանակի զինվորների վստահությունն ու հավանությունը հաշտության լենինյան դեկրետի նկատմամբ։*

*Սովետների համառուսաստանյան II համագումարի դեկրետների, մասնավորապես հաշտության դեկրետի արծարծումն ու պրոպագանդումն անդրկովկասյան բոլշևիկյան պարբերական մամուլում՝ անգնահատելի ծառայություն մատուցեցին երկրամասում հեղափոխական շարժումների ծավալմանը և հսկայական նշանակություն ունեցան Անդրկովկասում սովետական կարգերի հաստատման համար ծավալված պայքարի հաղթական ավարտի համար։*


## Р Е З Ю М Е

В статье показана роль закавказской большевистской периодики в пропаганде ленинского декрета о мире, характеризована борьба коммунистической печати против буржуазных и мелкобуржуазных националистических партий, фальсифицирующих ленинский декрет о мире. Подчеркивается значение закавказской печати в отражении настроений широких солдатских масс кавказской армии по поддержанию ленинского декрета о мире.




# ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒՆԵՐԻ ՊԱՏՄԱՃԱՆԱՉՈՂԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ


**ՄԱՅԻՍ ԱՎԴԱԼԲԵԳՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր


**Գիտաաթեիստիկան պրոպագանդան գաղափարական ներազդման կարևոր բնագավառներից է։**

**Չպետք է մոռանալ, որ առանց պատմական մատերիալիզմի խոր իմացության հնարավոր չէ բացահայտել կրոնական հավատի անկարողությունը։ Անհրաժեշտ է նաև համակողմանիորեն գիտենալ կրոնի պատմությունը, այն կրոնի, որը, ըստ Կ. Մարքսի սպառիչ բնորոշման, մարդկանց իրական կեցության խեղաթյուր պատկերացումն է։**

**Հայտնի է Ֆ. Էնգելսի պատմագիտական հարցադրումը, թե «Մի այնպիսի կրոնից, որը նվաճեց Հռոմի համաշխարհային տիրապետությունը և 1800 տարի տիրեց քաղաքակիրթ մարդկության զգալի մասին, չի կարելի գլուխն ազատել՝ այն սոսկ խաբեբաների հորինած անհեթեթություն հայտարարելով։ Այդ հասկանալու համար անհրաժեշտ է բացատրել նրա ծագումը և զարգացումը այն հանգամանքներից, որոնց մեջ այն ծագեց ու տիրապետության հասավ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 307)։**

**Սույն հոդվածում վեր են հանված մեր ժողովրդի պատմության անցքերն ու իրադարձությունները, կրոնի քողով ծածկված սոցիալական ներհակությունները, մատերիալիզմի ու իդեալիզմի դարավոր պայքարը՝ իր բազում ձևերով։**

ՀԱՅ ԲԱԶՄԱՀԱՐՈՒՍՏ գրականության մեջ իրենց որոշակի դերն են կատարել միջնադարյան արարողական ժողովածուները։

Այս ժողովածուների մի մասը («Պատարագամատույց», «Ժամագիրք», «Մաշտոց» և այլն) ամբողջությամբ կապված է հայ եկեղեցու ծիսական-արարողական կարգի հետ, էապես նպաստել է նրա ինքնության պահպանմանն ու ամրապնդմանը, դրանով իսկ ունենալով պատմական մեծ արժեք։ Սրանց կողքին միջնադարում գործել են արարողական այլ տիպի ժողովածուներ, որոնք հայ եկեղեցու տոնակարգը պահպանելու և եկեղեցում համապատասխան օրերի ու ժամերի կարդացվելու հետ մեկտեղ, եկեղեցական նշանակությունից զատ, ունեցել են մարդկանց գիտակցության ու զգացումների վրա ներգործելու, բարոյակրթելու և այլ հատկանիշներ, որով և դուրս են եկել նեղ արարողական սահմաններից, ծավալվել մինչև գեղարվեստական գրականության ոլորտները. արարողական լինելով հանդերձ, դրանք օժտված են գրական-գեղարվեստական արժեքով։

Այս առումով միջնադարյան որոշ ժողովածուներ՝ «Ճառընտիր», «Վկայագիրք», «Յայսմաւուրք» (Հայսմավուրք), «Գանձարան» ուշագրավ հավաքածուներ են՝ հայ միջնադարյան բանաստեղծության ու արձակի հարուստ շերտերով, առանց որոնց թերի կլիներ մեր պատկերացումը հայ միջնադարյան գրականության մասին։

Արարողական անունը չպետք է ենթադրել

տա սոսկ կրոնական-եկեղեցական բովանդակություն, այլ նաև ժողովրդի վրա ներգործելու մղումով ստեղծված գրականություն, որը չի կարող անջրպետված լինել ժողովրդական խավերի ավանդներից, նրա հոգեբանությունից ու իղձերից: Արարողական կարգին նպաստող այդ ժողովածուներն իրենց բովանդակությամբ ու նպատակներով շատ ավելի լայն ուղեծիր են ունեցել, քան սոսկ կրոնականն է, ուստի և դրանց ուսումնասիրությունը դառնում է անհրաժեշտ ո՛չ միայն գեղարվեստական գրականության պատմության առումով, այլև նույնիսկ հրատապ կենսամերձ այդ հուշարձանների միջոցով ժամանակի ազգային-քաղաքական, հասարակական հարցերի արծարծման ուսանելիությամբ:

Միջնադարյան այլ ժողովածուների նման «Յայսմաւուրք» ժողովածուները նույնպես ժամանակի ընթացքում փոփոխությունների են ենթարկվել ինչպես նյութի ընդգրկման, այնպես էլ շարադրանքի առումով:

Այդ ժողովածուների փոփոխությունները պատահական չեն: Դրանք որքան էլ աննշան և երկրորդական են թվում առաջին հայացքից, ըստ էության նշանակալից են և սկզբունքային, հեղինակային խմբագրության արգասիք, ժամանակի սոցիալ-քաղաքական կյանքի արտահայտություններ, հայ ժողովրդի պատմական բախտորոշ ժամանակաշրջանում հայ գործիչների ու խմբավորումների քաղաքական կողմնորոշման ու պայքարի դրսևորումներ: Ամենևին էլ ոչ պատահականորեն դրանք կապված են այնպիսի հռչակավոր անձնավորությունների հետ, ինչպիսիք են Գրիգոր Վկայասեր (XI դար) և Գրիգոր Անավարզեցի (XIII) կաթողիկոսները, համբավավոր Վանական վարդապետի աշակերտներ Տեր-Իսրայելն ու Կիրակոս Արևելցի (XIII), Գրիգոր Ծերենց Խլաթեցի (XV) գաղափարական գործիչները:

«Յայսմաւուրք» գրաբար անվանումը բառացի թարգմանությամբ նշանակում է «այսօր» կամ ավելի ճիշտ՝ «այս օրը», «այս օրվա մեջ» հիշատակվող տոների գիրք: Միջազգային ժողովածուի հայկական անունը ծագել է հիմնական տոնի նշումից հետո նույն օրը հիշատակվող այլ տոների փաստագրումից. «Տօն է ննջման Յովհաննու առաքելոյն և աւետարանչին», ապա ավելացվում՝ «Յայսմ աւուր վկայութիւն... լուսաւորչին մերոյ Հռիփսիմեայ կուսի» (4683, էջ 82 բ): «Յայսմ աւուր աղախնոյն Աստուածոյ Պեղիգեայ...», «Յայսմ աւուր յիշատակ է սուրբ ճգնաւորին Վարդիկ հօրն, որ ի Մեծ Հայք» և այլն:

Ահա այս կրկնվող «յայսմ աւուր» բառակապակցությունից և ծագել է ժողովածուի «Յայսմաւուրք» (ժամանակակից գրությամբ Հայսմավուրք) անունը:

Հայսմավուրքը սոսկական տոնացույց չէ, այլ նաև նյութերի հավաքածու. այնտեղ ի մի են բերված յուրաքանչյուր օր կատարվող տոնի մասին նյութեր՝ «Ընթերցուածներ»: Մեր օրացույցների նախատիպն է Հայսմավուրքն իր կազմությամբ. տարեսկզբի առաջին օրից մինչև վերջինը նշվում են տոներ, հոբելյանական տարեթվեր, իրադարձություններ՝ համապատասխան նյութերով: Միայն, հասկանալիորեն, հայսմավուրքներում գերազանցորեն նշվում են եկեղեցական տոներ ու գործիչներ, որոնց մասին Ընթերցվածները՝ եկեղեցում բարձրաձայն կարդացվելիք նյութերը, չոր տվյալների ու տեղեկությունների բնույթ չեն կրում, այլ զրուցապատում, կիսաբանահյուսական, առասպելական վիպումներ են, որոնք և ներկայացնում են միջնադարի գեղարվեստական միտքն ու ճաշակը, դրանով իսկ դառնում ուսումնասիրության առարկա գրականագիտական առումով:

Հայ միջնադարյան արարողական ժողովածուների մեջ հայսմավուրքները ունեն իրենց պատմական ու գրական արժեքով: Ճիշտ է, ժողովածուի էությունը կազմում է եկեղեցական տոնակարգը, սակայն, ըստ էության, դա կյանքում կատարվող դեպքերի արձագանքն է եկեղեցական տոնակարգի մեջ և յուրատեսակ մի արտացոլում հասարակական ու մարդկային հարաբերությունների: Ավելին. դա դրսևորումն է ո՛չ միայն պատմական որոշակի ժամանակաշրջանի երևույթների, այլ ողջ քրիստոնեական միջնադարի իրադրություններին: Հայսմավուրքում տեղ են գտել ինչպես վաղ քրիստոնեական կյանքի անդրադարձումներ, նույնպես և հայ ողջ միջնադարն իր ուրույն հարաբերություններով: Եվ, օրինաչափորեն, վաղ քրիստոնեական շրջանին վերաբերող նյութերն ընդհանուր պատմական արժեք ունեն, մինչդեռ հայ միջնադարն անդրադարձնող Ընթերցվածները որոշակի արտացոլումներն են հայ կյանքի: Այս առումով հայսմավուրքները մի տեսակ հանրագիտարանային ժողովածուներ են, որոնք գաղափար են տվել միջնադարյան ունկնդրին (կամ ընթերցողին) թե՛ համաշխարհային պատմության ականավոր դեմքերի մասին և թե, առավելապես, ճանաչելի դարձրել ազգային կյանքի այլևայլ կողմեր: Տերունական և համաքրիստոնեական տոների կողքին հայսմավուրքները ներառել են հայ ժողովրդի ճակատագրի մեջ բախտորոշ այնպիսի իրադրությունների հիշատակներ, ինչպիսիք էին քրիստոնեության մուտքը Հայաստան (Գրիգոր Լուսավորչին նվիրված տոներ), հայ գրի ու գրականության սկզբնավորում (Մեսրոպ Մաշտոցին, Սահակ Պարթևին, թարգմանիչներին նվիրված տոներ), ազատագրական պայքարի պատմության էջեր (Վարդանանց և Ղևոնդյանց տոներ), արաբական տիրապետության շրջանից՝ Վահան Գողթնացու և Նախիջևանի նահատակների, սելջուկ-մոնղոլական շրջանից՝ Խոսրով Գանձակեցու և Հովսեփ Դվնեցու նահատակության պատմություններ, մեծ գործիչների՝ Ստեփանոս Սյունեցու, Գրիգոր Նարեկացու, Պահլավունյանց տոհմի և Գրիգոր Վկայասերի, Ներսես Շնորհալու, Գևորգ Սկևռացու կենսագրություն-վարքեր և բազմաթիվ մեծ ու փոքր հիշատակելի դրվագներ, որոնց շնորհիվ ազգային հիշողության մեջ հառնում և ամրապնդվում էին անցյալի էջեր ու կերպարներ՝ արթուն պահելով սերունդների հայրենասիրական ոգին:

Հայսմավուրքները ուշագրավ հուշարձաններ են նաև իբրև միջնադարի գեղարվեստական արձակի ուրույն արտացոլումներ: Տոնի առթիվ ընթերցվելիք նյութը շարադրվել է ո՛չ միայն ճանաչողական-ուսուցողական նպատակով, այլ, որ մեզ առավել հետաքրքրողն է, մատուցվել է ունկնդրին դաստիարակելու, ընդօրինակման մղելու միտումով. «Սրբի կյանքը դիտվում է իբրև օրինակ, որն արժանի է ընդօրինակման», իրավացիորեն նշում է ռուս ականավոր գիտնական Սպերանսկին*: Իսկ այդ նշանակում է, որ պատմող նյութը պետք է ունենար գեղարվեստական երկի որոշ հատկանիշներ՝ հերոսին կերպավորելու և նրան ազդեցիկ դարձնելու համար:

Հայսմավուրք ժողովածուների ճանաչողական բնույթը պայմանավորված է նրա նյութի ընդգրկման լայն շառավղով: Եթե տերունական տոներից բացի այնտեղ հատուկ հիշատակի օր էր սահմանվում համաքրիստոնեական կամ եզրային՝ զանազան կողմերում ճանաչված եկեղեցու գործիչների պատվին, ապա պարզ է ըստ ինքյան, որ Հայսմավուրքը տոնի ընթերցմունքում գաղափար պետք է տար այդ գործիչների հայրենիքի, սրբի օրոք իշխող թագավորների, զորապետների, նրանց հավատալիքի, դավանանքի և այլ բնապատմական ու կենցաղային պայմանների վերաբերյալ, որոնք ուղղակի նպատակ չհետապնդելով՝ կողմնակիորեն զարգացնում էին ընթերցողին կամ ունկնդրին և գիտելիքներ տալիս համաշխարհային պատմության առանձին կողմերի, ճանաչված դեմքերի և շատ այլ հարցերի մասին: Անհավատալիորեն շատ են տեղեկությունները աշխարհի ֆիզիկական քարտեզի վերաբերյալ. Հայաստանի պատմական աշխարհագրությունից զատ, այնտեղ տեղեկություններ կգտնենք աշխարհի զանազան մայրցամաքների երկրների ու ժողովուրդների մասին: Այդ աշխարհագրական անունները ո՛չ աստվածաշնչական ընդհանուր տեղ դարձած տեղանուններ էին, ո՛չ նոր կտակարանից՝ Քրիստոսի գործունեությամբ տպավորված կարծես վերերկրային սրբատեղիներ, ո՛չ հեքիաթային հրաշապատում վայրեր, այլ իրական աշխարհում գոյություն ունեցող աշխարհամասեր, ազգեր ու ժողովուրդներ, որոնք որքան էլ հեռու և տարբեր, բայց իրական էին, ինչպես իրենց կողքին ու իրենց հետ ապրող ասորին, հույնը, արաբը և ուրիշներ: Եվ որքան էլ հայսմավուրքներում ամփոփվող նյութը նպատակ ուներ ամրապնդելու սերը վերերկրայինի՝ Քրիստոսի և նրա գործի նկատմամբ, այն **ուղղակիորեն երկրի հետ էր կապում ունկնդրին**՝ նպաստելով նրա աշխարհաճանաչողությանը և մտահորիզոնի ընդլայնմանը. առաջին հերթին, ինչպես ասվեց, աշխարհագրական ընդգրկման տեսակետից: Եթե հայ ճանաչված սրբի՝ Գրիգոր Նարեկացու կյանքը Հայսմավուրքն սկսում էր նրա գործունեության վայրից՝ «Սուրբ հայրս մեր աստուածաշնորհ քահանայ և կրօնաւորս Գրիգոր էր ի **Նարեկայ** վանից ի Հայս, ի գաւառէն Վասպուրականի» (Մատ. ձեռ. 7365, էջ 61 բ), ապա հասկանալիորեն այդ պետք է արվեր առավել անծանոթ գործիչների վերաբերյալ. և ահա՝ «Սուրբն Եփրեմ՝ սքանչելի արդիւնաբան տիեզերալոյս վարդապետն ասորի էր յազգե, **յԱմիթ քաղաքէ** (ձեռ. 1339, էջ 151 բ), «Յայս աւուր վկայութիւն սրբոյն Անաստասիա պարսկին... ի գաւառէն **Ռայզիքա ի գեղջէն Ռաշնունի»** (նույն տեղը, էջ 142 ա), «Յայսմ աւուր սրբուհին Թեոդոսիա կատարեցաւ սրով **յԱնկուրիա քաղաքին»** (ձեռ. 7463, էջ 65 ա, ձեռ. 7529, էջ 14 բ): «Մարդակէր և պղծազոհ բարբարոսքն, որք բնակեալ էին **յԱրաբիա** միջև **յԵգիպտոս** և յանապատս **Յորդանանու...»** (ձեռ. 1339, էջ 134), «Պատմութիւն սուրբ և փառաւորեալ վկայիցն Քրիստոսի Ռոմանոսի և Դաւթի, որ **ի յՌուզք** նահատակեցան յանօրէն եղբօրէն իւրեանց... և ի խորանն իւր արտաքոյ քաղաքին **Կիվայոյ** (Կիև)...», (նույն տեղը, էջ 230 բ, ձեռ. 7433, էջ 403 բ), «Սուրբն Թէոդիտոս եպիսկոպոս էր Կիւրենայ ի **կղզոջըն Կիպրոսի»** (ձեռ. 1339, էջ 174 ա), «Յայսմ աւուր սուրբ վկայն Քրիստոսի Դանաքտոս ընթերցող եկեղեցւոյն ի քաղաքին Ողոնի, որ է յարեւմուտս **մերձ ի Բուլղարս...»** (նույն տեղը, էջ 147 ա, ձեռ. 3658, էջ 130 ա), «...սուրբ վկայն Աղեքսանդրոս էր ի քաղաքէն Պոնտիողոնոյ՝ **մերձ ի Հռոմ»** (ձեռ. 1339, էջ 173): «Եվ ալիք ծովուն հանին զնա **ի Սպանիա...»** (նույն տեղը, էջ 174 ա), «Երանելի





* **Сперанский М. Н.** История древней русской литературы Киевского периода, Москва, 1911, стр. 168.

Գրիգորիոս էր ի քաղաքէն Ակռականդացւոց, որ է յարևմուտս ի **Սիկիլիա կղզւոջն**...» (ձեռ. 7463, էջ 108 բ), և այլն, և այլն:

Որքան էլ ժողովրդական ունկնդրի համար դրանք չկոնկրետացված հասկացություններ են, բայց իմացություններ ու գաղափար են տալիս ֆիզիկական աշխարհագրությունից, լայնացնում նրա իմացությունների շրջանակը, որով անուրանալի է դառնում այս ժողովածուների ճանաչողական արժեքը թեկուզ նշված մեկ բնագավառի գծով:

Բայց չէ՞ որ սրբի կյանքը պատմողները նրա գործունեության վայրից զատ լրացուցիչ շատ տեղեկություններ էին տալիս նաև պատմությունից. «Յայսմ աւուր Սմբատայ հայոց թագաւորի: Առաջին թագաւորն հայոց յազգէն բագրատունեաց եղև **Աշոտ**... և իշխանն Իսմայէլի **Աբդլա** առաքեաց նմա թագ՝ ի ձեռն **Յուսուփայ** զօրաւարին իւրոյ ի լուեալ արքայն **յունաց Վասիլ**՝ առաքեաց և նա թագ Աշոտոյ և. պսակեալ նա յերկուց թագաւորացն եղև նոխ թագաւոր և արար խաղաղութիւն և շինութիւն աշխարհին Հայոց» (ձեռ. 1339, էջ 235 բ, ձեռ. 7433, էջ 313 բ, ձեռ. 2530, էջ 156 բ): Մեկ ուրիշ օրինակ. «Վկայութիւն վկայիցն, որք ի պարսիկս կատարեցան: Ամբարիշտ և անօրէն արքայն պարսից Սաբուհիոս, յորժամ զհիւրէի թագդիրն իւր՝ զներքինին **Գուշթազատ** էսպան, յոյժ տրտմեալ և բարկութեամբ լցեալ հրամայեաց զամենայն քրիստոնեիցն սրով սպանանել...» (ձեռ. 2695, էջ 98 բ, ձեռ. 3658, էջ 162 բ), «Յորժամ **Շապուհ** հրապաշտ արքայն պարսից պատերազմեալ պաշարեաց զքաղաքն **Վիզանդ**...» (ձեռ. 1339, էջ 264 ա), «Սուրբ քահանայն Թէոդորոս էր ի Սեբաստիոյ հայոց... և ի մանկութենէ կրոնաւորեալ անարատ վարուք և մատնեցին զնա անօրէն բռնաւորին թուրքաց **Ալիբասանայ** (Ալփասլանն), որ էր յազգէն Դանըշմանեացն» և այլն:

Դժվար չէ կռահել, որ այս ընթերցումները ընդհանուր ճանաչողական արժեք ներկայացնելուց զատ, երբեմն նաև **պատմական աղբյուրի** ուժ են ստանում:

Միջնադարում այնքան մատչելի չէր ձեռագիր գիրքը և շատ քչերին կարող էին ծանոթ լինել հայ պատմիչների գործերը: Որքան էլ բազմաթիվ ընթերցումներ քաղված լինեին պատմիչների գործերից, դրանք երբեմն վստահելի աղբյուր են հանդիսանում՝ առավել հին ձեռագրական զինարանից օգտված լինելու շնորհիվ:

Ընթերցումների նման տեղեկությունները երբեմն ստանում են աղբյուրագիտական արժեք. օրինակ, օրվա տոնի նշման մեջ տրվում է, ասենք, վարքագրի հեղինակի անունը. «Յիշատակ է նախնոյն Մելքիսեդեկի ի գրոց սրբոյն Աթանասի» (ձեռ. 2695, էջ 79 ա, ձեռ. 7463, էջ 235 բ), «Վկ. սրբոյն Մամասայ, զոր յիշատակէ սուրբն Գրիգոր աստուածաբանն ի Նոր Կիրակէ ճառի» (ձեռ. 7433, էջ 26 ա): Կամ՝ «Յայսմ աւուր վարք երանելոյն Պեղիգեայ... Եւ են այլ սուրբ կանայք, որ անուանին Պեղիգեա, բայց զայս յիշէ սուրբն Յոհան Ոսկէբերան և վասն սորա գրեաց ճառս գովասացութեան...» (ձեռ. 1339, էջ 225 ա):

Առավել արժեքավորը, անշուշտ, մեր մատենագիտության վերաբերյալ տվյալների հիշատակումն է. «Եւ արար,— գրում է Եղիշե պատմիչի հիշատակի տոնին Հայսմավուրքի ընթերցվածը,— **զմեկնութիւն արարածոց** և ճառս վասն չարչարանացն Քրիստոսի» (ձեռ. 7433, էջ 40 ա), որոնցից առաջինի հիշատակությունը մասնագիտական ուսումնասիրության առարկա դարձավ և մատենագիտորեն հաստատվեց*:

Ուշագրավ տվյալներ է պարունակում Հայսմավուրքային ընթերցվածը նաև Գրիգոր Նարեկացու ժառանգության վերաբերյալ. «Սկիզբն արար,— գրում է վարքագիր Ներսես Լամբրոնացին,— և խօսեցաւ զգիրս աղօթից ըստ ազդման խնդրոյ կրօնաւոր եղբարցս, բանս Ղե և արտաքոյ սորին ունիմք խօսս երանելոյս այսօսիկ...»: Կարելի՞ է պատկերացնել այս հաղորդման նշանակությունը Գրիգոր Նարեկացու Մատյանի քննական բնագրի պատրաստման, թեկուզ և սոսկ գլուխների քանակի ճշգրտման գործում: Եվ բազմաթիվ այսպիսի տվյալներ, որոնք կարող են սպառիչ չլինել, բայց շատ բան պարզել միջնադարի բազմաքանակ ստեղծագործությունների հեղինակների, թարգմանիչների, նրանց արած գործերի ու թողած հիշատակների մասին:

Բավականաչափ նյութ են տալիս հայսմավուրքները նաև եկեղեցու պատմության, աղանդավորական գաղափարների ու պայքարի մասին և բազմաթիվ տվյալներ հեթանոսական, վաղ քրիստոնեության և բուն քրիստոնեական կրոնների, աղանդների ու հերձվածողների մասին, որոնք եթե պատմական մեծ արժեք էլ չներկայացնեն առավել հիմնավոր հուշարձանների առկայության պայմաններում, գոնե միջնադարի մարդուն գաղափար էին տալիս դրանց գոյության, տարբերությունների ու պայքարի վերաբերյալ: Եվ ամենևին պատահական չէ, որ հայսմավուրքներից մեկում հանդիպում ենք այսպիսի ուշագրավ հիշատակագրության. «Սուրբ հայրապետացն աղօթիւք և բարեխօսութեամբ փրկեա Քրիստոս Աստուած զեկեղեցիս Հայաստանեայցս և զամենայն հաւատացեալս ի **հերձուածողական կարծեաց և մտածութեանց**» (ձեռ. 1339, էջ 259 ա): Այս հիշատակագրությունն ինքնին շատ բան է ասում միջնադարում աղանդավորական շարժումների և դրանց նկատմամբ հայ եկեղեցու վերաբերմունքի մասին մի կողմից, և հայ ժողովրդի միասնության և ինքնության պահպանման առումով՝ մյուս կողմից:

** Տե՛ս* Խաչիկյան Լ., *Եղիշեի «Արարածոց մեկնության» դիսերտացիոն անտիպ աշխատությունը:*



Բացի համաշխարհային պատմության, աշխարհագրության, պատմական դեմքերին, կրոնադավանաբանական հարցերին վերաբերող առանձին տվյալներից Հայսմավուրք ժողովածուները ճանաչողական շատ նյութ էին տալիս նաև երկրների ներսում տեղի ունեցող դասային, **սոցիալական հարաբերությունների ու պայքարի մասին.** դրանք հաճախ հպանցիկ, վարքագրական հերոսի հետ անմիջականորեն կապ չունեցող տեղեկություններ են, բայց շատ բան են ասում **ներպետական խժդժությունների, դասային հակամարտությունների, սոցիալական** աններդաշնակ կյանքի ու **հարաբերությունների** մասին. «Եւ ընդ աւուրս ընդ այնոսիկ,— պատմում է Հայսմավուրքը,— ի քաղաքին Թեսաղոնիկեցւոց **եղև խռովութիւն ընդ իշխանս արքունի և ընդ քաղաքացիսն և ընդդիմացան հրամանաց թագաւորին**» (ձեռ. 1339, էջ 119 բ): Այստեղ կարևոր չեն հեղինակի մեկնաբանությունն ու կողմնորոշումը, այլ **դասային հակամարտության պատկերը** և **զինված բախումների արձանագրումը:** Նման փաստի ենք հանդիպում նաև սուրբ Միհասի տոնի հիշատակի օրվա ընթերցումում. «Յաւուրս ամբարիշտ արքային Մաքսիմիանոսի **եղև խռովութիւն** ինչ ի մէջ քաղաքին Աղեքսանդրացւոց **առ իշխանսն**» (նույն տեղը, էջ 122 ա): Նույնիսկ նահատակի աղոթքի և բարեմաղթությունների մեջ ներթափանցված է դասային հակամարտությունների գաղափարը. «և մի եկեսցէ ի վերա նոցա սատանայական փորձութիւնք և մի՛ բռնութիւնք և նեղութիւնք ի թշնամեաց կամ **յիշխանաց**» (ձեռ. 1339, էջ 285 ա): Բազմաթիվ են սրբերի կյանքից դրվագներ, ուր խոսվում է տարբեր հասարակարգերում առկա նյութական, իրավական, բարոյական, հակամարտ և անհավասար կյանքի մասին: Սաբինիոս նահատակին ներկայացնում են տեղի դատավորին. «և հարցանէր (դատաւորն) զանուն և զշնորհսն. և նա ասէ՝ քրիստոնեայ եմ և կոչիմ Սաբինիոս: Ասէ դատաւորն. **ծառայ ե՞ս, եթէ ազատ**» (նույն տեղը, էջ 192 բ): Դատավորի սոսկ **հարցը ծառա կամ ազատ լինելու մասին** ավելի խոսուն է, քան միևնույն հարցի մասին որևէ հիպոթետիկ եզրակացություն: Մեկ այլ դեպքում սոցիալական վիճակ է ներկայացված վարքագրական հերոսի պատասխանում. «Ասէ Որոգինէս՝ կոչէ զքեզ դատաւորն: Ասէ Կոնոնոս՝ Զի՞նչ կամի յինէն դատաւորն»: Կոնոնոսի զարմանքը տրամաբանական է. ի՞նչ ընդհանրություն ունի պարտիզպանը դատավորի հետ. ի՞նչ կարող է նրանից ուզել դատավորը, երբ ինքն իր օրահացը հազիվ է վաստակում, թող նա իր նմաններին կանչի. «Եթէ կամի կոչել՝ յիւր նմանեացն կոչեսցէ և ոչ զիս զտառապեալ հողագործս որ **զիմ աւուրն կերակուրն մեծ ջանիւք վաստակիմ**» (ձեռ. 1339, էջ 183 բ):

Հողագործ մարդու սոցիալական վիճակի արտահայտությունն ենք տեսնում նաև Ամենաւագի հայկական վարքում. «...Երանելիս այս էր ի գաւառէն Դերջանու,— պատմում է վարքագիրը,— այր աշխարհիկ և երկրագործ, գեղեցիկ դիմօք և վայելուչ հասակաւ... Սա ունէր այլազգւոյ ումեմն սակաւ ինչ պարտս, և նա եկեալ նեղէր զուրբն, և **զգաստն բռնութեամբ** քարշեալ տանէր» (Յայսմաւուրք... Կոստանտնուպոլիս, 1834, հ. Ա, էջ 114):

Բանահյուսական շունչ ունի Հուլիանոս արքայի մասին պատմված հետևյալ դիպվածը, որը, սակայն, **սոցիալական վիճակների անհավոր հակամարտություն է բացահայտում.** Հուլիանոս «ուրացող» անվանված հեթանոս արքան իմացել է, որ զատկի պահքը մոտենում է և վիրավորելու համար հավատացյալ քրիստոնյաների արժանապատվությունը՝ կարգադրում է այդ օրերին նարպ և զոհերի արյուն խառնել ալյուրին և դրանցից թխված հաց և այլ ուտելիքներ միայն վաճառքի հանել: Պատրիարքը շփոթված է՝ ի՞նչ անել: Թեոդորոսը տեսիլում հորդորում է ոչինչ չգնել վաճառատեղիներից, այլ բավարարվել տան ունեցածով. «ամենևին ոչ հաց և ոչ այլ կերակուր, և ոչ ըմպելի գնեսցեն ի վաճառականացն, այլ կերիցեն ի տան իւրեանց կերակուր»: Պատրիարքի միամիտ պատասխանը դառնորեն սպառիչ է. «Ասէ պատրիարգն՝ որ մեծատունք են ունիցին ի տունս իւրեանց զի կերիցեն. **աղքատք, որ միոյ աւուր կերակուր ոչ ունին ի տունս իւրեանց, զի՞նչ կերիցեն**» (ձեռ. 1339, էջ 171, ձեռ. 8179, էջ 24). այսինքն թե՝ հարուստները տանը բան կունենան ուտելու, իսկ աղքատները, որ օրվա կերակուր չունեն, նրանք ի՞նչ ուտեն: Ոչ միշտ է, որ դասային հարաբերությունները արտացոլվում են այսքան ուղղակի ու պարզորոշ: Շատ դեպքերում դրանք կենցաղային մանրուքներով ներհյուսված դրվագներ են, որոնց խորքում են ընկած սոցիալական հարաբերությունները:

Իրական կյանքի փաստեր, կենցաղային դրվագներ, անգամ ազգագրական տվյալներ տեղ են գտել հայսմավուրքներում: Ուշագրավ է

նույնիսկ պատժի ձևերի մեջ ժողովրդական անուն ստացած ազգագրական հատկանիշի պահպանումը. «հրամայեցին զՈւնան միայն կապեցին **պարսկօրէն**՝ զերկու ոտսն ի մի և զերկու ձեռսն ի մի. և անցուցին ընդ ոտսն և ընդ ձեռսն փայտ և պնդեալ ընկեցին որպէս կոճղ յերկիր...» (ձեռ. 1339, էջ 197 բ): Շատ հատկանշական է, որ ամենից ավելի հայսմավուրքներն են նյութեր պարունակել այնպիսի մի ուշագրավ հարցի շուրջ, ինչպիսին հատկապես հայ արհեստների ու արվեստների պատմությունն է. «Որսայր ձկունս ի լճէն,— պատմում է Պարթենիոս սրբի վարքագիրը,— և բաշխէր կարոտելոց» (ձեռ. 1339, էջ 159), կարիքավորներին բաժանելու համար ձկնորսությամբ է զբաղվում պատումի հերոսը, մեկ այլ դեպքում՝ «վասն առեալ նոցա արտաքոյ քաղաքին ի հնձանան և ոմն յընկերաց, **ոլունս** առնէր և գնէին նովաւ զկերակրիկն» (ձեռ. 8179, էջ 31), այսինքն՝ թե քաղաքից դուրս տեղում՝ հնձանների մեջ վանքում ապաստանած վանականներից մեկը հուլունքներ էր սարքում, և դրանով էին նրանք իրենց սննդի դրամը հայթայթում: Խլաթեցու Հայսմավուրք ներթափանցած ժողովրդական հավատալիքների մեջ Շիդարարտավազդյան առասպելում պարզորոշ հիշատակվում են դիմակն ու ներկայացումը՝ «որ կատարէին դիմօք և թեատրոնօք» մի բան, որ զուգահեռաբար տեղ են գտել նաև միջնադարյան մանրանկարներում:

Այժմ գեղարվեստական հատկանիշների մասին:

Դրական կերպարի հայսմավուրքային սկզբունքն ըմբռնելու համար ամենից առաջ չըպետք է մոռանալ, որ Հայսմավուրքն իբրև ժողովածու մեկ հեղինակի ձեռքի գործը չէ. այնտեղ տարբեր նյութեր տարբեր ժամանակներում են ժողովածու թափանցել, տարբեր խմբագրություններում դրանք այլևայլ ծավալ, լեզու և ոճ են ունեցել: Ուրեմն, խնդիրն այստեղ բարդանում է նրանով, որ մենք գործ ունենք ոչ թե **կերպարի հեղինակային կերտվածքի** հետ, այլ ժողովածուի **գաղափարական բովանդակությունից բխող**, ամբողջական ժողովածուից ստացված կերպարի հետ, որը, անշուշտ, տարբեր է մեկ երկի մեջ կերտված կերպարից:

Հայսմավուրքների ընդգրկած նյութերը ժողովածուի արարողական պահանջով սեղմվել են՝ պահպանելով տվյալ անվան հետ կապված ամենաբնորոշ գիծը. հայսմավուրքները հնարավորություն չունեն ծավալելու և ճառընտրային կամ տոնապատճառային սրբախոսությունների նման վերհանելու առանձին հերոսի ներքին ու արտաքին բարեմասնությունները, մարդկային անհատական նկարագիրն ու գեղարվեստական կերպարին հատուկ այլ հատկանիշները: Հայսմավուրքը նշում է միայն տոնի առիթը հանդիսացող անհատի էական հատկանիշը կամ գործը: Այն առավելապես պահում է ընդարձակ վարքի համառոտ կամ համառոտագույն սյուժետային գիծը: Ուստի, երբ խոսում ենք կերպարի հայսմավուրքային սկզբունքի մասին, ապա այդ ասում ենք պայմանականորեն, նկատի ունենալով ողջ Հայսմավուրք ժողովածուից ստացված՝ վերացարկված միջնադարյան կատարելատիպը, որ ժողովածուի ամբողջությունից բխող արգասիք է: Մեր խոսքը վերաբերելու է այս վերացարկված դրական կերպարի հատկանիշներին ու առանձնահատկությանը, կերպար, որ որակապես տարբեր լինելով՝ միաժամանակ շատ ընդհանրություններ ունի միջնադարյան արձակի մյուս տեսակների գործող անձանց հետ:

Ինչպես Հայսմավուրք ժողովածուն ամբողջության մեջ ունի լայնածավալ ընդգրկում, բայց մեկ գաղափարի է ծառայում, այդպես էլ մարդկային բնավորությունների բազմազանության մեջ այն ունի մի կատարելատիպ, որ, լինելով միջնադարյան աշխարհայացքը հաստատող արարողական ժողովածուից բխած եզրակացություն, օգնում է հասկանալու հայսմավուրքային կերպարի առանձնահատկությունը՝ ի տարբերություն հեղինակային այլ հորինվածքների:

Հայսմավուրքային դրական հերոսին հատուկ է ո՛չ միայն բարետոհմիկ ծնունդը, մանկուց աստվածային շնորհով օժտված լինելը, պատմական գործի նշանակությամբ սրբացումը, այլև քրիստոնեական բարեպաշտական բարոյականության հետ մեկտեղ **ժողովրդական տենչանքների** արտահայտիչ ու կրող լինելու պարտադիր հատկանիշը.— «Եւ էր ինքն բարի, հեզ, քաղցր, ողորմած, որ և ըստ բարուցն ողորմած անուանեցաւ», պատմում է Հայսմավուրքը Հովհաննես Աղեքսանդրիայի հայրապետի վարքում (ձեռ. 1339, էջ 92 բ), «Շինեաց ի քաղաքին տաճարս հիւանդանոցս, և բժիշկս կարգեաց և զամենայն **հիւանդ աղքատ** և անդ էր և անդ հանգուցանէր» (նույն տեղը), «շինեաց և այլ տաճարս և **զխեղս և զծերս, որ ոչ կարէին վաստակել** անդ հանգուցանէր մինչ ի մահ» (նույն տեղը, էջ 93 ա), «Նոյնպէս շինեաց և այլ տաճարս և զամենայն **կին աղքատ** ծննդկան անդ հանգուցանէր: Կարգեաց և մանկաբարձս սպասեակս և զութ օր յետ ծննդեանն հանգուցանէին և տային ամենայն կնոջ զդրամս Դ և յուղարկէին: Եվ շինեաց արտաքոյ քաղաքին **շիրիմ օտար և աղքատ մեռելոց** և կարգեաց քահանայս, որպէս զի պաշտմամբ և մոմիղինօք թաղեսցեն» (ձեռ. 4512, էջ 93 ա, բ):



Այդքան շեշտված աղքատասիրությունն ինքնին վկայում է Հայսմավուրքի ներդաշնակումը ժողովրդական տենչանքներին: Եթե մի դեպքում այդ դրսևորվում է հերոսի որոշակի գործունեությամբ, ապա մեկ այլ դեպքում այդ արտահայտվում է գաղափարական պայքարի ձևով. «նա **յանդիմանէր** և **զյափշտակողս** և **զագահս**, և **զկողոպտիչս** և **զարծաթասերս**» (ձեռ. 4512, էջ 96 բ), այս միևնույն գծի այլևայլ դրսևորումներ կգտնենք տարբեր վարքերում, որոնք ի մի բերվելով կստեղծեն հայսմավուրքային «կերպարի» մեկ անհրաժեշտ հատկությունը՝ **աղքատասիրությունը**, իբրև դրական հերոսի հատկանիշ:

Երբեմն կյանքից վարք է փոխանցվում պատմական անձնավորության կենսագրության մի ուշագրավ հատկանիշ. հարգանքի ու հեղինակության արժանացած հերոսը ձեռագրեր է ընդօրինակում և պատվիրատուից **ստացած վարձը** տալիս է կարիքավորներին, «Եվ անհանգիստ տքնութեամբ,— գրում է վարքագիրը,— ի գիշերի և տուընջեան ձեռօք իւրովք վաստակէր **ի գիրս գրչութեան** և ի **տնանկս** կարկառէր» (ձեռ. 5315, էջ 337, նաև «Նոր վկայք», էջ 266): Միևնույնը՝ Մխիթար Սասնեցու մասին. «Եւ զի ճարտար էր յարուեստ գրչութեան,— կարդում ենք Հայսմավուրքում,— գրէր գիրս գեղեցկաշարս և վաճառեալ զայն բաշխէր զգինսն **աղքատաց** և **կարօտելոց**, և ինքն սակավապետութեամբ շատանայր...» (Յայսմաւուրք... Կոստանդնուպոլիս, 1834, հ. Ա, էջ 148):

Սրանք իրական տվյալներ են, եղելություններ առանձին անհատների կենսագրության մեջ, բայց վարքագրություն են ներթափանցել ժողովրդի հայացքով իբրև հերոսի ժողովրդասիրության ու հումանիզմի արտահայտություն:

Սրբախոսական հերոսին հատուկ է ո՛չ միայն աղքատասիրությունը, այլև այլասիրությունն ընդհանրապես: Անտոն անապատականը բանջարակեր է, բայց ցորեն է ցանում, հաց թխում իր մոտ հյուր եկողների համար՝ «վասն երթալոցն առ նա» (ձեռ. 7463, էջ 173 բ): «Անարծաթ» բժիշկներ՝ Կոզմաս և Դամիանոս եղբայրներն ամեն տեսակ ցավեր են դարմանում՝ դրա դիմաց հատուցում չպասելով ոչ մեկից. «ամենևին յումէքէ ինչ առնուին՝ ոչ ի մեծատանց և ոչ յաղքատաց» (ձեռ. 1339, էջ 84 ա): Ավելին, երբ Կոզմասն իմանում է, որ մի հիվանդ կին ստիպմամբ 3 ձու է տվել Դամիանոսին, վիրավորված պատվիրում է մահվանից հետո իրեն եղբորից հեռու թաղել՝ «ի մահուանն իւրեանց ի միասին ոչ թաղեսցեն»:

Սրբախոսական հերոսները զերծ են իրենց հասարակություններում առկա արատներից. «անարծաթ» եղբայրների միևնույն վարքում հրաշքով լեզու առած ուղտը մարդկային լեզվով արդարացնում է Դամիանոսին, ասելով թե նա ձուն իբրև **կաշառք չի վերցրել**. «ոչ էառ իբրև կաշառս զայն ինչ» (նույն տեղը, էջ 151ա): Ու թեև վարքագիրն անթերի է ներկայացնում Կոզմաս ու Դամիանոս եղբայրներին, բայց նա չի ժխտում, այլ բացահայտում է կաշառքի գոյությունը տիրող հասարակության մեջ: Եփրեմ Ասորին նույնպես անթերի է իր մարդկային նկարագրով՝ «Կեայր սքանչելի վարուք, սրբութեամբ, պահօք և աղօթիւք», բայց դրանով էլ նա զերծ չէ շրջապատող մարդկանց խարդավանքներից. «և **նախանձէին ընդ** նա ժառանգաւորք եկեղեցւոյն» (նույն տեղը), նրան նախանձում են եկեղեցու գործակալներն ու ներկայացուցիչները՝ մարդիկ, ովքեր կոչված էին հասարակությունը կեղտերից ձերբազատելու: Ուշագրավն այս դեպքում այն է, որ **սրբախոսություններում չեն իդեալականացվում բոլոր մարդիկ**, եկեղեցու և պաշտոնական բոլոր ներկայացուցիչները, այլ նրանց մեջ՝ բացառիկները միայն: Առաջին հայացքից այնպես է թվում, թե սրբախոսությունները դարաշրջանն իդեալականացնող ստեղծագործություններ են, մինչդեռ, երբ խորանում ենք նյութի մեջ, մեր առջև սփռվում է ամեն մի հասարակության մեջ գործող մարդկային փոխհարաբերությունների ու բնավորությունների մի անսքող պատկեր. միակողմանիորեն անթերի հերոսների կողքին առկա են բոլոր հասարակություններում գործող չարիքներն ու մարդկային արատները՝ նախանձը, փառամոլությունը, ընչաքաղցությունը, նենգությունը, քսությունը և այլն, և այլն:

Հենց մարդկային իրական հարաբերությունների այս վերհանումով իսկ Հայսմավուրք ժողովածուները ներկայացնում են հայ միջնադարյան գեղարվեստական արձակը: Եվ ստացվում է այսպես. այնտեղ գործում է մեկ դրական հերոս կամ դրական առանձին հատկանիշներով միասնացած մեկ դրական կերպար, որի հանդիման կանգնած են **մարդկային արատների բանակներ**, որոնք ավելի ռեալ են ու ըմբռնելի բոլոր հասարակարգերում ապրող մարդկանց համար: Եվ մեծ մասամբ **այդ արատների կրողներն այն մարդիկ են, որոնք կոչված են տնօրինելու ուրիշների բախտը. դրանք կայսրներ են, արքաներ, շահեր, հայրապետներ, եպիսկոպոսներ, քսու պաշտոնակատարներ:** Կյուրեղ Աղեքսանդրացու վարքում պատմվում է, որ Ակակիոս Պաղեսինու եպիսկոպոսը արքայի հովանավորությամբ՝ «բռնութեամբ զսուրբն Կիւրղոս իջոյց յաթոռոյն և հալածեաց ի քաղաքէն, և ի սահմանաց» և ինքը նստում պատրիարքական աթոռին: Մի այլ դեպքում խարդավանքների զոհ է ներկա-

յանում Հովհանն Ոսկեբերանը. նա հանդիմանում է **հափշտակողներին ու ագահներին, կողոպտիչներին ու արծաթասերներին**, մինչև անգամ նա **կշտամբում է Արկադեոս արքայի կնոջը**՝ Եվդոքսիային, որը մի այրի կնոջ այգի **էր բռնագրավել** (ձեռ. 7463, էջ 95 ա): Եվդոքսիան ո՛չ միայն հաշվի չի նստում Ոսկեբերանի կշտամբանքի հետ, այլև **«թշնամի եղև արդարադատ քահանայապետին»** և բանակցելով Թեոփիլոս Աղեքսանդրիայի հայրապետի հետ, խոստանում է Հովհանին աթոռից գցել և տեղը նրան նստեցնել:

Սրանք պատմական ճշմարտություններ են, որոնք վիպական գույն ստացած, թևածում են հայսմավուրքներում: Այսպես նաև հայկական պատումներում, մի կողմից սանձարձակ Դիոկղետիանոս ու Տրդատ, արյունարբու Շապուհ, Հազկերտ և Բուղա, մյուս կողմում՝ արքակենցաղ Հռիփսիմյան կույսեր, Վարդանանք, Գրիգոր Լուսավորիչ, Սահակ Պարթև, Վահան Գողթնացի և ուրիշներ:

Այստեղ անհրաժեշտորեն պետք է նշել, որ, ի տարբերություն ընդհանուր հայսմավուրքային պատումների գերազանցապես քրիստոնեության ջատագովական բովանդակության, **հայկական ընթերցումների** բնորոշ գիծը՝ օտարի լծի դեմ պայքարելն ու նահատակվելն է, ընդհանուր քրիստոնեական գաղափարախոսության հետ մեկտեղ հանուն հայրենիքի մարտընչելն ու սեփական կյանքի նվիրաբերումը: Այս հատկանիշով հայ ընթերցումներն ընդլայնել են հայսմավուրքային սոսկ արարողական սահմանները և նոր երանգ տվել գաղափարին անդավաճան մնացող, **գաղափարական հերոսի սկզբունքներին:**

Հասարակական երևույթների ու հարաբերությունների արտացոլումից զատ հայսմավուրքային ընթերցվածներում մենք ականատես ենք լինում նաև հոգեբանության առանձին արտահայտությունների: Որքան էլ հակիրճ ու սեղմ են հայսմավուրքային պատումները, ի տարբերություն ճառընտրային արձակի, դրանցում նույնպես տեղ են գտել մարդկային հոգուն բնորոշ հույզեր ու նրբերանգներ: Եվ չնայած այն բանին, որ միջնադարի կատարյալ հերոսը հայսմավուրքներում ներկայացվում էր իր համապարփակ սիրով առ աստված, նա անհրաժեշտաբար օժտված է նաև ընթերցողի հոգեկան աշխարհին հարազատ ալեկոծումներով, մարդ արարածին բնորոշ հուզական աշխարհի այս կամ այն կողմով. մերթ նա մայր է՝ մայրական ինքնամոռաց սիրով, մերթ՝ հավատարիմ ընկեր, սիրող ամուսին, դեռահաս պատանի ու ծաղկափթիթ կույս, որոնց միացնում է նահատակի մահվան առիթով առաջացած խոր կսկիծն ու ողբերգությունը. այստեղ էլ առկայծում են ընդարձակ վարքերից անցած հոգեբանական երանգներ, որոնք ջերմություն և գեղարվեստական շունչ են հաղորդում արարողական այդ ժողովածուին: Եվ որքան էլ մասնակի ու փոքրադրվագ, դրանք մնում են իբրև հայ միջնադարյան արձակի ուշագրավ էջեր, ինչպես հայ միջնադարյան մանրանկարչության առանձին զարդերը հայ գեղարվեստի պատմության մեջ:

Այսպիսով, հայ միջնադարյան Հայսմավուրք ժողովածուները գերանել են իրենց վրա դրըված արարողական նպատակներից, ընդլայնել իրենց ներգործության սահմանները և, իբրև միջնադարի գեղարվեստական արձակի ստեղծագործություններ, ներազդել հայ գրականության հետագա ընթացքի վրա:

Նրանք արթուն են պահել հայ ժողովրդի ազատաբաղձ ոգին, կոփել կամքը՝ դիմագրավելու դարեր տևող բռնապետություններին, մարտնչելու ու մաքառելու հայրենական ավանդների պահպանման համար:

Ելնելով միջնադարի ասկետական ոգուց, բայց հենվելով ժողովրդական իմաստության վրա, դրանք **մերժել են հոգևոր հարուստ կյանքից հեռու ընչաքաղցությունը, ագահությունը, փառամոլությունը, շահագործումը**՝ դրան հակադրելով **ժուժկալությունը, սակավապետությունը, ուրիշի համար անձը ի սպաս դնելու պատրաստակամության, համեստ ու առաքինի մարդկանց նկարագրեր**՝ բարոյական չափանիշ սահմանելով սերունդների համար: Հայսմավուրքային այդ «սրբերը» ոչ այլ ոք են, քան ժողովրդի իղձերին ներդաշնակ, նրա իդեալներով կերտված հերոսներ, որոնք ապրել են ժողովրդի հետ մեկտեղ, ինչպես նրա իսկ կերտած բանահյուսական կերպարները, հեքիաթների դրական հերոսները, առասպելների ու էպոսի անմոռաց դեմքերը:

Հայսմավուրքները ո՛չ միայն հարստացրել են ունկնդիրների գիտելիքները, ներազդել նրանց ճանաչողական աշխարհի վրա, ո՛չ միայն բարոյակրթական զորեղ խթան են հանդիսացել միջնադարյան մարդու հոգեկան աշխարհի ձևավորման ընթացքին, այլև, իբրև արձակի ուրույն դրսևորումներ, հող են հանդիսացել գրական նորանոր տեսակների ու ստեղծագործությունների համար: Նրանք ներառել են իրենց մեջ արձակ պատումի զանազան տեսակներ, ինչպիսիք են զրույցը, նովելը, ակնարկը, պատմական վիպակն ու նույնիսկ հոգեբանական էտյուդը: Սրանք միջնադարում դրսևորվել են գիրկընդխառն, պարարտ հող հանդիսանալով հետագայի գրական տեսակների առավել տարբերակված ժանրերի, ինչպես և հայ գրական ժանրերի պատմության ուսումնասիրության համար:



# ԳԵՆԵՏԻԿԱՅԻ ՀԻՄՆԱՐԱՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ

**Ս. Մ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

### Ի ՍՊԱՍ ՄԱՐԴՈՒ ԵՎ ԿԵՆՍՈԼՈՐՏԻ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՊՏԻՄԱԼԱՑՄԱՆ

Բարձր գնահատելով գիտության նշանակությունը ժողովրդի բարեկեցության բարձրացման ու սոցիալիստական հասարակարգի առաջընթացի գործում՝ մեր կուսակցությունը կոչ է անում գիտության աշխատողներին՝ հիմնարար որոնումները, դրանցից ստացվող արդյունքները ծառայեցնել ժողովրդական տնտեսության կարիքներին:

«Երկիրն զգում է այն բանի խիստ կարիքը, որ «մեծ գիտության» ջանքերը տեսական պրոբլեմների մշակման հետ մեկտեղ ավելի մեծ չափով կենտրոնացվեն ժողովրդատնտեսական արմատական հարցերի լուծման վրա, այնպիսի հայտնագործությունների վրա, որոնք կարող են իսկապես հեղափոխական փոփոխություններ մտցնել արտադրության մեջ» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ** 68—69):

Սովետական Միության կոմկուսի XXVI համագումարի ամբիոնից ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այս մտքերի իրականացման օրինակներից է նաև գենետիկայի հիմնարար հայտնագործությունների օգտագործումը մարդկային հասարակարգի առջև ծառացած անհետաձգելի խնդրի՝ մարդու ու բնության միջև ստեղծված հակասության հաղթահարման նպատակով:

Մեր դարի առաջին տասնամյակում ծնունդ առած ուսմունքը ժառանգականության մասին՝ գենետիկան, իր գոյությունը նշանավորեց աչքի ընկնող հայտնագործություններով, որոնք վերաբերում են դարեր ի վեր մարդկությանը հետաքրքրող գաղտնիքի բացահայտմանը— ծնողների հատկանիշները սերնդին փոխանցվելու հարցին:

Եվ, եթե գենետիկայի զարգացման սկզբնական շրջանում բացահայտված օրինաչափությունները, բացի իմացական նշանակությունից, կիրառվել կարող էին հիմնականում կենդանիների ու բույսերի տնտեսական ու գեղագիտական արժույթ ներկայացնող նոր ձևերի ստեղծման գործում, ապա հաջորդ մի քանի տարիներին ծագեցին նորանոր պրոբլեմներ, որոնց լուծումը շոշափում էր կյանքի բուն երևույթի հիմքում ընկած նրբին օրինաչափությունները, ինչպես և մարդկային հասարակարգի գոյության ու բարգավաճման համար անհրաժեշտ խնդիրների լուծումը:

Գենետիկայի հետաքրքրական խնդիրներից մեկը մեր դարին բնորոշ՝ մատերիալիստական սկզբունքներից բխող հարցի՝ ժառանգակիր նյութի հայտնաբերումն էր: Կասկածից վեր էր, որ ժառանգակիր նյութը պետք էր որոնել ամենից առաջ սեռական բջիջների կառուցվածքում՝ ելնելով թեկուզ այն անվիճելի փաստից, որ ամեն մի էակ ծնունդ է առնում երկու (երկսեռ բազմացման դեպքում) կամ մեկ (կուսածնության դեպքում) բջջից:

Որոնումները հանգեցրին այն եզրակացության, որ ժառանգակիր նյութը բջջակորիզի կառուցվածքային տարրն է, դրա կազմության մեջ մտնող մարմնիկները, որոնք ստացան քրոմոսոմ (ներկվող մարմնիկներ) անվանումը: Հետագա առավել խոր ու ծավալուն ուսումնասիրությունները ցույց տվին, որ քրոմոսոմները բջջի ամենահաստատուն մասնիկներն են և,

որ դրանց այդ հաստատունությունն է ապահովում կենդանիների (որոնց թվում բույսերի և մարդու) տեսակային պատկանելությունն ու գոյատևումը: Պարզվել է, որ քրոմոսոմների երկարությամբ տեղադրված են այն նյութական միավորները, որոնք կոչվում են գեներ. գեների ֆունկցիոնալ գործունեությունն է պայմանավորում օրգանիզմի արտաքին (մորֆոլոգիական) և մյուս բոլոր՝ անատոմաֆիզիոլոգիական ու կենսաքիմիական և բանականության հատկանիշները: Այլ կերպ ասած, եթե մարդուց մարդ է ծնվում և ոչ թե աղավնի, կամ որ նա օժտված է բանականությամբ և ոչ թե գործում է սոսկ բնազդով և այլն, սրանք նրա բջիջներում գտնվող գեների գործունեության արդյունք են:

Այսպիսով, մեր դարի առաջին տասնամյակներում արդեն պարզ պատկերացում ստեղծվեց օրգանիզմների կառուցվածքային այն տարրերի՝ քրոմոսոմների ու դրանց կազմության մեջ մտնող գեների մասին, որոնք միասին կարող են կոչվել ժառանգական կամ նույնն է թե գենետիկական ապարատ: Մինչդեռ ամեն դեպքում, երբ ի հայտ է գալիս մարդուն հետաքրքրող երևույթի նյութական կրողը, նա ուղիներ է որոնում տվյալ նյութը նպատակային փոփոխելու և դրանով իսկ նրան բնորոշ հատկությունները նպատակամետ կառավարելու համար:

Այդ իմաստով խոշոր հայտնագործություն պետք է համարել բջջի քրոմոսոմային ապարատի վրա իոնիզացնող (ներթափանցող) ճառագայթների ներգործության հետևանքների բացահայտումը, մի երևույթ, որն անմիջականորեն առնչվում է ատոմի ճեղքման ու նրա կառուցվածքում թաքնված էներգիայի արձակման հետ: Պարզվել է, որ իոնիզացնող (ռենտգենյան, գամմա և այլն) ճառագայթների ներգործության հետևանքով տեղի են ունենում քրոմոսոմների ու դրանց կառուցվածքում գտնվող գեների փոփոխություններ՝ մուտացիաներ, որոնք, որպես կանոն, հանգեցնում են բջիջներում ու դրանցից կազմված օրգանիզմներում ընթացող կենսագործողությունների խախտման, այլասերման և ի վերջո՝ դրանց կործանման:

Կյանքի գոյատևման համար առավել վտանգավոր են այն մուտացիաները, որոնք գոյանում են սեռական բջիջներում: Այս դեպքում քրոմոսոմներում տեղի ունեցած փոփոխությունները փոխանցվում են այդպիսի բջիջներից ծնունդ առնող սերնդին և պատճառ դառնում նրանց մահացման վաղ՝ սաղմնային շրջանում, իսկ որոշ դեպքերում, պահպանվելով սերնդի մոտ, դրսևորվում են որպես հիվանդագին երևույթ՝ ժառանգական հիվանդություն:

Ահա թե ինչու աշխարհի ժողովուրդները միահամուռ պայքարում են ատոմային ու նեյտրոնային զենքի ստեղծման և պատերազմներում դրանց օգտագործման դեմ, զենք, որը կարող է պատճառ դառնալ մարդու և բնության այլ օրգանիզմների ժառանգական ապարատի այլասերման ու ոչնչացման: Ահա ինչու գիտությանականավոր գործիչներն ու առաջավոր մտածողները, դատապարտելով գիտության նվաճումները ի չարը գործադրելու քայլերը, միաժամանակ ուղիներ են որոնում դրանք հանուն մարդու, նրա խաղաղ կյանքի ապահովման ծառայեցնելու համար:

## ՌԱԴԻՈՄՈՒՏԱՑԻԱՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՋԱՏՆԵՐԻ ՎՆԱՍԱՏՈՒ ՊՈՊՈՒԼՅԱՑԻԱՆԵՐԻ ՎՆԱՍԱՏՎՈՒԹՅԱՆ ԿԱՍԵՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Քրոմոսոմների կամ գենետիկական ապարատի վրա իոնիզացնող ճառագայթների ներգործման բնույթի ուսումնասիրությանն ու բացահայտմանն են նվիրել իրենց գիտական ողջ գործունեությունը սովետական շատ գենետիկներ: Նրանցից է Մոսկվայի պետական համալսարանի գենետիկայի ամբիոնի վարիչ, ակադեմիկ Ա. Ս. Սերեբրովսկին. աշխարհում առաջինն էր նա, որ, ամփոփելով իր և ուրիշների փորձարարական տվյալները, հանգեց այն եզրակացության, որ իոնիզացնող ճառագայթների մուտագեն (մուտացիաներ առաջացնող) հատկությունը կարելի է օգտագործել մարդուն վնասող միջատների բնական պոպուլյացիաների թվակազմը նվազեցնելու, դրանով իսկ նրանց վնասատվությունը պակասեցնելու նպատակով:

Այսպիսով, ավելի քան քառասուն տարի առաջ ծնունդ առավ վնասատու պոպուլյացիաների դեմ գենետիկական պայքարի կազմակերպման գաղափարը:

Հիմք ընդունելով այն փաստը, որ քրոմոսոմային վնասվածքները՝ մասնատումներն ու մասնատված հատվածները, կարող են տեղափոխվել ու կպչել իրար (տրանսլոկացվել), և որ այդպիսի երևույթները (տրանսլոկացիաները) որոշ դեպքերում չեն սպառնում անհատի գոյությանը, բայց մահացու (լեթալ) հետևանք են ունենում նրանցից ստացվող սերունդների համար, գիտնականը մշակեց վնասատու միջատների որոշակի հատկանիշների ստեղծման ծրագիր և տվեց նրանց հնարավոր օգտագործման տեսական հիմնավորումը:

Համաձայն Ա. Ս. Սերեբրովսկու նախագծումների, հնարավոր է արհեստական պայմաններում բուծել ժառանգական նյութով հավասարակշռված տրանսլոկացիա ունեցող վնասատու միջատներ և բաց թողնել նրանց



բնական պոպուլյացիոն միջավայր, նպատակ ունենալով պայմաններ ստեղծել նրանց բնական անհատների հետ զուգավորվելու համար: Գիտնականը կռահում էր, որ այդ ճանապարհով կարելի է բնական անհատներից սպասվող սերունդներին փոխանցել արատավոր ժառանգական փոփոխությունները ու ոչնչացնել նրանցից սպասվող սերունդը՝ չվնասելով բնության մյուս տարրերին և մարդու առողջությանը:

Գիտնականը տեսականորեն հիմնավորեց պայքարի գենետիկական եղանակի օգտագործման հնարավորությունը՝ ինչպես գյուղատնտեսության մթերատվությանը սպառնացող, նույնպես և մարդու առողջությանը վնասող տեսակների նկատմամբ:

Հայրենական մեծ պատերազմին հաջորդած դժվարությունները արգելակեցին սովետական գենետիկի ու նրա գործընկերների ձեռնարկած քայլերը՝ գենետիկական պայքարի արտադրական կիրառման մարզում: Նա մահացավ ավելի շուտ, քան հայտնի դարձան իր գաղափարի իրականացման ու զարգացման արդյունքները:

Այժմ աշխարհի բազմաթիվ գիտական օջախներում, ինչպես և մեր հանրապետությունում, լայն աշխատանքներ են ծավալվում վնասատու պոպուլյացիաների դեմ պայքարի գենետիկական եղանակների ստեղծման ու կիրառման նպատակով:

## ՎՆԱՍԱՏՈՒ ՊՈՊՈՒԼՅԱՑԻԱՆԵՐԻ ԴԵՄ ՏԱՐՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԱՅԺՄՅԱՆ ՎԻՃԱԿՆ ՈՒ ԳԵՆԵՏԻԿԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վիճակագրական տվյալներով XX դարում երկրագնդի ազգաբնակչությունն աճել է 2,6 անգամ, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը՝ միայն 2,2 անգամ: Հետևապես զգալիորեն պակասել են գյուղատնտեսական մթերքները, որոնք մարդու սննդի ու նրա կողմից սպառվող նյութերի արտադրահումքի հիմնական աղբյուրն են: Եվ ամենևին անակընկալ չէ, որ աշխարհի տարբեր երկրներում սովի են մատնված կամ կիսաքաղց կյանք են վարում ավելի քան մեկ ու կես միլիարդ մարդ:

Ստեղծված իրավիճակի պատճառներից մեկը գյուղատնտեսական մթերքների ուղղակի և անուղղակի ոչնչացումն է վնասատուների կողմից: Մոտավոր հաշվումներով վնասատուների հասցրած վնասը կազմում է գյուղատնտեսական արտադրանքի 20—30 տոկոսը: Այդ նշանակում է, որ գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ասպարեզում ծախսված մարդկային աշխատանքի առնվազն մեկ հինգերորդը կազմում են պայքարի վրա կատարված ծախսերը կամ, ինչպես ընդունված է ասել, ապարդյուն են անցնում ամեն մի հինգերորդ հեկտարի մշակման աշխատանքները:

Ահա թե ինչու, քանի դեռ գոյություն ունի վնասատու տեսակների պոպուլյացիաներից սպասվող վտանգը, կշարունակվի նաև պայքարը դրա դեմ: Արդի պայմաններում վնասատուների դեմ կազմակերպվող պայքարի առավել արդյունավետ ձևը քիմիական պայքարն է, թունաքիմիկատների (պեստիցիդների) օգտագործմամբ պոպուլյացիաներից սպասվող վնասի կասեցումը:

Մինչդեռ հայտնի է, որ թունաքիմիկատների հաճախակի ու մեծաքանակ օգտագործումը և դրա հետևանքով դրանց երկարատև պահպանումն ու կուտակումը բնության մեջ, բացի նպատակային ազդեցությունից, մեծապես վտանգավոր է օգտակար միջատների, անողնաշարավորների, ինչպես նաև ողնաշարավոր կաթնասունների համար:

Հայտնի է, որ թունաքիմիկատների մեծ մասը, ինչպես նաև բնության պայմաններում դրանց վերափոխված ածանցյալները, լինելով թունավոր, միաժամանակ ունակ են փոփոխելու ժառանգականության նյութը և դրա հետևանքով բացասական ներգործություն են ունենում ո՛չ միայն կենսոլորտի նորմալ գործունեությանն անհրաժեշտ կենդանի տարրերի, այլև վերջիններիս հետ սննման շղթաներով շաղկապված բարձրադաս ձևերի, այդ թվում և մարդու վրա:

Հայտնի է նաև, որ միջատների ու տզերի հարյուրավոր վնասատու տեսակներ, թունաքիմիկատների երկարատև օգտագործման պատճառով, ձեռք են բերում դրանց նկատմամբ ժառանգաբար փոխանցվող դիմացկունություն: Դրա հետևանքով հարկ է լինում շատ դեպքում մի քանի անգամ մեծացնել դրանց դեմ օգտագործվող թունաքիմիկատների քանակը: Եվ ի՞նչ է ստացվում: Պոպուլյացիաների վնասատվությունը կասեցնելու նպատակով մեծացնելով քիմիական պայքարի ինտենսիվությունը՝ մենք միաժամանակ մեծացնում ենք կենսոլորտի աղտոտման ու դրա կենսապահ դերի խախտման հնարավորությունը՝ վտանգի մատնելով մարդկության ներկա և ապագա սերունդներին: Բացի դրանից հայտնի է նաև, որ վերջին 20 տարում Սովետական Միությունում գյուղատնտեսական մթերքների պաշտպանության համար կատարվող ծախսերը մեծացել են ավելի քան հինգ անգամ, կազմելով ստացվող մթերքների ինքնարժեքի 2,27 տոկոսը: Իսկ Միացյալ Նահանգներում այն կազմում է, օրինակ, բամբակի հումքի ինքնարժեքի 17 տոկոսը:

Նման իրավիճակը թելադրում է ստեղծել բնության և մարդու առողջության համար պայքարի առավել հեռանկարային, անվտանգ եղանակներ, որպիսին կարող է լինել գենետիկական պայքարը:

Գենետիկական պայքարի ամենադրական կողմն այն է, որ դա օժտված է նեղ ընտրողականությամբ և կարող է վնասել միայն այն տեսակին, որի դեմ ուղղված է պայքարը, միանգամայն անվտանգ լինելով մարդու առողջության և կենսոլորտի այլ տարրերի համար: Հետևապես պայքարի գենետիկական եղանակների մշակմամբ ու կիրառմամբ կարելի է հաղթահարել ազգաբնակչության աճի ու նյութական բարիքների ստեղծման տեմպերի միջև ստեղծված անհամաչափությունը, չվտանգելով մարդու առողջությունը: Գենետիկական պայքարը կարող է դառնալ մարդու և կենսոլորտի հարաբերությունների օպտիմալացման ռեալ ուղիներից մեկը: Այդպիսի հնարավորության իրականացման երաշխիք են գենետիկական պայքարի կիրառման փաստերը և այդ ասպարեզում ձեռք բերած բազում ու բազմապիսի նվաճումները:

Ամենից առաջ ուշագրավ է Հյուսիսային Ամերիկայի, Միացյալ Նահանգների ու նրա շրջակա մեծատարած վայրերում իրականացված գենետիկական պայքարի փորձը՝ ուղղված եղջերավոր անասունների վտանգավոր վնասատուի՝ վերքաճանճի դեմ: Մոտ 30 տարի առաջ, սկզբում Սինաբլ ու Կյուրասաո կղզիների մոտ 50 հազար հեկտար առանձնացված տարածքում, այնուհետև նաև Ֆլորիդա թերակղզու և ԱՄՆ-ի հարավ-արևելյան նահանգների շրջանում իոնիզացնող գամմա ճառագայթների օգնությամբ թողարկվել են նշված ճանճի ամլացված անհատներ, կատարվել է վնասատուի բնական պոպուլյացիա: Ամլացված ճանճերի թողարկումը, որը կատարվել է ուղղաթիռի օգտագործմամբ շաբաթական 2—3 անգամ՝ գարնան ու աշնան ամիսներին, հանգեցրել է նշված վնասատուի իսպառ ոչնչացման: Այդպիսի պայմաններում օգտագործվող ամլացված ճանճերը բուծվել են հատուկ կենսաֆաբրիկաներում, որտեղ օրական 20 միլիոն ճանճի արտադրության վրա ծախսվել է մոտ 45 դոլար: Հաշվումները ցույց են տվել, որ միայն Ֆլորիդա ու Տեխաս նահանգներում կիրառված գենետիկական պայքարի իրականացման վրա ծախսված տարեկան 20 միլիոն դոլարը կանխել է ճանճի հասցրած տարեկան 140 միլիոն դոլարի հասնող վնասը:

Գենետիկական պայքարի նման մի փորձ է իրականացվել նաև Ճապոնիայի Կումա կղզում տարածված սեխի ճանճի դեմ: Պայքարի կազմակերպիչներին հաջողվել է սկզբում ստիճանաբար, ապա իսպառ վերացնել այդ վնասատուին:

Վնասատուների նշված երկու տեսակների պատճառած վնասները հաջողվել է կասեցնել իոնիզացնող (գամմա) ճառագայթների մուտագեն ներգործության օգնությամբ, որը ներկայումս գենետիկական պայքարի համեմատաբար զարգացած ձևն է:

Գենետիկական պայքարի այլ ձևերի հնարավոր արդյունավետությունը ցույց է տրված սենյակի ճանճի ու մոծակների օրինակի վրա: Վերջին ժամանակներս սովետական գիտնականներին հաջողվել է մշակել հավասարակշռված տրանսլյացիաներ կրող միջատների հատուկ գծերի ստեղծման եղանակ, որոնք զուգավորվելով իրենց բնական ելաձևերի հետ, տալիս են միայն արու սերունդ, դրանով իսկ կասեցնելով միջատի բազմացման պոտենցիալը և այլն:

Իոնիզացնող ճառագայթների մուտագեն ազդեցության նման հետևանք են թողնում նաև քիմիական մի շարք միացություններ՝ քիմիական մուտագենները կամ քեմոստերիլիատները, չնայած այդ նյութերի մեծաքանակ օգտագործումը վտանգավոր է բնության կենդանի տարրերի և մարդու առողջության համար:

Կարևոր է նշել, որ գենետիկական պայքարի գաղափարի իրականացումը չի սահմանափակվում միայն իոնիզացնող ճառագայթների քիմիական միացությունների մուտագեն հատկության օգտագործմամբ: Այդ գաղափարի հետագա զարգացումը նոր ուղիներ բացահայտեց ժողովրդատնտեսական այդ կարևոր խնդրի լուծման ասպարեզում: Հետաքրքրական է այնպիսի վնասատու օրգանիզմների պոպուլյացիաների գոյության փաստը, որոնք միմյանց հետ ազատ զուգավորվելու ունակությամբ հանդերձ տալիս են բազմացման ունակությունից զուրկ սերունդ: Նման փաստեր հայտնաբերվել են գյուղատնտեսական կուլտուրաների վտանգավոր վնասատու հանդիսացող ուտայնասզերի, ինչպես նաև արյունածուծ, հիվանդությունների հարուցիչներ տարածող մոծակների մոտ:

Պարզվել է նաև, որ նույն տեսակին պատկանող, տարբեր պայմաններում ապրող (ալլոպատրիկ) պոպուլյացիաները հաճախ ցուցաբերում են փոխադարձ վերարտադրական անհամատեղելիություն՝ կապված էգի ձվաբջջի և նրա բեղմնավորման համար ներթափանցող սերմնաբջջի ֆիզիոլոգիական անհամապատասխանելիության հետ: Նման երևույթ կարող է դրսևորվել նաև այն դեպքում, երբ նրանց քրոմոսոմները իրենց քանակով (պոլիպլոիդիզացիա) կամ կառուցվածքով (քրոմոսոմային



փոփոխություններով) «անհամատեղելի են»: Բնական պայմաններում ստեղծված միջպոպուլյացիոն ներտեսակային վերարտադրական անհամատեղելիությունը մեծ հնարավորություն է ընձեռում գենետիկական պայքարի կազմակերպման համար:

Գենետիկական պայքարի հնարավորությունների ընդլայնման օգտավետ ուղի կարող է լինել նաև ալլոպատրիկ պոպուլյացիաների միջև գոյություն ունեցող հարմարողական բնույթ կրող տարբեր հատկանիշների օգտագործումը: Հայտնի է, օրինակ, որ հարավային մշտադալար բուսականության պայմաններում տարածված վնասատու միջատները օժտված չեն ցրտին ու կերի բացակայությանը հարմարվելու ժառանգական հատկանիշով՝ դիապաուզայով: Միջատների տարբեր տեսակների մոտ դրսևորվող այս երևույթը մի ապրելաձև է, որի ժամանակ օրգանիզմը ժամանակավորապես զրկվում է սնվելու և ակտիվ ձևագոյացման ունակությունից: Դիապաուզայով և առանց դիապաուզայի զարգանալու ունակությունները կրում են ժառանգական բնույթ. և, եթե միմյանց հետ զուգավորվեն երկու այդպիսի պոպուլյացիաների անհատներ, նրանց սերունդը զարգանա դիապաուզա պահանջող կլիմայական պայմաններում, ապա ստացված սերնդից նրանք, որոնց մոտ գերակշռում է դիապաուզա չունենալու հատկանիշը, կմահանան: Այսպես, Մեքսիկայի տաք գոտուց տեղափոխված բամբակենու երկարակնճիթ բզեզի անհատները, որոնք զարգանում են առանց դիապաուզայի, բաց են թողել բարեխառն գոտու բամբակենու դաշտերում տարածված նույն տեսակին պատկանող, դիապաուզայով օժտված բզեզների պոպուլյացիայի մեջ, և դրանք բարեհաջող զուգավորվել են: Սակայն այդպիսի զուգավորություններից ստացված սերունդը դրսևորել է գերազանցապես առանց դիապաուզայի զարգանալու ունակություն և դրանց միայն 26 տոկոսն է կարողացել դիմանալ ցուրտ պայմաններին: Այդ պատճառով սերնդի թվակազմը, հետևապես և վնասատվությունը, նվազեցվել է մոտ 4 անգամ:

Վերջին 2—3 տասնամյակներում հայտնի են դարձել վնասատուների թվակազմի կրճատման նոր հեռանկարային հնարավորություններ, որոնցից մեկը, այսպես կոչված՝ հորմոնային եղանակն է. ծավալուն ուսումնասիրություններ են կատարվել միջատների մոտ բնականից արտազատվող յուվենիլային (երիտասարդության) հորմոնի քիմիական սինթեզման ու պայքարի նպատակներով այն օգտագործելու ասպարեզում: Պարզվել է, որ յուվենիլային հորմոնի կամ սինթեզված ակտիվությամբ օժտված նրա անալոգի ներթափանցումը միջատի օրգանիզմը զարգացման այն փուլում, երբ այդ անհրաժեշտ չէ, առաջացնում է զգալի խախտումներ դրանց ժառանգական ծրագրի կարգավորված իրացման գործողությունում՝ պատճառ դառնալով դրանց կենսագործողությունների կասեցման:

Հայաստանի գիտությունների ակադեմիայի կենսաբանության ինստիտուտի գենետիկայի լաբորատորիայում վերջին 6—7 տարիներին մշակվել և արտադրական փորձարկման է հանձնվել պտղաբուծության վտանգավոր մի վնասատուի՝ խնձորենու պտղակերի դեմ գենետիկական պայքարի նոր եղանակ: Ի տարբերություն նախկինում առաջադրված պայքարի ձևերի, այս դեպքում վնասատուի բնական պոպուլյացիա է թողարկվում ոչ թե վնասատուի լրիվ ամլացված, այլ դրա մասնակի ամլացված արու սերունդը: Այսպիսով, կանխվում է վնասատուի քանակի ավելացումը: Պայքարի նոր եղանակը նշանակալից չափով կրճատել է դրա իրականացման ծախսերը շնորհիվ վնասատուի՝ արհեստական պայմաններում բուծվող անհատների կրճատման, բացթողումների թվի նվազեցման, ինչպես և արտադրվող անհատների սեռական ակտիվության բարձրացման: Պայքարի այս նոր եղանակը պիտանի է նաև գյուղատնտեսական կուլտուրաների այլ՝ թիթեռներին պատկանող բազմաթիվ տեսակների դեմ օգտագործելու համար:

## ԳԵՆԵՏԻԿԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՎՆԱՍԱՏՈՒ ՊՈՊՈՒԼՅԱՑԻԱՆԵՐԻ ԹՎԱԿԱԶՄԻ ԿԱՐԳԱՎՈՐՄԱՆ ԵՎ ՄԱՐԴ- ԲՆՈՒԹՅՈՒՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՊՏԻՄԱԼԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Վնասատու պոպուլյացիաների դեմ կիրառվող պայքարի գենետիկական եղանակի տարբեր ձևերի համառոտ շարադրանքից կարելի է եզրակացնել, որ դրա գաղափարը, իր ծագման պահից մինչև օրս, զարգացել ու որոշակիորեն կատարելագործվել է գենետիկական գիտության նվաճումների օգտագործման, ինչպես և դրանց կիրառման ուղիների ընդլայնման միտումով: «Գենետիկական պայքար» հասկացողությունն այսօր ընդունվում է որպես մարդու կողմից վնասատու պոպուլյացիաներ կազմող անհատների ժառանգականության փոփոխում, նպատակ ունենալով կասեցնել նրանց բազմացման պոտենցիալը և դրա հետևանքով՝ վնասատվությունը:

Պայքարի նշված եղանակի նման բնորոշումից բխում է, որ մարդկային հասարակարգի

տրամադրության տակ է դրված բնության և մարդու առողջության համար անվտանգ մի միջոց, որի օգնությամբ հնարավորություն է ընձեռվում գիտակցաբար կարգավորելու կենսոլորտի կենդանի տարրերի թվակազմն ու համապատասխանաբար՝ դրանց դերը մարդու կյանքում:

Նման եզրակացության նշանակությունը մեծանում է, եթե նկատի ունենանք, որ վնասատուների դեմ կիրառվող պայքարը չպետք է հետապնդի դրանց իսպառ վերացում, ինչպես այդ մասին հաճախ հիշեցնում են արևմուտքի հեղինակները: Ելնելով այն անհերքելի ճշմարտությունից, որ բնության ամեն մի տեսակ, անկախ նրա տնտեսական նշանակությունից, հույժ կարևոր է կենսոլորտի կենսապահ ֆունկցիայի իրականացման առումով, մարդը պետք է ձգտի կարգավորել վնասատուների թվակազմը՝ պահպանելով այն տնտեսական անվնասակարության եզրագծի վրա: Այդպես պետք է վարվել, քանի դեռ ամենայն մանրամասնությամբ պարզաբանված չեն կենդանիների ու բույսերի ամեն մի տեսակի դիրքն ու նշանակությունը կենսոլորտում:

Չմոռանանք, որ արդեն բացահայտվում են գենետիկայի զարգացման այնպիսի հեռանկարներ, որոնք հույս են ներշնչում, որ կիրառվելու են իրոք ֆանտաստիկ փոփոխություններ, որոնց շնորհիվ հնարավորություն կստեղծվի ոչ թե կասեցնելու վնասատու տեսակների աճը, այլ դրանք ծառայեցնելու մարդու շահերին: Զարգանում են գենետիկայի ժամանակակից՝ մոլեկուլային և ինժեներային ուղղությունները. ոչ հեռու ապագայում կստեղծվի վնասատու օրգանիզմների գենոտիպը փոխելու նոր տեխնոլոգիա, որի օգնությամբ նրանց կտրվեն ուրիշ օրգանիզմից վերցված կամ արհեստականորեն սինթեզված գեներ, որոնցով պայմանավորված հատկանիշները ո՛չ միայն զերծ կլինեն վնասատվությունից, այլև կապահովեն որոշակի օգտակար գործունեություն: Այսպես, օրինակ, ցորենին վնասող օրգանիզմների գենոտիպը հարստացնելով մոլախոտերով սնվելու հատկանիշներ պայմանավորող գեներով, կարելի կլինի թելադրել վնասատուին սնվել մոլախոտերով, բարելավել ցորենի աճման պայմանները և այլն: Առեղծվածային թվացող նման գաղափարները իրականացվում են արդեն միկրոբների աշխարհում. այդ հավատ է ներշնչում, որ հնարավոր կլինի դրանք իրականացնել նաև բարձրակարգ օրգանիզմների մոտ:

Եթե նկատի ունենանք, որ վնասակար օրգանիզմների գենոտիպերի նման փոփոխման հետևանքով չեն խախտվի կենսոլորտի հաշվեկշիռն ու ֆունկցիան, որոնք պայմանավորված են բնության բոլոր տարրերի միասնականությամբ, ապա պայքարի գենետիկական եղանակը, ի տարբերություն քիմիականի, կդառնա մարդու և բնության միջև ստեղծվող հարաբերությունների օպտիմալացման կարևոր ուղիներից մեկը:

---




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 22.03.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 14.04.82 թ.: ՎՖ 05706 Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15532: Պատվեր 639:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.


# Ինչ կարդալ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով: *Ճառեր, ողջույններ, հոդվածներ: Հ. 8, «Հայաստան» հրատ., 1982:*

*Հատորում զետեղված են 1979 թվականի ապրիլից մինչև 1981 թվականի մարտն ընկած ժամանակաշրջանին վերաբերող աշխատությունները, որոնցում արտացոլված է կոմունիստական կուսակցության և սովետական պետության բազմակողմանի գործունեությունը ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստման ու անցկացման ընթացքում:*

*Ժողովածուի նյութերը բովանդակում են նոր կարևոր դրույթներ, որոնք վերաբերում են արդի փուլում կուսակցության ազգային քաղաքականության կենսագործմանը, սովետական պետականության, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը:*

*Հատորն ավարտվում է ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերով՝ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումով, որով հանդես եկավ Լ. Ի. Բրեժնևը, համագումարի հետ կապված այլ նյութերով:*

Б. КЕДРОВ — **Ленин, наука, социальный прогресс.** М., Политиздат, 1982.

*Սովետական ականավոր փիլիսոփա, ակադեմիկոս Բ. Մ. Կեդրովի գրքում շարադրված են գիտության, նրա զարգացման օրինաչափությունների, հասարակական կյանքում նրա դերի մասին ուսմունքի հիմնական դրույթները: Հեղինակը գլխավոր ուշադրությունը հատկացնում է այդ ուսմունքում Վ. Ի. Լենինի ներդրմանը և ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմների լուծման գործում նրա գաղափարների դերին:*

Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Սովետական Հայաստան. Տարեգրություն *(1920—1980): «Հայաստան» հրատ., 1982:*

*Գիրքը կրում է ժամանակագրական տեղեկատու բնույթ: Նրանում ցույց են տրված քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի կարևոր իրադարձությունները, որոնք ընդգրկում են Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին օրվանից մինչև 1980 թ. նոյեմբերի 29-ը:*

А. АМИРЯН — **Статьи.** Е., изд. «Айастан», 1982.

*Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների և հեղափոխական շարժման խոշորագույն ներկայացուցիչ, Բաքվի կոմունայի ականավոր ղեկավար, տաղանդավոր ժուռնալիստ Արսեն Ամիրյանը թողել է գրական հարուստ ժառանգություն— գրքեր և ժամանակի բոլշևիկյան պարբերական մամուլում հրապարակված բազմաթիվ հոդվածներ:*

*Այդ հոդվածների թեման բանվոր դասակարգի անձնվեր պայքարն է ցարիզմի, կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետության դեմ: Մերկացվում է Անդրկովկասի բուրժուանացիոնալիստական կուսակցությունների՝ մենշևիկների, դաշնակցականների, մուսավաթականների հակաժողովրդական գործունեությունը:*

Ю. ЛЕОНОВ — **Пропагандист в коллективе.** М., Политиздат, 1982.

*Փիլիսոփայական գիտությունների թեկնածու Լեոնովի այս բրոշյուրը նվիրված է մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացման գործում կուսակցական պրոպագանդիստների դերին: Երկրի լավագույն պրոպագանդիստների փորձից վերցված օրինակներով ցույց է տրվում, թե ինչպես են իրականացվում ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների ցուցումները, «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման մասին» (1979) և «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման հետագա կատարելագործման մասին» (1981) ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները:*

Ա. ԼԵՎԱՆԴՈՎՍԿԻ— Իմ Մարատի սիրտը: *«Հայաստան» հրատ., 1982:*

*Հեղափոխական Ֆրանսիան գրող պատմաբան Անատոլի Լևանդովսկու ստեղծագործության մշտական թեման է:*

*Սույն վիպակը ականավոր հեղափոխական և փայլուն հրապարակախոս Ժան Պոլ Մարատի կյանքի ու գործունեության մասին է:*

*Գիրքը հիշողության մեջ վերակենդանացնում է ֆրանսիական մեծ հեղափոխության հերոսական իրադարձությունները, որոնք մարդկության պատմության պայծառ էջերից են:*

Ա. ԳՈՐԲՈՎՍԿԻ— 2000 թվականը և հետո: *«Հայաստան» հրատ., 1982:*

*Այս գիրքը ապագայի մասին է, այն անհայտության ու անակնկալների, որ սպասում է մեզ վաղը:*

*«Ի՞նչ փոփոխություն կկրեն քաղաքները: Ի՞նչ հարաբերակցություն կունենա քաղաքային և գյուղական բնակչությունը: Ե՞րբ կսպառվեն երկրի հարստությունները և ի՞նչ է ենթադրվում անել այդ առթիվ:*

*Մարքս-լենինյան աշխարհայացքը, գալիքի նկատմամբ լավատեսական կարծիքը, որ հատուկ են առհասարակ սովետական կանխատեսումներին, բնորոշում են նաև ներկա հրատարակությունը:*

Գինը՝ 25 կ.

Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԹԵՎԻՆ՝ ՄԻ ԱՄԲՈՂՋ ԼԱԲՈՐԱՏՈՐԻԱ

Վերջին ժամանակներս մոդա է դարձել տնային զուգակցված սարքերի թողարկումը, օրինակ, ծանրաչափով, ջերմաչափով, օրացույցով՝ հեռախոսներ: Կամ ձայնագրիչներ՝ ռադիոընդունիչներով, փոքրաչափ հեռուստացույցներով, էլեկտրական ժամացույցներով և էլեկտրոնային հաշվարկիչներով: Իսկ ահա Ճապոնիայում ստեղծվել են ձեռքի էլեկտրոնային ժամացույցներ՝ հեռուստացույցով, հաշվարկիչով, օրացույցով, զարթեցուցիչով, վայրկյանաչափով և բարենպաստ բիոռիթմերով օրերի ցուցիչով: Բացի դրանից, կան նաև փոքրաչափ հաղորդիչներ, որոնք կարող են թարթելու կամ ծվոցի միջոցով հիշեցնել օրվա ընթացքում պլանավորված որևէ միջոցառման՝ ճաշի, գործնական հանդիպման, գեղորայքի ընդունման ժամի մասին և այլն:

Մնում է պատասխանել երկու հարցի: Ինչպե՞ս օգտվել գերփոքրաչափ հաշվարկիչից. դրա ստեղները հարկավոր է գրնդիկավոր ինքնահոսի, լուցկու կամ ասեղի ծայրով սեղմել: Իսկ ինչպե՞ս դիտել 1×1,5 սմ էկրանի վրա հեռուստատեսային ծրագրերը. դրա համար անհրաժեշտ են համապատասխան մեծության լինզաներով ակնոցներ:

## ՄՈՒԼՏՖԻԼՄԵՐ՝ ԿՈՄՊՅՈՒՏԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Մուլտիպլիկացիոն ֆիլմերի ստեղծումը աշխատատար պրոցես է: Սովորաբար նկարիչների խումբը մի ժապավենի վրա աշխատում է ամիսներով: Նրանք ստիպված պատրաստում են հարյուրավոր, նույնիսկ հազարավոր առանձին նկարներ, որոնք հետո մոնտաժվում են միասնական ֆիլմում: Ավստրիացի գիտնականները որոշեցին թեթևացնել կինեմատոգրաֆիստների աշխատանքը հաշվիչ տեխնիկայի օգնությամբ՝ մուլտֆիլմերի ստեղծման համար հորինելով կոմպյուտեր:

Վիեննայի տեխնիկական համալսարանում մշակված նոր սարքը ո՛չ միայն նկարում է նկարներ, այլև ներկում դրանք տարբեր գույներով: Եթե նախկինում փորձառու նկարչի համար նյութի նախապատրաստումը, որի ցուցադրումը էկրանի վրա տևում է ընդամենը կես վայրկյան, պահանջում էր մեկ օր, ապա կոմպյուտերը այդ աշխատանքը կատարում է հաշված ակնթարթներում:

Ավստրիացի մասնագետները գտնում են, որ այժմ կարելի է ստեղծել ֆիլմեր, որոնք ցույց կտան այնպիսի պրոցեսներ, ինչպես բյուրեղի աճն է, կամ բջջի բաժանումը: «Դրանով բարձրագույն ուսումնական հաստատությունների և միջնակարգ դպրոցների ուսուցիչների համար ընձեռվում են բոլորովին նոր հնարավորություններ,— հայտարարեց նոր կոմպյուտերի ստեղծողներից մեկը:— Այժմ նույնիսկ կարելի է մուլտիպլիկացիոն ձևով պատկերել հարաբերականության տեսության հիմնական դրույթները»:

## ՄՇՈՒՇՈՎ՝ ՄՇՈՒՇԻ ՄԻՋԻՑ

Արդեն կան վաղորդյան մառախուղի դեմ պայքարի մի քանի մեթոդներ: Մանչեստրի (Անգլիա) մոտակայքի մայրուղում փորձարկվել է նոր եղանակ, որը խանգարում է այդ շրջանում բավական հաճախ հանդիպող սպիտակ մշուշի խտացմանը: Հեղուկ թանձրույթների դեմ հանդիման օդի հզոր շիթերով ցրցողվում է արհեստական մշուշ: Կիրառվում են աերոզոլային մասնիկներ՝ էլեկտրաստատիկ լիցքերով: Էլեկտրականության ազդեցության տակ բնական մշուշի կաթիլները արագորեն միանում են արհեստական կաթիլներին և թափվում անձրևի տեսքով: Փորձերը ցույց են տվել, որ նոր մեթոդը կնպաստի ավտոմեքենաների երթևեկության, ինչպես նաև ինքնաթիռների թռիչքների ու վայրէջքների անվտանգությանը:

## ԳՈՐԾԱՐԱՆԸ ԿԿԱՌՈՒՑԵՆ... ՌՈԲՈՏՆԵՐԸ

«Կավասակի» ճապոնական ֆիրման վերջերս հայտարարեց, որ ինքը մտադրվել է կառուցել արդյունաբերական ռոբոտների՝ աշխարհի ամենախոշոր գործարանը... ռոբոտների օգնությամբ: Ընկերությունն այդ ձեռնարկության շինարարությանը, որը պլանավորվել է ավարտել 1984 թվականին, հատկացրել է 77 միլիոն դոլար: Գործարանը մեկ տարում թողարկելու է 2 հազար արդյունաբերական ռոբոտ, որոնք տարբեր ձեռնարկություններում կկատարեն զոդման, մոնտաժման, ներկման աշխատանքները: